ՀԱՄԱՌՕՏ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԿԱՄ

ՈՒՂԵՑՈՅՑ

# ՍՐԲԱԶԱՆ ՏԵՂԵԱՑ

Hamarot patmutiwn kam...

# ՀԱՄԱՌՕՏ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԿԱՄ

## ՈՒՂԵՑՈՅՑ
## ՍՐԲԱԶԱՆ ՏԵՂԵԱՑ

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ






Ի ՏՊԱՐԱՆԻ
ԱՌԱՔԵԼԱԿԱՆ Ս. ԱԹՈՌՈՅՍ
ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ
ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

—(1884)—

Hamarot patmutiun kam...

# ՀԱՄԱՌՕՏ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
ԿԱՄ
## ՈՒՂԵՑՈՅՑ
## ՍՐԲԱԶԱՆ ՏԵՂԵԱՑ

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ






Ի ՏՊԱՐԱՆԻ
ԱՌԱՔԵԼԱԿԱՆ Ս. ԱԹՈՌՈՅՍ
ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ
ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

—(1884)—

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Ս․ ԷՋՄԻԱԾՆԻ

## Տ․ Տ․ ԳԷՈՐԳԱՅ

ՀԱՆԳՈՒՑԵԱԼ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ՀՐԱՄԱՆԱՒ

ՊԱՏՐԻԱՐՔԻ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

Տ․ ԵՍԱՅԵԱՅ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ․ ՊՕԼՍՈՅ

Տ․ ՆԵՐՍԷՍԻ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ԱԶԴ

Ներկայ հրատարակութիւնը—ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ կամ ՈՒՂԵՑՈՅՑ Ս. ՏԵՂԵԱՑ—կը պարունակէ իւր մէջ տեղագրական և պատմական ծանօթութիւնք հին ու նոր յիշատակաց և անցից, որոնք քաղուած են համազգի և օտարազգի յիշատակարաններէ և խնամով կարգաւորուած ՚ի հըմտութիւն բարեպաշտ ուխտաւորաց և ամէն հարցասէր ընթերցողաց։ Հետեւապէս, կենդանի առաջնորդ մ'է սա, որով կարէ ընթերցողն, թէ անձամբ և թէ մտօք, շրջագայիլ Պաղեստինի մէջ և գոհացուցիչ տեղեկութիւններ առնալ ամէն տեղեաց, հնութեանց եւ ազգաց սեպհականութեանց վրայ։

Արդ՝ այսպիսի մի երկասիրութիւն ՚ի վաղուց անտի բաղձալի էր թէ մեզ և թէ շատերուն, ուստի և յուսով եմք որ ներկայ հրատարակութիւնն, լրումն լինելով բազմաց բաղձանաց, հաճութեամբ կ'ընդունուի եւ կը քաջալերուի ընթերցող Հասարակութենէն։

Սոյն Բ. տպագրութեան՝ ժամանակ առաջնոյն մէջ տեղ տեղ սպրդած սխալներն ուղղուած են, և երբեմն տեղ տեղ ալ յաւելուածներ եղած՝ ծանօթութիւններ յաւելցուած են։

# ՀԱՄԱՌՕՏ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
## ԿԱՄ
## ՈՒՂԵՑՈՅՑ
## ՍՐԲԱԶԱՆ ՏԵՂԵԱՑ



Ուխտաւորք ի Յոպպէ, եւ ուղեւորութիւն նոցա դէպ ի Ռեմլէ։

Ի ՍՈՒՐԲ Երուսաղէմ ուխտի եկող տէրունական եւ բարեպաշտ ուխտաւորքն, որք ծովային ճանապարհորդութեամբ կ'ընեն իրենց ուղեւորութիւնը, պարտաւոր են նախ եւ առաջ Յոպպէ քաղաքն ելնել եւ ապա մեկնիլ դէպ 'ի Սուրբ Երուսաղէմ։

Թէեւ քաղաքին մէջ թէ ճանապարհորդաց եւ թէ մասնաւորաց ամէն բնակութեան արժանի պանդոկք եւ օթեւանք կը գտնուին, սա-

կայն իւրաքանչիւր ազգաց տէրունական ուխտաւորքն 'ի բնէ անտի՝ ըստ սովորութեան՝ կ'իջեւանեն իրենց Ազգային վանքերուն մէջ, որոց հանգստութեանը համար ըստ ամենայնի խնամք և ջանք կը լինին վանքերու միաբանից կողմէ ։

Այս քաղաքն որ ընդհանրապէս Եաֆա եւ կամ Յոպպէ կը կոչուի, որ երբեմն Ճաֆ և Ճափ անուանով ալ յիշուած է, աշխարհիս հին քաղաքներէն մին կը համարուի, և Ս. Գրոց ու Ազգաց Պատմութեան մէջ նշանաւոր տեղ մը կը գրաւէ ։

Աւանդութեամբ կ'ըսուի թէ՝ Նոյ նահապետն Աստուծոյ հրամանաւ իւր Տապանը այս քաղաքին մէջ շինեց, և Ջրհեղեղի ժամանակ քաղաքըն քանդուած լինելով՝ Նոյի Յաբէթ որդւոյն ձեռօք վերստին շինուելով նորա անունը ստացած է

Յովնան մարգարէ Տիրոջը ձեռքէն խոյս տալու համար, որ իրեն կը պատուիրէր Նինուէ երթալ քա-

բողելու համար, այս քաղաքն եկաւ, ուրկէ նաւ մտաւ փախչելու համար ՚ի Թարսիս. Յովն. Ա. 3։

Տիւրոսի Քիրամ Թագաւորն լիբանանու լեռնէն կտրել տուած փայտերը՝ ծովուն մէջ լաստեր շինելով՝ այս տեղ բերաւ ու հանեց ծովու եզերքն՝ Սողոմոնին ղրկելու համար, որոնք ճշմարտին Աստուծոյ Տաճարին շինութեանը գործածուեցան. Գ. Թագ. Ե. 8, 9։ Եւ Բ. Մնա. Բ. 16։

Այս քաղաքին մէջ կը բնակէր Տաբիթայ անուն բարեպաշտուհի կինն, զոր Ս. Առաքեալն Պետրոս յարոյց ՚ի մեռելոց. Գործ. Թ. 36։

Աստ է Սիմոն խաղաղորդի տունը, ուր կը բնակէր նաև երբեմն Ս. Առաքեալն Պետրոս, և ուր տեսաւ այն տեսիլն՝ որ երկինքը բացուած էր, եւ կտաւը՝ որուն մէջ պաւնակուած էին, թռչնոց, սողնոց, ղջոսպանեաց, սուրբ եւ անսուրբ ...նեաց զանազան տեսակներն. ...ամ Պետրէ՝ զէն և կեր ։։ ձայ-

նը լսեց. Գործ. Ժ. 11. Այս տան տեղը մինչեւ ցայսօր կայ քաղաքիս յարեւմտահիւսիս՝ ծովեզերքին վրայ բարձրաշէն, որուն ամենամեծ մասն այժմ Հայոց Վանքի սեփականութիւնն է, եւ մնացեալ մի փոքր մասն ալ Տաճկաց կը վերաբերի, ուր ունին մի փոքր աղօթատեղի, որուն քով է ծովային նաւահանգստի մեծ փանոսն, որ շինուեցաւ Գաղղիական ընկերութեան մը կողմէ հրամանաւ Տէրութեան։

Միջերկրական ծովու վերին ծայրըն դէպ ՚ի յարեւմտեան հարաւ շինուած այս քաղաքն, այլ եւ այլ ժամանակ զանազան տէրութեանց կողմանէ ստէպ կրած յարձակումներէն եւ հարուածներէն միշտ փոփոխութիւնք ընդունելէ զկնի, այժմ. կիսաբոլոր եւ ամփիթատրօնի ձեւն առնելով, ծովու կողմանէ ակնապարար եւ հիանալի տեսարան մը կ՚ընծայէ տեսողաց. քաղաքն կը տարածի արեւմուտքէն դէպ ՚ի յարեւելք ըն-

դարձակօրէն, գեղեցկաշէն տունե-րով, եւ՝ հետզհետէ նաեւ զարգա-նալու վրայ է, թէ՛ բնակչօք եւ թէ՛ վաճառականութեամբ։

Յոպպէն կը բաղկանայ այժմ 2500 տուներէ և 12 հազար բնակիչէ, ո-րոց մեծագոյն մասն Մահմետական են, մնացեալն Յոյն, Լատին, Հայ, Հրէայ. եւ Սուրիացի Հռովմէադաւանք, Մարոնիք, Ղբտիք, եւ ու-րիշ զանազան Քրիստոնէայ ժողո-վուրդք խիստ փոքրաթիւ մասն կը կազմեն. Հայոց թիւն ընդ ամենը 130 հոգի է արք եւ կանայք։

Նորերս գերմանական գաղթակա-նութիւնք հաստատուած են Յոպպէի մէջ երկու տեղ, մին քաղաքի արե-ւելահիւսիս Գօլօնի ըսուած տեղ՝ ծո-վեզերքի մօտ, միւսն Սարօնի ըսուած դաշտին արեւմտեան եզերքն. սոյն երկու գաղթականութիւնն կը բաղ-նայ գրեթէ 300 բնակիչէ, տներն ղեցկաշէն, բողոցներն կանոնա-ր և եւրոպական ոճով շինուած է

երկու կարգ ծառերով, պտղատու ; ծաղկանոց պարտէզներ, եւ զբօսավայրներ ունին, եւ գրեթէ մէյ մէկ գիւղաքաղաքներ են ։

Յոպպէի նաւահանգիստը միայն մէկ նաւամատոյց մ՚ ունի, որն է Մաքսատունը, ուր պարտաւոր են ելնել ամէն ճանապարհորդք ։ Մաքսատունէն ելնելով դէպ'ի ձախ արեւելեան կողմն դառնալով, իսկոյն աջ կողմդ կ'իյնայ, նախ Յունաց, ապա Լատինաց եւ յետոյ Հայոց հոյակապ վանքերն կարգաւ ։

Հայոց վանքը Ս. Նիկողայոսի անուամբ շինուած փոքր Եկեղեցի մը ունի, ուր կը կատարուին ամէն օր եկեղեցական ժամերգութիւնք ու պաշտամունք ։ վանքը ունի մի Տեսուչ եւ մի ժամարար վարդապետ, եւ քանի մը աշխատաւոր միաբանք, Թարգման եւ պահակ, որք միշտ խնամք և զգուշութիւն ցոյց կուտան ուխտաւորաց ամէն գործերուն ։

Հայոց Ս. Նիկողայոսի վանքին

հիմնարկութեան եւ հետզհետէ պատահած նորոգութեանց և այժմեան դիրքին վրայ խօսելն ուրիշ առթի ձգելով, առտանօր սա միայն կը յիշենք թէ Մեծն Նափօլէոն Ա. երբ Յոպպէ եկաւ, մեր այն վանքին մէջ հաստատեց իւր զինուորաց համար հիւանդանոցը, եւ իրեն բնակութեան համար ալ վանքին մօտ Հայոց սեփական եղած տունը, ինքը՝ Նափօլէոն՝ ստէպ այցելութեան կուգար զինուորաց, որք ժանտախտէ բռնուած էին. զինուորաց հիւանդանոց եղած տեղն ընդարձակ սրահ մ'էր, որ իբր հոգետուն կը ծառայէր այն ժամանակ, այժմ խուցերու բաժնուած է. Եւրոպացի ճանապարհորդք երբ Յոպպէ կ'ելլեն միշտ կուգան հետաքրքրութեամբ այն տեղն տեսնելու: Նափօլէոնի բնած տունն մինչեւ ցայսօր Հայոց փակուած է:

Տէրունական Ուխտաւորք մի քանի այն վանքին մէջ կը հանգստանան,

և իրենց 'ի քնէ անտի սովորական ե-
ղած դարպասական տուրքն կը վճա-
րեն Թէ Յոպպէի և Թէ Ռեմլէի վա-
նուց պայծառութեանց եւ հաստա-
տութեանց համար, որ սահմանեալ
է կէս Օսմանեան լիրայ անձ գլուխ ։

Յոպպէէն մինչեւ յԵրուսաղէմ
10 ժամուան ճանապարհ է կառքով
եւ 12 ժամուան՝ ձիով. Ճանապար-
հորդաց եւ ուխտաւորաց կամքէն
կախեալ է կառքով կամ ձիով ճա-
նապարհորդելն ։ Ս. Նիկողայոսի
վանուց դռնէն ելնելով դէպ 'ի
յարեւելք եղած երկայն շուկայի
մէջէն ուղղակի քաղաքի դուռն կը
հանիս, ուր կ'ըսպասեն ճանապար-
հորդաց յատկացեալ կառքերն, եւ
ուր զանազան տեսակ բերքեր կը
վաճառուին Ճերմակ եւ սեւամորթ
արաբացիներէն, այսինքն՝ նարինջ,
լէմօն, նուռ, ադամանթուզ, շագա-
րեղէգն, ձմերուկ, խաղող, թուզ,
թութ, եւ ամէն տեսակ մրգեղէնք
եւ բանջարեղէնք. այս տեղ ճանա-

պարհն խիստ խռնուած է անցու-դարձով, և քաղաքին ամենէն փա-նուկ տեղն է, հետեւաբար պէտք է զգոյշ լինել, քանի մի չէ կարանցնե-լու եւ խռովութիւն մը չի պատճա-ռելու համար, այլ պէտք է ամենայն հանդարտութեամբ կառքը նստիլ եւ ճանապարհն ձեռք առնել։

Կէս ժամու չափ երկու կարգ պտղաւէտ պարտէզներու մէջէն անցնելով կը հասնուի Սարօնի ըսուած դալարագեղ դաշտին ծայրն, որ խիստ պտղաբեր տեղեաց մին է։

Այս դաշտը փոխանակաբար՝ տա-րի մը առատ հունձ կուտայ և միւս տարին անմշակ մնալով արօտ կը բե-րէ երկիրը, գարնան մէջ անհամար ծաղիկներով կը ծածկուի, որոց մէջ կը գտնուին կակաչ եւ հարսնուք։ Սոյն դաշտը անուանի է Սամփսոնի Լղատակօմն, ուր տեղ Փղշտացւոց Նձերը այրեց նա, 300 աղուէս ղլով նոցա մէջ՝ որոց ագիներուն ռած ջահեր կապած էր. Դատ. ԺԵ. Դ։

ճանապարհին վրայ կը տեսնուի Լիւտ քաղաքը, որ Դիոսպոլիս կը կոչուէր, ուր տեղ Պետրոս առաքեալ բժշկեց Ենէա անուն անդամալուծը. Գործ. Թ. 32–35։

Այս քաղաքն Ս. Գէորգայ ծննդեան քաղաքն է, Նիկոմիդիոյ մէջ նահատակուելէն յետոյ հոս փոխադրուեցան նորա Ս. Նշխարքները, և Յուստինիանոս կայսրն ալ քաղաքին մէջ յանուն սրբոյն փառաւոր եկեղեցի մի շինեց, ուր 414 Թուականին Քրիստոսի ժողով մի եղաւ ընդդէմ Պեղագիոսի, որ կ'ուրանար սկզբնական մեղքը և Աստուածային շնորհաց պիտանաւորութիւնը։ Սալաէտտին իշխանի օրօքն Մահմետականք տիրելով սոյն քաղաքին, եկեղեցին աւերեցին և մէկ մասին վրայ ալ մզկիթ մը շինեցին մէկ շէրէֆէով մինարէ մի կանգնելով. մնացեալ մասին տեղւոյն սեփականութեան իրաւունքի վրայ, Յունաց և Լատինաց մէջ, ասկէ բաւական տարիներ ա-

ռած վէճ ծագելով, Յունաց նոյն տեղւոյն վրայ եղած սեփականութեան իրաւունքն հաստատուեցաւ, որով սկսան նորոգութիւններ ընել և պայծառացնել. և 1872ին փառաւոր եկեղեցի մը կառուցին նոյն տեղւոյն վրայ։ . . .

7000ի մօտ բնակիչ ունի, որոց մեծագոյն մասն Մահմետական են և մնացեալ մասն Յոյն, քանի մ՚ ալ Լատին կայ։

---

## ՌԷՄԼԷ

### ԵՒ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ Ի Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄ

Ռէմլէ՝ ըստ պատմութեան Լատին կրօնաւորաց՝ հին Արեմաթիա քաղաքն է, որ էր հայրենիք Յովսէփայ և Նիկոդիմոսի, որոնք Քրիստոսի Մարմինը պատելով գերեզմանին մէջ դրին։ Ռէմլէի կից է յանուն Քառասուն նահատակաց Աշտարակը, որք Սեբաստիա մէջ նահատակուեցան, այս

տեղս հին ժամանակ Եկեղեցի էր ։ Գաւիթին մէջ տեղը փոքրիկ մզկիթ մի կայ, և աշտարակին ծայրը կ՚ելնուի 113 աստիճաններով ։

Ռէմլէն միջին դարուն մէջ բաւական չէն քաղաք մ՚ էր՝ պարսպապատ և 12 դռներով, իսկ այսօր աղտեղի և աւերակներով լեցուն փողոցները կ՚երեւին, ՚ի բաց առեալ երեք ազգաց վանքերը ։

Հայոց վանքը շինուած է սուրբ Գէորգայ անուամբ, որուն նուիրուած է փոքրիկ մատուռը ։ Ունի Տեսուչ վարդապետ մի եւ Թարգման՝ հանդերձ քանի մի միաբաններով ։ Ուխտաւորք հոս եկած ժամանակնին դարպասական տուրք չեն վճարեր, բայց որում Յոպպէ կ՚ուտան երկուքը մէկտեղ ։ Քանի մի ժամ միայն հանգըստանալէն յետոյ ճանապարհ կ՚ելնեն ուխտաւորք դէպ յԵրուսաղէմ ուղեւորելու, որ 7 ու կէս ժամու չափ ճանապարհ է ։ Այն քաղաքի և Հայոց վանքի վերաբերեալ պատմական տե-

ղեկութիւններին եւս կը ձգենք ուրիշ առթի։

Վանքէն մեկնելով և 10 րոպէ յառաջանալով Տաճկաց գերեզմանատունը կը հասնուի, ուրկէ կը սկսի դարձեալ Սորօնի ըսուած գեղեցիկ ու բարեբեր դաշտը։ Ասկէ մինչև Էշ-Պէրրէ գիւղը՝ որ աջ կողմը կ'լինայ 20 րոպէ է. Ճանապարհին՝ կամուրջէ մի կ'անցնուի, և տեղ տեղ աջ եւ ձախ դին կ'երեւին պահապանաց աշտարակներ, որոնք Ալիւրէյա փաշային ժամանակ շինուեցան ուղեւորաց ապահովութեան համար։ 10 րոպէ եւս յառաջանալով՝ ձախ դին կ'երեւի Էննապէ ըսուած Տաճկաց գիւղը, և 25 րոպէէն աջ դին բարձր բլրի վրայ Աղրա-ըուլէ ըսուած Բի-ըլէն՝ և ձախ դին ուրիշ Բի-ըլէ մի՝ Քոֆր-Դաղ անուն հին գիւղի մը աւերակներով պատած,

Յետոյ կը հասնինք Էշ-Քոդաղ գիւղը, ձախ դին կ'լինայ։ Սոյն գիւղին սաըդաշտէն վար իջած տեղը Սորօնի դաշտին վերջին մասն է. ասկէ

դէպ յարեւելք լերան ստորոտը կ'երեւի Պէյթ–Նուպա, որ Աքիմելէք քահանայապետին հայրենիքն էր, նա՝ որ Դաւթի մարդոց Առաջաւորաց հացը։

Վերոյիշեալ տարադաշտէն վար՝ կամուրջի մը վրայէ անցնելով, և 40 րոպէ յառաջ գնալով՝ աջ կողմի վերայ կը հանդիպի մղոնիկ աղբիւրակ եւ բլուր մը՝ որու վրայ է Լատրուն ըսուած կիսաւերակ գիւղը։

Աւանդութեամբ կ'ըսուի թէ հոս էր եգիպտացի Դեմաս անուն՝ բարի աւազակին բնակարանը։ Այն բլրին քով կը վերջանայ Սարոնի դաշտը եւ կը սկսին Յուդայաստանի լեռները։

Լատրունէն իբր ութ րոպէ՝ ձախ կողմն է հին Էմմաուսը. այս քաղաքս շատ պատերազմներ տեսնելով աւերեցաւ, յետոյ Վեսպասիանոս կրկին շինելով Նիկոպոլիս անուանեց։ Աստ մէջ դեռ կը տեսնուի խիստ հին Եկեղեցւոյ մը աւերակ մասեր յանուն եօթն Մակաբայեցւոց։

Անկէ շարունակելով՝ ճանապարհը 20 վայրկեան, պահապանաց երկու աշտարակներ կը հանդիպին, և ճանապարհին վրայ տեղ տեղ ջրի ակեր կը գտնուին. երկրորդ աշտարակին քովերը, որ ձախ կողմը կ'իյնայ, ջրհոր մի կայ որ Պիր-Էյյուպ կ'ըսուի։ 5 քայլե ետև յառաջ՝ կամուրջ մի կայ, ուսկէ անցնելով ձախ դին բարձրկեկ տեղւոյ մի ծայրը հին ու երեսի վրայ թաղուած տուն մի կը տեսնուի, այն է Տէր-Էյյուպ ըսուածը, որ կը նշանակէ Յօբայ վանքը։ Անկէց 15 քայլէ կը տեսնէ Պող-Էլ-ատայ (ձորադուռ) ուր ձախ կողմը խրճիթ մի կայ փոքրիկ սրճարան․ և աջ կողմն ալ պանդոկ մը, ուր սովորաբար ուխտաւորքը կ'իջնեն քիչ մը հանգիստ առնելու և սուրճ մի խմելու համար։

Արձանոցէն ելնելով անմիջապէս մտնենք Յուդայաստանի լեռներն կիրճը, և երկու շարք լերանց մէջէն անցնելով՝ 40 քայլէն՝ Սարի-ողլի ձիթենիստանին մէջ կ'ելլենք,

լերան ոտքը՝ ալ դին՝ ջրի աղբիւր ալ մի կայ՝ Այն-Շամիէ կոչուած, բայց ջուրը շատ լաւ չէ ։ 20 քայլէն կը հասնինք Էնձոր բռուած գիւղը, և անկէ 30 քայլ ալ յառաջանալով Կարիաթ-էլ-էծնապ գիւղը կուգանք, որ ալ կողմի բլրին ծայրը շինուած է ։ Այս գիւղը որ միւսներուն քով աւելի նշանաւոր է, Ապու-ղօշ կը կոչուի վաթսուն տարիէն 'ի վեր է, իւր մէկ Շէյխին անուամբը, որ երևելի էր իւր բռնութիւններովը և վանքերուն տուած վնասներովը, ուխտաւորաց վրայ անցատուրք դրած էր և շատ նեղութիւն կուտար անոնց ։ Իպրահիմ փաշայ 1830 ին. ասոր ուժը խորտակեց, եւ հիմակ սոյն Շէյխին սերունդը յետին չքաւորութեան մէջ են ։

Այս գիւղը հին Կարիաթարիմն է, Յուդայի ցեղին մէջ ։ Այս տե- Ամինադաբայ տանը մէջ մնաց Տապանակը, Փղշտացիք իրենց քովէ հեռացընելէն յետոյ ։ Սեմէի որդ

Ուրիա մարգարէն Կարիաթարիմէն էր, որ սոյն քաղաքին և երկրին դէմ կ'ուղղէր իւր մարգարէութիւնները, որ Յովակիմ արքայն սպաննել տուաւ զինքը. Երեմ. ԻԶ. 20։

Այս գիւղիս մէջ հին եկեղեցւոյ մը աւերակներ կան, զոր Գաղղիոյ տէրութիւնը ասկէ տասն և երկու տարի առաջ 1872ին Բ. Դռնէն խնդրելով ստացաւ 'ի պարգև՝ իւր ազգին համար։ Եւ կը յուսացուի որ քիչ ժամանակէն կը սկսին թէ եկեղեցին վերականգնել և թէ վանք մի շինել։ Հին եկեղեցին կառուցեալ էր յանուն Երեմիա մարգարէի։

Ապու-Ղօշն անցնելով, աջ դին բարձր լերան վրայ կը տեսնուի Մակաբայեցւոց հայրենիքը՝ հին Մովդիիմը, որ հիմակ Սոպա կը կոչուի, այս տեղ Շիմաւոն Մակաբէ՝ ծնողացը և եղբարց գերեզմաններուն վրայ օթը բուրգ կանգնեց։ Կան ոմանք որ Մովդիիմը աւելի հաւանաբար Լոդդէ արեւելեան կողմը երկու մի-

ղոն հեռու Մեղփէ բռուած տեղը կը դնեն, ուր կրնար Միջերկրական ծովէն ալ տեսնուիլ յիշեալ բուր-գերը . Ա . Մակ . ժգ . 29 , 30 ։ Ինչպէս առաջնոյն համար կ'ըսուի որ , ան-հաւատալի է ։

Ապողոնիէն 15 րոպէի չափ հեռանա-լով կամուրջի մի վրայէ կ'անցնուի, հոն մօտերը այլ դին փոքր աղբերակ մի կայ որ կը կոչուի Այն-Տինէ, և ձախ դին է բարձրիկեկ գետնի վրայ Պէյթ-Նաթուպ գիւղը ։ Ճանապարհին քանի մի աննը-շան հնութիւններն 'ի բաց թողլով, և լեռնաձորերու մէջէն անցնելով, բարձր տեղ մի կ'ելնուի, ուսկէ կը տեսնուի ձախ դին Նէպի-Սամուէլը, այն է հին Շռամաթայիմը՝ Սամուէլ մար-գարէի հայրենիքը ։ 10 րոպէ յառաջա-նալով խաչոյն հեռուանց կ'երևի Յով-հաննու ծննդեան գիւղը՝ Այն-Քէրիմ, ուր մեր այցելութեան ժամանակ պիտի տեսնենք ։ Անկէ ևս 10 րո-պէ գետ 'ի յառաջ երթալով կը հասա-նինք Քոլոնիէ կոչուած գիւղը, որ

ունի ։ Շարունակելով ճանապարհը 5 րոպէ, ձախ կողմը պահապանաց աշտարակ մի կը հանդիպի, և կ'ըս-կըսին այս տեղաց արեւելեան կող-մը Ս. Համբարձման լեռը և աջ դին Խաչափանքի ձորը երեւայ ։ Եւ երկ-րորդ աշտարակ մի եւս հանենընուս Երուսաղէմը կ'երեւի ։

Ճանապարհին. երկու կողմը նոր շինուած գեղեցիկ ամառանոցներ են և ուսումնական ու մարդասիրա-կան հաստատութիւններ, որոնցմէ վերջը կը տեսնուի Ռուսաց նորաշէն մեծ վանքը, որու մէջ է նաեւ հիւ-պատոսարանը, որ 1858ին սկսուելով 4 տարուան մէջ լրացաւ ։ Ձախ կող-մերնիս Թողլով զայն եւ քիչ մ'ալ յառաջ գնալով կը հասնինք սրճա-րաններու եւ նորաշէն խանութնե-րու առաջը՝ որոց վերջին ծայրն է մաքսատունը. և այս մաքսատան դի-մացը կ'իյնայ Յոպպէի դուռն՝ զոր Արաբացիք Պապ-էլ-Խալիլ կը կոչեն ուրկէ կը մտցուի քաղաքին ։

# ԵՐՈՒՍԱՂԷՄ

Երուսաղէմ քաղաքը, բաց 'ի իւր պատմական դէպքերէն, որով բոլոր ազգաց առջեւ երեւելի եղած է, նաև մանաւորապէս սուրբ համարուած է Քրիստոնէից համար', վասն զի այս քաղաքիս մէջ Տէրն մեր Յիսուս Քրիստոս աշխարհի փրկութիւնը կատարեց։

Երուսաղէմայ այժմ բնակչաց թիւը կրնայ համնիլ երեսուն և հինգ հազարի, որոց գրեթէ չորս մասին երկուքը կը բաղկանայ Հրէայներէ, երրորդը Մահմետականներէ և չորրորդ մասը՝ այլ և այլ ծէսեր ունեցող քրիստոնէայներէ։ Հայ ժողովըրդոց թիւը հինգ հարիւրի կը համնի։

Ուխտաւորք, ինչպէս ըսինք, Յոպպէի դռնէն ներս մտնելով՝ 0 մետրի չափ յառաջ՝ աջ կողմի նղարձակ փողոցը կ'առաջնորդուին. ու Դաւիթի բերդին եւ զօրանոցին առջեւէն անցնելէն յետոյ,

Ճանապարհը կը նեղնայ, և կամարի
տակէ անցնելով չհասած սուրբ Յա-
կովբայ հոյակապ վանուց դրան ա-
ռաջը կ՚ելնէ։ Ներս մտնելով վան-
քին Հիւրընկալ վարդապետը, կամ
նա չգտնուած ժամանակ սենեկա-
պանը կ՚առաջնորդէ զիրենք դէպ
՚ի հօգետունը, ուր ժամանակ մի
հանգստանալէն եւ սուրճ մի խմե-
լէն յետոյ, Հիւրընկալ վարդապետը
կ՚առնու կը տանի զիրենք յԵկեղե-
ցին, և սուրբ Էջմիածին անունով
Եկեղեցւոյն դռնէն ներս մտնելով
կարգաւ կը նստին Եկեղեցւոյ մէջ,
ուր Դարպասարընկալ վարդապետը բա-
րեպաշտ ուխտաւորներէ Գլխադրի
անուամբ մասնաւոր եւ որոշեալ
մէկ մէճիտ տուրքը ընդունելէն յե-
տոյ, անոնց անունները Դարպասա-
կան տոմարին մէջ կ՚արձանագրէ,
և Պահապանին տալով կը խրկէ զա-
նոնք սուրբ Յակոբայ Եկեղեցին, ա-
մէն մէկին ձեռքը մոմեր տալով, որք
Ս. Գլխադրի առջեւ ծնկած վրայ Հայր

դաւ կը շարքուին։ Այն ժամանակ կը
սկսին անմիջապէս դասին մէջէն «Որ-
դւոց որոտման» քաղցր շարականը
երգելու, և վարդապետներէն մին
շուրջառու սուրբ Ստեփաննոսի մա-
տուռէն դուրս կ'ելնէ խնկարկելով,
և Գլխագրի մատուռը կը մտնէ, եւ-
դէպ ՚ի ուխտաւորաց դառնալով
համառօտ ծանուցումով մը նոցա
գալուստը շնորհաւորելով, եւ իւ-
րեանց ճանապարհորդութեան նը-
պատակը՝ որքան սուրբ և նուիրա-
կան լինելը յայտնելով, կը յորդորէ
զիրենք ջերմեռանդ ոգւով ներկայ-
անալու, թէ ՚ի սուրբ Գլխագիր և
թէ բոլոր անօրինական սուրբ տե-
ղիքը։ Յետոյ երկրպագել տալով
նոցա սուրբ Եկեղեցւոյն մէջ գըտ-
նուած սրբազան խորանները, կ'առ-
նու կը տանի Հիւրընկալ վարդապե-
--ը ՚ի սեղանատունն՝ կերակուրի։
Յետոյ կը բերէ դարձեալ ՚ի Հոգե-
տուն, ուր տեղ նոյն գիշերն հան-
գիստ կ'առնուն։

Հետեւեալ առաւօտուն Դարպասընկալը իւր քանի մ'ընկերակից վարդապետներով Դարպասատուն կ'ելնէ, ուր կը հրաւիրուին բարեպաշտ ուխտաւորք, իրենց մեծ ու գլխաւոր դարպասական տուրքն շնորհելու համար Ս. Աթոռոյս։ Աւելորդ է ըսել թէ՝ գլխաւորապէս սոյն Դարպասական տուրց վրայ կը կայանայ Ս. Աթոռոյն հաստատութիւնը և պայծառութիւնը, վասնորոյ բարեպաշտ ուխտաւորք նախ կը յորդորուին Դարպասատան Անդամոց կողմանէ, որ չխնայեն իրենց հոգեւոր Դարպասական տուրքն աննախանձաբար նուիրելու, և իբրեւ Ազգային անդամ, Ազգային վանուց պիտոյից ձեռընտու լինելու։ Յետ այնորիկ իւրաքանչիւր ուխտաւորաց իրենց արժանաւորութեանը և Թուոյն համեմատ սենեակներ կը տրուին։

## ԱՌԱՋԻՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ
## Ի ՍՈՒՐԲ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԱՃԱՐՆ

Երուսաղէմայ առաջին և գլխաւոր սրբավայրը, որ բոլոր քրիստոնէից ուխտագնացութեան միակ նպատակը կը համարուի, Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Ս. Գերեզմանն է, Ս. Յարութեան ըսուած հոյակապ տաճարին մէջ: Այս տաճարիս մէջ հինգ այլ և այլ ազգեր ընկերովի իրաւունք կը վայելեն և աստուածային պաշտամանց արարողութիւն կը կատարեն, իւրաքանչիւր ազգ ըստ իւր եկեղեցական կարգաց: Այս ազգերն են՝ գլխաւորապէս Հայք, Լատինք, Յոյնք, և՛ի մասնաւորի Ղպտիք և Ասորիք: Առջի երեք գլխաւոր ազգերը՝ նաև Ղպտիք, իրենց սեփական եկեղեցի և մատուռներէն զատ, ունին և բնակութեան տեղի նոյն տաճարիս ներքին կողմը, վասն զի մեծ դուռը հասարակօրէն գոց կը մնայ

եւ անոր բանալիները դռնապան Տաճկաց քով կը պահուին : Այս տեղ բնակող միաբանները չեն կըրնար ըստ կամաց խուցեանց անկէ դուրս ելնելու . դուրս գտնուողներուն հետ մեծ դրան վրայ եղած փոքր դռնակէն միայն հաղորդակցութիւն կրնան ընել . ուսկէ ներս կը տրուին նաև իւրաքանչիւր ազգի միաբանից օրական կերակուրը՝ եթէ մեծ դուռըն գոց ըլլայ : Հայք , Լատինք եւ Յոյնք միայն իրաւունք ունին Ս. Գերեզմանի Ճակտին վրայ կանթեղներ վառելու , իսկ ներսի կողմը՝ սոյն երեք ազգերէն զատ Ղպտիք եւս կանթեղ ունին , նոյնպէս Գողգոթատեղւոյն վրայ և մնացած մասերուն մէջ՝ այլ և այլ պատկերներու առջեւ (1) :

Առջի երեք ազգաց Տեսուչ վարդապետները երբ որ կ'ուզեն՝ իրա-

---

(1) Մանրամասնութիւնք տես Բովանդ. Ազգ. Սեպհականութեանց. եր. 23. տպագրեալ Երուսաղէմ 1880 :

ւունք ունին պահանջել նոյն դըռնապան Տաճիկներէն որ Ս. Յարութեան տաճարին դուռը բանան, իրենց Հանդիսաւոր տօն օրերուն և ուրիշ պէտք եղած ամէն պարագաներու մէջ ։ Այս դրան բացման համար փոքրիկ տուրք մի որոշուած է, որ կը վճարուի դռնապանաց՝ դուռը բանալ տուող միաբանութեան կողմէն ։

Ս. Գեթսեմանին վրայ պատարագ մատուցանելու իրաւունքը միայն Հայոց, Յունաց եւ Լատինաց միաբանութեան սեպհականուած է. իւրաքանչիւր ազգ իւր եկեղեցական պաշտամունքները կը կատարէ իրեն սեփական եղած մատրան մէջ, և իւրաքանչիւր Ուխտատեղիքը Թափօրիւ պտըտելու և աղօթելու սովորութիւն ունեցողներն, ինչպէս

« Հայք և Լատինք, անխափան կը տարեն՝ բաց 'ի հանդիսաւոր մեծ սփօրներէն, Հայք ամեն ուրբաթ, շաբթ և կիւրակէ երեկոյները, և

պատահաբար ամէն ժամանակ երբէ նորեկ ուխտաւոր եկած է , իսկ Լատինք ամէն երեկոյին կը կատարեն հասարակ Թափօրը ։ Յոյնք միմիայն ուխտաւոր ունեցած ժամանակնին ։

Աւանդութիւնը մեզ կ'ուսուցանէ որ նախկին Հրէաստանը Ադամին բնակութեան տեղն եղաւ , որ վաղվաղակի հօն ապաստանեցաւ երկրաւոր դրախտէն արտաքսուելէն ետքը . նաև այն երկիրս ընդունեց նախահօր մարմինը , որուն գլուխը Թաղուեցաւ այն տեղս որ կոչուեցաւ Կրանիոն (Granion) որ կը նշանակէ տեղի գագաթան , այն է Գողգոթայն ։ Այս աւանդութիւնը մեզ ուսուցանողն է Ս. Բարսեղ , Որոգինէս , Ս. Եպիփան , Ս. Հերոնիմոս և այլք ։ Յիսուս Թաղուեցաւ մերձ 'ի Գողգոթա , և յետ երից աւուրց յարեաւ մահուան զօրութեան յաղԹելով ։ Քրիստոնէութիւնը հսկայաքայլ յառաջադիմութիւններ ըրաւ . Գողգոթան և Գերեզմանը ու

կից Աստուծոյ Որդին յարութիւն առաւ, մեծ յարգ և պատիւ կ'ընդունէր Նորընծայ հաւատացեալներէն: Տիտոս կայսրը Երուսաղէմը պաշարելու եկած ժամանակ, Յակոբ առաքելոյն յաջորդը՝ Սիմէոն կամ Շմաւոն, որ այն ժամանակ սուրբ քաղքին եպիսկոպոսապետն էր, քրիստոնէից հետ Յորդանանէն անդին Բելլա քաղքին մէջ ապաստանեցաւ. և պաշարումէն վերջը Երուսաղէմայ աւերակները, Գողգոթան և Ս. Գերեզմանն ժառանգելու համար վերադարձաւ, որոնք սկսան կրկին պատիւ ու յարգ գտնել:

Ս. Գերեզմանի մայր եկեղեցին, որ երկրորդ անգամ(1) Հեղինէի և որդւոյն Կոստանդիանոս կայսեր և մեր Տրդատ Թագաւորին ձեռօք շինուեցաւ, շատ անգամ ամբողջական և մասնակի կործանումներէն յետոյ,

(1) Առաջին անգամ սուրբ տեղիքը շինող ու նպաստողն եղաւ Աբգարու կին դշխոյն Հեղինէ:

վերջին անգամ 1868ին մեծ գմբէթը նորոգուեցաւ Օսմանեան տէրութեան խնամօք, և դրամական մասնակցութեամբ Ռուսիոյ և Գաղղիոյ կառավարութեանց, և կ'ըսուի թէ երկու միլիոն ֆրանք ծախք գնաց։

Ինչպէս ըսինք Ս. Յակոբայ մէջ տէրունական ուխտաւորաց, սենեակները տրուելէն յետոյ՝ նոյն երեկոյին Հիւրընկալ վարդապետը կ'առնու կը տանի զիրենք 'ի Ս. Յարութեան տաճարը ուխտ և երկրրպագութիւն մատուցանելու։ Նախ Ս. Յարութեան դրսի փակին մէջ Հայոց սեփականութիւնը եղած Ս. Յովհաննէսի եկեղեցին ուխտ և երկրրպագութիւն ընելով՝ ապա կը մտնեն 'ի Տաճարն Ս. Յարութեան եւ ուղղակի երթալով կը ներկայանան Տէսչին, ըստ սովորութեան իրենց դարպասական տուրքը նըւիրելու, որ է 33 դահեկան [1]

---

[1] Այն ողորմութեան տուրք. կը հոգացու

Տեղւոյն ժամարար վարդապետնե-րէն մին և կամ ուրիշ վարդապետ մի շուրջառազգեստ, Թափօրի տես-րակ և մոմ 'ի ձեռին, նոյնպէս սար-կաւագ մի շապիկով սաղաւարտ 'ի գլուխ և բուրվառաւ և անդ գտնը-ւած վարդապետներով, դպիրներով, Թափօրի կ'ելնէ հանդերձ ուխտա-ւորօք, եւ բոլոր Սրբազան տեղիքն ու մատուռները կը շրջագայեցընէ, իւրաքանչիւր Տնօրինական տեղւոյն համեմատ Ս. Աւետարանը կարդա-լով, և համառօտ ծանուցմամբ տե-ղեկացնելով ուխտաւորաց Յիսուսի Քրիստոսի նոյն տեղւոյն վրայ կատա-րած փրկագործ խորհուրդն, և յոր-դորելով զբարեպաշտ ժողովուրդը 'ի ջերմեռանդութիւն, երախտա-գէտ զգացմանց լեցընելով նոցա սիրտերը։ Ուրեմն սկսինք տեղագը-րել իւրաքանչիւր սուրբ Տեղիքը,

---

դ Յարութեան տաճարին մշտական կանթեղ-ներուն իւղը, մոմը և ուրիշ զանազան պիտոյք-ն ։

որոնք սուրբ Յարութեան տաճարի շրջապատին մէջ բովանդակուած են, նոյն կարգաւ՝ որով մեր Թափօրը կը յառաջանայ ։

Ա. ՉՈՐՐՈՐԴ ԲԱՆՔ ։ Նախ սուրբ Գերեզմանի և Լատինաց եկեղեցւոյն առջեւէն անցնելով և դէպ՚ի աջ դին ծռուելով կ՚երթան առաջին սրբավայրը որ ձախ դին կ՚իյնայ, որ է Քրիստոսի ՉՈՐՐՈՐԴ ԲԱՆՔը, որ մթին մատուռ մի է և Յունաց ձեռքն է ։ Աւանդութեամբ կ՚ըսուի թէ այրի վրայ շինուած է, ուր տեղ Փրկիչն մեր Յիսուս Քրիստոս և երկու աւազակները արգիլեցին մինչեւ չարչարանաց գործիքներուն պատրաստուիլը ։ Երեք մասերու կամ խորշերու բաժնուած է, որով բանտարկեալներն երեք անձինք ըլլալնին ցոյց կու տայ ։ Ներս չմտած, աջ կողմը դրանը քով վանդակի պէս բան մ կը նշմարուի մեծ կակ քարի մի վրայօք եւ այս քարը երկու տեղաց ծակեր ունի փորուած. Յոյնք այս տեղ մէջ

տավառ կանթեղ մի ունին ու կ'ըսեն թէ՝ Յիսուսի Քրիստոսի բանտար-կութեան ժամանակ իւր երկու ոտ-քերը այն քարին ծակերուն մէջ գը-րուած էին և տակի կողմէն երկուան իրարու հետ շղթայած ։

Բ. Սուրբ Ղունկիանոսի սեղան ։ Յի-շեալ բանակէն դուրս ելնելով ուխ-տաւորաց Թափօրական հանդէսը, 12 մետր հեռաւորութեամբ ձախ կողմը կ'իյնայ սուրբ Ղունկիանոսի նուիրեալ Յունաց սեղանը ։ Ասիկայ է՝ ըստ աւանդութեան՝ Փրկչին մա-հուանէն յետոյ նորա սուրբ կողը նիզակով ծակողը, ու սկէ բղխեց ա-րիւն և ջուր, եւ այն սքանչելեաց վրայ հաւատաց Յիսուսի, եւ այս անդամ եկաւ իւր գործած մեղաց վրայ ողբալու ։

Գ. Հանդերձից բաժանման սեղան ։ Այս տեղին վրայ՝ կեցեր Ս. Ղունկի-նոսի սեղանէն երկու մետր հե-ռաւորութեամբ՝ կը գտնուի Հանդեր-ձից բաժանման Ս. Սեղանը՝ որ Հայոց

սեփական է ։ Այս սեղանին տերը դահլիճները իրենց մէջ բաժնեցին Յիսուսի հագած հանդերձները ․ « Բաժանեցին զհանդերձս նորա վիճակաւ » ․ Մատթ․ ԻԷ․ 35 ։

Դ․ Սուրբ Լուսաւորչի Եկեղեցին ։ Քիչ մի յառաջ երթալով նոյն ուղղութեամբ՝ դէպ 'ի արեւմուտք դուռ մի կը տեսնուի անփեղկ , ուսկէ 29 աստիճանաւ Հայոց սուրբ Լուսաւորիչ եկեղեցին կ'իջնուի ։ Երկու սեղան ունի եւ առանձին դասով բաժնուած է ․ Աւագ սեղանը յանուն Լուսաւորչի եւ միւսն յաջակողմն յանուն Ս․ Կարապետի ․ ունի եւ գեղեցիկ գմբէթ մի չորս մարմարեայ սիւնի վրայ ։ Աւանդութեամբ կ'ըսուի թէ սուրբ Լուսաւորիչ Հայրն մեր հոս եկած ու քիչ մի ժամանակ ճգնած է , վասն որոյ եւ իւր անուանը նուիրուած է եկեղեցին ։ Աւագ սեղանոյն ձախակողմն պզտիկ պատուհան մի կը տեսնուի , ուր տեղաց սրբուհին Հեղինէ լոյս աւանդու.

թեան, կ'աղօթէր, երբ իւր հրա-
մանաւը խաչափայտը գտնելու հա-
մար գետինը կը փորէին: Այս տեղը
ալ Հայոց սեփական է, ուր միշտա-
վառ երեք կանթեղ կը վառի:

Ե. Գիւտ—Խաչ: Նոյն եկեղեցւոյն
արեւելեան հարաւակողմն եղած 13
աստք աստիճան սանդղուխով Գիւտ—
Խաչի տեղը կ'իջնուի, ուր Լատինք
այն այրի յաջակողմն առանձինն պա-
տարագամատոյց սեղան մ'ունին:

Ծիտոսի Թագաւորէն յետոյ Նորա
չարչարանաց բոլոր գործիքները բռնա-
ւորութեան Հրէից պէտք էր որ
հողին տակ թաղուէին, ուստի թէ
խաչերն եւ թէ միւս երկաթեղէն
գործիքները բերին հոն նետեցին որ
փոս ու ամայի տեղ մի էր խաչելու-
թեան տեղւոյն մօտ, եւ հետզհետէ
քաղքէն դուրս հանուած աղբիւ-
վ եւ աւերակներու կոյտերով
ծածկուեցան: Քրիստոսի 326 թուա-
կանին սրբուհին Հեղինէ Ս. Գերեզ-
մանի եւ Գողգոթայի վրայ անկուած

չաստուածոց արձանները կործանել տալէն յետոյ, սուրբ Երուսաղէմի Մակար եպիսկոպոսին, որ ժամանակին պատրիարքն էր, և քաղաքին ծերունեաց հարցուփորձ ըրաւ՝ թէ ու՞ր որդեօք կրնայ գտնուիլ Քրիստոսի փրկագործ սուրբ խաչափայտը։ Այն ժամանակ Յուդայ կիւրեղ, որ ծերունեաց մին էր, այն տեղը նորա ցոյց տուաւ, ուր տեղ փորել տալով, վերջապէս երկաթի գործիքներին ու երեք խաչերը գըտանուեցան. բայց Քրիստոսի Տեառն մերոյ սուրբ խաչը ո՞րն ըլլալը յայտնի չէր։ Մակար հայրապետս աղօթք և հսկումն ընել տուաւ բոլոր հաւատացելոց, որպէս զի ցոյց տայ Աստուած Քրիստոսի խաչը։ Նոյն միջոցին հոգեվարքին հասած հիւանդ կին մի պատահեցաւ, ու սուրբ Հայրապետն ու Հեղինէ տարին առջին երեք խաչերն ալ և կարգաւ հիւանդին մարմնոյն մօտեցուցին. առջի երկուքը զօրութիւն մը ցոյց չտուին

բայց Երրորդը մօտեցուցած ժամա-
նակնեին անմիջապէս բժշկուեցաւ
մահուան դուռն հասնող կինը ։
Նոյն օրը սուրբ Հայրապետը ննջե-
ցեալի մի եւս պատահեցաւ որ թա-
ղելու կը տանէին , եւ նոյն փորձը
կրկնելով ճանչցաւ ճշմարիտ կենաց
փայտը և անոր սքանչելի զօրութիւ-
նը , ըստ որում երբ Յիսուսի խաչա-
փայտը միւս երկուսէն յետոյ ննջե-
ցելոյն մարմնոյն մօտեցուցին , ան-
միջապէս յարութիւն առաւ ։

Զ . Զաղանաց սիւն կամ Փուշ–պանէ–
րեղան ։ Սուրբ Լուսաւորչի եկեղեցի-
էն դուրս ելնելով և դարձեալ ձախ
թեւէն վերայ կը տեսնուի Յունաց
սեղանը , որուն միջավայրը եկա-
թեայ վանդակի մը մէջ կը պարունա-
կի Զաղանաց՝ սիւնին մէկ մասը , որ
գորշագոյն կրանիթեայ սիւնի մը
մասն է , և ըստ աւանդութեան Տէրն
ի Յիսուս Քրիստոսն ասոր վրայ
նստեցուցին երբ փշեայ պսակով կը
սակէին , թշնամանելով և նախա-

տեսլով Պիղատոսի տանը մէջ, ուս-
կէ յետոյ հոս բերուեցաւ յիշեալ
սիւնը:

Է. Սուրբ Գողգոթա: Փուշ պսակի սեղանէն քսան քայլաչափ դէպ 'ի ձախ դին յառաջանալով, Գողգոթա-յին կը հանինք, ուսկից 18 ոտք աստիճաններով վեր կ'ելնուի: Հոս է Սուրբ Խաչին տնկուած տեղը, ո-րոյ վերայ բարձրացաւ Փրկիչն աշ-խարհի: Այս սրբավայրը որ Հայոց սեփական էր, 1422 Թուին Վրա-ցիք յափշտակեցին, այժմ Յունաց ձեռքն է:

Ը. Տարածման տեղն: Գողգոթայի ձախակողմը կ'իյնայ եւ Լատինաց ձեռքն է, ուր ըստ աւանդութեան կը կարծուի թէ Յիսուսի Քրիստոսի խաչի վրայ տարածուած և գամուած տեղն է.

Թ. Պատանատեղը: Գողգոթայէն վար իջնելով, անմիջապէս դէպ 'ի ձախ կողմն դիմացնիս կ'ելնէ Քրիստոսի պատանուած տեղը, որ սուրբ Յա-

ռութեան մաճառի դրան դիմացը կ'իյնայ։ Այս տեղս կարմրագոյն գեղեցիկ քառանկիւնի քարով մի ծածկուած է. երկու կողմը մեծադիր և փոքրադիր երկերկու զոյգ աշտանակներ կան երեք ազգաց, այսինքն՝ Հայոց, Յունաց և Լատինաց, և քարին վրայօք կարգաւ խոշոր և միատեսակ կանթեղներ մշտալոյս կը վառին, որոնք չորս ազգաց են, այսինքն՝ Հայոց, Յունաց, Լատինաց և Ղպտւոց, ինչպէս կանթեղներուն վարի ծայրը կախուած պղնձին վրայի գիրերը ցոյց կուտան որ ազգին ըլլալը։ Հին ժամանակ այս սուրբ Տեղս գեղեցիկ մուղայէզով զարդարուած էր։

Յովսէփ Արեմաթացի եւ Նիկոդեմոս Յիսուսը խաչէն վար առնելէն յետոյ այս տեղս բերին պառկեցուցին, որ անշուշտ հարթ ու հաւասար տեղ մի էր. եւ օծելով րբ Մարմինը՝ պատեցին մաքուր աւով ըստ սովորութեան Հրէից։

Է, Ոտժախափման տեղը։ Պատանա-

տեղէն դէպ յարեւմուտք յառաջանալով, քսան քայլաչափ, Դերաւոց սենեկի դանէն, որ 'ի հարաւ կը բացուի, մինչեւ վերնատան քարեայ սանդուխը զետեղուած Հայոց ըղգեստուց միակտուր պահարանին գրեթէ արեւմտեան ծայրին առջեւն է Ո–ձախափնեան տեղին:

Ըստ աւանդութեան, Մարիամ սուրբ Կոյսն այս տեղւոյց տեսնելով առաջին անգամ իւր միածին Որդին խաչին վերայ բարձրացեալ, ուշաթափ եղած մարեցաւ և հետն եղող սուրբ Կանանց թեւերուն վրայ ինկաւ: Կամ ըստ այլ աւանդութեան, այս տեղ կայնած էին սուրբ կանայք, երբ Յովսէփ ու Նիկոդեմոս Քրիստոսի սուրբ Մարմինը մաքուր կըտաւներով կը պատէին: Յիշեալ տեղը Հայոց սեփական է, երկաթի ու բոլորակ ձողով շրջապատուած ու վրան ջահ մի կախուած: Այս ձախու քովի սանդուխները Հայոց վերնատունը կը հանեն:

ԺԱ. Իւղաբերից սեղան։ Յիշեալ տե-ղէն քանի մի սոսք դէպ 'ի աջ դին կամարին տակն է Իւղաբեր կա-նանց սեղանը, որ Հայոց ազգին սե-փականն է։ Այս տեղս եկան յիշեալ սուրբ կանայք միաշաբաթի (կիւ-րակէ) առաւօտուն Յիսուսի մար-մինը խնկելու, որ արդէն յարու-թիւն առած էր։

ԺԲ. Սուրբ Գերեզման եկեղեցի։ Իւղա-բերից սեղանէն վեց մեթր դէպ 'ի հիւսիս, Նորաշէն մեծ գմբէթի մը տակ և կլորաձեւ սրահակի մը մէջ-տեղը կը տեսնուի Տեառն մերոյ Յի-սուսի Քրիստոսի Ս. ԳԵՐԵԶՄԱՆԸ, և ընդհանուր քրիստոնէից երկրպա-գելի սուրբ տեղը։

Այն գերեզմանը երկու պզտիկ խորշերով բաժնուած ու ժայռի մէջ փորուած էր, առաջինը երկրորդին ՚ր գաւիթն էր, ուրկէ անցնելով երկրորդ խորշը կը մտնուէր, ուր եղ կար քարի մէջ փորուած մառ-նման փոս մը, որ վիմափոր կա-

մար մի եւս ունէր ։ Հեղինէ Թա-
գուհին այն տաճարը շինած ժամա-
նակ գեղեցիկ զարդարելու համար
Գերեզմանին հին ու բնական ձեւը
այլակերպեց ։ Մինչեւ 1808 ին քանի
մի ձեւերու մտնելէն յետոյ, յիշեալ
Թուականին այրեցաւ սուրբ Յարու-
թեան տաճարը, որ բաւ մեծի մա-
սին տախտակեղէն էր, Գերեզմանն
ալ քիչ շատ վնասուելով, Բարձրա-
գոյն Դրան կողմէն նոյն ժամանակ
Յունաց արտօնութիւն տրուեցաւ
տաճարը նորոգելու, որոնք գրեթէ
առանց առջի ձեւը փոխելու՝ մար-
մարեայ քարերով և քանդակներով
զարդարեցին յունական արձանա-
գրութիւններով ։ Հրդեհէն առաջ
Ս. Գերեզմանի շրջապատին վրայ
Հայերէն գիրեր ալ գտնուիլը ծե-
րունի միաբանք կը վկայեն ։

Ս. Գերեզմանի դուռը դէպ ՚ի
արեւելս կը նայի, ուսկէ կը մտցուի
առաջին խցեակը, որուն մէջտեղ
կանգնած կը տեսնուի մարմարեայ

սիւնաձեւ քար մի որ Հրեշտակի վէմ կը կոչուի ։ Այս տեղս է սուրբ Աւետարանի Ցանոփէջ ըսած տեղը , ուր կանգնած էր Հրեշտակին մէկը սպիտակ հագուած ։ Այս մատուռին մէջ 15 հատ մշտավառ կանթեղներ կան , մէջտեղի 5ը Լատինաց է , աջակողմեան 5ը Յունաց , ձախակողմեան 4ը Հայոց եւ մէկ հատ Ղպտւոց ։ Այս մատուռին մէջէն երկրորդ դռով մի կը մտնուի Ս. Գերեզմանը որու մեծութիւնը թէ՛ լայնութեամբ և թէ՛ երկայնութեամբ երկու մեդրի չափ է ։ Շրջապատերուն մարմարներուն տակը դեռ կը տեսնուին բուն Գերեզմանի բնական ժայռ քարերը , զոր Դշխոյն Հեղինէ տաշել ու կոկել տուած էր Զաքարիա մարգարէի Գերեզմանին նման , որուն համար յետոյ պիտի խօսինք ։ Քրիստոսի Տեառն մերոյ բուն քնանի տեղը հիւսիսոյ կողմն է , ժայ-
ն մէջ փորուած , որուն կողերն լքայի կողմը ճերմակ մարմարին-

ներով ծածկուած են , այնպէս որ բարեպաշտ ուխտաւորք ներս մըտ-նելնուն՝ բնականէն միացեալ քանի մի չեն տեսներ , բայց 'ի մարմարէ , պատ-կերներէ և կանթեղներէ ։ Հոս եւս 43 կանթեղ կը վառին մշտավառ , որոց 13 ական հատը Հայոց , Յունաց և Լատինաց են , իսկ 4 հատը Ղըպ-տուոց ։

Սուրբ Գերեզմանի ներքին կողմը հիւսիսային դին երեք մասի բաժնը-ուած է եւ երեք ազգաց կը վերա-բերի . մէջ տեղը Յունաց է , աջ կողմինը՝ յանոտից կողմը՝ Հայոց , եւ ունին յարութեան պատկեր մի՝ նկարուած կտաւի վրայ , և վեց աշ-տանակ ու ծաղկամաններ , ձախ կող-մինը՝ սնարից կողմը՝ Լատինաց է նոյն օրինակ պատկերով զարդա-րուած ։

Սուրբ Գերեզմանի դրսի դրան-երկու կողմերը բարձրկեկ քարա-չէն նստարանաձեւ սեթեր շին-ուած են , որոց վերայ կան Յունաց

կճեայ աշտանակները կերոնաքարձ, և ետեւի կողմերն են Հայոց և Լատինաց՝ պղնձէ մեծ աշտանակները՝ զորս Հանդէսներու, Պատարագի և Թափօրներու ժամանակ կը վառեն։ Իւրաքանչիւր ազգ ունի եւս մէյ մէկ զոյգ քիչ մի փոքր աշտանակներ։ Սուրբ Գերեզմանի արտաքին դրան ճակտին վրայ դարձեալ սուրբ Յարութեան պատկերներ կան վրայէ վրայ, անմիջապէս դրան վրայինը Հայոց է, երկրորդն Յունաց՝ որ մարմարի վրայ քանդակուած է. երրորդն Լատինաց որ կտաւի վրայ նկարած է, որոնց առջեւ մշտավառ կանթեղք կը վառին։ Մեր պատկերին առջեւինը Ս. Լուսաւորչի կանթեղ կը կոչուի (1)։

Այս սրբավայրերէս դուրս Թէ-

(1) Ասոնց նկատմամբ մանրամասն տեղեկութեան համար պէտք է դիմել. Բովանդակութիւն այն Սեփականութեանց անուն գրքին. Ե. 02—27. Տպագրեալ Երուսաղէմ 1880.

պէտ ուրիշ սուրբ Տեղիք եւս կան, յարգանաց արժանաւոր ; սակայն Թափօրիւ պտըտելու սովորութիւն չունին Հայք. Իւրաքանչիւր բարե-պաշտ անձն, կրնայ առանձինն պը-տըտել, ծանօթ ընկերի մի հետ, և իւր հետաքրքրութիւնը լեցնել:

Ասոնք են միւս տեղերը.

Ա. Ղպտոց սեղան: Սուրբ Գերեզ-մանի կից արեւմտեան կողմն է Ղըպ-տուոց սեղանը, որ սուրբ Աւետարա-նին սնարից կոչուած տեղն է, ուր տեղ նստած էր միւս Հրեշտակը և աւե-տիս տուաւ Իւղաբեր կանանց "Չի՜ աստ, այլ յարեաւ" ըսելով: Այս սեղանս յառաջագոյն Հայոց էր, ինչ-պէս կը վկայէ Համնէ վարդապետ (Երե. 206), և կ'ըսէ թէ Հէթում թագաւորն շինել տուած է: Ժամա-նակէ յետոյ այս սեղանս Ղպտուոց տալով, նորա փոխարէն յԵգիպտո-ուրիշ եկեղեցի մի առած են մերս յինք:

Բ. Յովսէփ Արեմաթեայի: Սոյն մատու

ուին դիմացը դուռ մի կայ որ երեք
խորշի կամ խցի բաժնուած է մէջ
առ մէջ. առաջինը նախագաւիթ մի
է, ուրկէ աստիճաններով վերը Հա-
յոց ժամարար միաբաններ ննջարանն
կ'ելնուի. երկրորդ խորշը մատուռ
մի է յանուն Ս. Աստուածածնի.
երրորդը գրեթէ ժայռի մէջ փոր-
ուած մութ տեղ մի է, քանի մի
մանր եւ անկանոն խորշերու բաժ-
նուած, ուր առանց լոյսի անհնա-
րին է մտնել. եւ այս տեղս է Յով-
սէփայ արեմաթացւոյն գերեզմանը։
Կան զի՛ ըստ աւանդութեան այս
սուրբ անձը՝ իրեն համար փորած
գերեզմանին մէջ, Յիսուսը թաղե-
լէն յետոյ, փափաքեց որ ինքն եւ
իւր ընտանիքն ալ նորա գերեզմա-
նին մօտ տեղ մի թաղուին. ըստ
որում նոյն գետինը իրեն սեփական
ղուածն էր, ուստի այն խորշերը
նպատակիս համար փորել տը-
ծ էր. Յիշեալ երեք մասերն, որ
[illegible] արեմաթացի կը կոչուին Հայոց

սեփական է, և Աստուծոյ Թողատրած
են Պատարագելու, սուրբ Աստուա-
ծածնի սեղանին վրայ երբ Մ. Յա-
րութեան մեծ դուռն բաց դնեն։
Մերայինք կը պատարագեն երբ որ
ուզեն։

Գ. Պարփէշ։ Նոյն տեղէն ելնելով,
և դէպ 'ի հիւս կողմը յառաջ երթա-
լով, և Գերեզմանէն գրեթէ 12 մեդր
հեռու կը տեսնուի Լատինաց սե-
ղանը Մարիամայ Մագդաղենացւոյ ա-
նուամբ, որ ըստ մեզ Պարփէշ կը կո-
չուի. ըստ որում Յիսուս այս տեղ
պարտիզպանի կերպարանքով երե-
ւեցաւ Մարիամու Մագդաղենաց-
ւոյ, որ երբ ձայնէն Ճանչնալով քո-
վը երթալ կ'ուզէր, ըսաւ Յիսուս.
« Մի մօտենար ինձ, վասն զի դեռ
Հօրս քով ելած չեմ, այլ գնա իմ
եղբարցս ըսէ, թէ ես իմ Հօրս և
ձեր Հօրը քով պիտի ելնեմ, իմ Աս-
տուծոյս և ձեր Աստուծոյն »։ Յովհ.
Ի. 17։ Այս պարտիզին վրայ երկու
մշտավառ կանթեղ կան, մին Հայոց

եւ միւսն Լատինաց , թէև երկու կանթեղն եւս նախ Հայոց էր , բայց 1631 ին Պարոնտէր կոչուած Գրիգոր պատրիարքը կանթեղին մէկը և երգեհոնի նւէրքև եղած խուցը Լատինաց տալով , անոնց փոխարէն Վերնատնէն երեք կամար առած և մեր եկեղեցին դէպ 'ի երկայնութիւնըն ընդարձակած է ։

**Դ . Երեւման խորան ։** Պարտիզին հիւսիսակողմը կ՚ աստիճանով վեր Լատինաց եկեղեցին կ՚ելնուի ։ Մենք պարտիզէն համար ինչ մեկնութիւն որ տուինք վերը , Լատինք նոյն եկեղեցւոյ տեղւոյն կուտան , հոս երեւցաւ ըսելով Մագդաղենացւոյն , վասն որոյ եւ եկեղեցւոյն անունը Երեւման կը կոչեն ։ Այն եկեղեցիէն դուրս ելնելուն՝ ձախ կողմը դուռ մի կայ՝ որ է աւանդատուն , և ասոր մէջէն ճանապարհ ունի դէպ 'ի Լատինաց վերնատունը ելնելու , որ սուրբ Գերեզմանի վրայ կը նայի ։

**Ե . [illegible] սեղանը ։** Պատանքատեղը

ւոյն դիմացը դուռ մի կայ, որ դէպ 'ի Գողգոթայի տակը կը բացուի։ Ներս մտնելու ժամանակ աջ կողմը քարէ շինուած բարձրկեկ տեղ մի կը տեսնուի, որու համար Լատինք կ'ըսեն թէ Խաչակրաց առաջին թագաւոր Կոտըֆըրուայի կամ Գօտիֆռէտոսի գերեզմանն է, որ 1099ին տիրեց Երուսաղէմի։ Ձախ կողմը առաջնոյն նման երկրորդ քար մի կայ բարձրկեկ, եւ այս ալ նորա եղբօր Պօտուէն կամ Պալտաւինոս անուն թագաւորի գերեզմանն է, որ 1113ին մեռած է։ Այս երկու գերեզմանները 1808ի կրակէն առաջ դուրսն էին, յետոյ երբ Յոյնք Ս. Յարութեան տաճարը նորոգելու արտօնութիւն ստացան՝ ներս առին զանոնք՝ ընդարձակելով Ադամայ մատուռը։ Պատանատեղւոյն դիմացը դէպ 'ի հիւսիսային կողմը պատին կից եղող երկու կարգ աստիճաններուն տակն ալ Խաչակրաց ուրիշ իշխաններու տապանները կան կ'ըսուի։

Ադամայ մատրան Ներսէ կողմը պզտիկ փոս մի կայ, ուր տեղ ըստ աւանդութեան՝ Նախաստեղծ մարդոյն գլխոյն ոսկորը դրուած էր։ Այս տեղուց կ'երեւի նաև Գողգոթայի վրայ խաչափայտը տնկած ժայռին ճեղքուածը։

Ջ. Հայոց վերնատունը։ Ասկէ ելնելով և Ուժաթափման տեղը գալով դուռ մի կայ, ուր տեղ է Հայոց տեսուչ վարդապետին սենեակը, և դրանը քովէն աստիճաններէն վեր ելնելով, վերնատունը կը հասնուի, որ երեք մասերու բաժնուած է, և Ս. Յարութեան մէջ առանձին Եկեղեցի է Հայոց ազգին սեփական, ուր կը կատարուի Հայոց միաբանութեան կողմէ գիշերային և առընչեան ժամերգութիւնք. և երկու շաբաթը մի անգամ կիրակի օրեր պատարագ կը մատուցուի. այս տեղս երկրորդ Գողգոթա կ'անուանի, ըստ որում խաչափայտակարանը կը պատմեն թէ՝ արտաքրակ պատրիարքը՝ Վրաց հետ

չկարենալով գլուխ ելնել, որոնք 1422էն մինչեւ 1439, քանի մի անգամ Հայոց ձեռքէն յափշտակեցին զսուրբ Գողգոթայն Եգիպտոսի սուլթանը և մեծամեծները կաշառելով. ուստի յիշեալ պատրիարքը սուլթանէն այս տեղս խնդրեց ու ստացաւ արծաթով, եւ ես դառնալուն յատուկ Եկեղեցի մի շինեց 1439ին և երկրորդ Գողգոթա կոչեց, որովհետեւ ճիշդ Գողգոթայի դիմաց կ՚իյնայ։ Յառաջագոյն այս տեղս Թագաւորաց հանգստարան էր կ՚ըսուի, և հոս կը բնակէին Թագաւորք եւ Թագաւորազունք ուխտի եկած ժամանակնին։

Այն եկեղեցւոյս դէպ ՚ի արեւելեան հարաւակողմը ուրիշ մատուռ մի եւս կայ, Երաշխաւոր սուրբ Աստուածածնի անուամբ։ Յիշեալ մատրան սեղանին ետեւը դուռ մի կը տեսնուի, որ սեղանատունը կը հանէ, և հոյակապ գեղեցիկ պատուհան մը ունի դէպ ՚ի սուրբ Յարութեան տա-

ճարի արտաքին մեծ դրան և բակին վրայ ։ Այս չէնքս , ինչպէս նաեւ սուրբ Լուսաւորչի Հայոց եկեղեցին , 1808ին Հրդեհի ժամանակ անվնաս մնացած են ։

Է · Յունաց Եկեղեցին ։ Սուրբ Գէորգմանի արեւելեան դին , և տաճարին դրեթէ մէջ տեղը , եկեղեցի է Յունաց , որ հարուստ զարդարանք ունի , ոմանք տգիտաբար Աշխարհամատուռ կը կոչեն այս մասը միայն , փոխանակ ամբողջ Տաճարն իմանալու սոյն անուամբ , ըստ որում՝ բոլոր Քրիստոնէից տիեզերական եւ համաշխարհական մայր Եկեղեցին է սուրբ Յարութեան տաճարը , ուր կը համախմբին ամէն տարի ամէն ազգէ եւ ամէն կրօնքէ խառն հաւատացեալք Յիսուսի Քրիստոսի Յարութեան սուրբ Խորհուրդը տօնախմբելու ։ Յունաց յիշեալ եկեղեցին մէջ տեղը անկուած քար մի կայ, ու համար Յոյնք միամտաբար աշխարհիս կեդրոնը կ՚անուանեն ։

Մ․ Յարութեան տաճարէն դուրս եղած Ուխտատեղիքն հետեւեալնե-րըն են ․

Ա․ Սգաւոր սուրբ Աստուածածնի մա-տուռն ։ Սուրբ Գերեզմանի տաճարի շրջապատէն դուրս , աւագ դըրան ձախ դին տասն աստիճաններով բար-ձըր՝ փոքրիկ մատուռ մի կայ Լատինաց յանուն Սգաւոր սուրբ Աստուածածնի , որ կից է Գողգոթայի , և պատուհան մի ունի , որ Գողգոթայի դուռն էր յառաջագոյն ․

Բ․ Սուրբ Աստուածածնի մատուռն ։ Յիշեալ Լատինաց մատրան տակովը Յոյնք փոքրիկ մատուռ մի ունին յա-նուն սուրբ Աստուածածնի՝ որ ժամա-նակին Հապէշլեց էր , և մեր ձեռքէն անցնելէն յետոյ՝ Յոյնք յափշտակե-ցին Աստուածատուր Պատրիարքի ժամանակ ։

Գ․ Ղպտւոց Եկեղեցին ․ Արտաքին գաւթին արեւելեան պատին հիւսի-սային անկիւնը՝ Յունաց յիշեալ Ս․ Աստուածածնի մատրան կից դուռ

մը կայ, ուրկէ կը մտնուի Ղպտւոց եկեղեցւոյն, որ շինուած է յանուն սուրբ Միքայէլի, որուն մէջէն աստիճաններով վեր ուրիշ եկեղեցի մի, անկէ ալ ուրիշ դռնով մի Հապէշից վանքը, և սուրբ Լուսաւորչի կամ Գիւտ-Խաչի տանիքն կ'ելնուի։

Դ. Սուրբ Յովհաննու մատուռն Հայոց։

Ղպտւոց Ս. Միքայէլ եկեղեցւոյ դրան ուղղութեամբ 6 կամ 7 մեդր դէպ 'ի հարաւ՝ գաւթին արեւելեան կողմը՝ Հայոց սեփական սուրբ Յովհաննու Աւետարանչի մատուռը կայ երեք սեղանով. Աւագ սեղանն է յանուն Ս. Յովհաննու Աւետարանչին, աջակողմինը Չարչարանաց եւ կապանաց Քրիստոսի, ձախակողմինը յանուն Հօրն Աբրահամու եւ զենման Իսահակայ։ Աջակողման փոքր սեղանին մէջ կը գտնուի չարչարանաց սիւնին մէկ կտորը՝ յոր կապեին զՅիսուս Կայիափայի տան մէջ, ւ զոր հաւատացեալք ջերմեռանդութեամբ կը համբուրեն 'ի յիշա-

տակ չարչարանաց Քրիստոսի ։ Եր-
ջանկայիշատակ Կիրակոս Պատրիար-
քի օրով 1849ին սոյն մատրան Ներ-
քին կողմը ամբողջ Նորոգուած է ։

Ե. Հայր Աբրահամու վանք ։ Ասկէ 9
մեդր անդին Յունաց Հայր Աբրահա-
մու վանք է, որու մէջ կայ երկոտա-
սան Առաքելոց անուամբ եկեղեցի
մի ։ Սոյն եկեղեցւոյս կից կայ ուրիշ
փոքրիկ մատուռ մի եւս, որ ըստ
աւանդութեան Աբրահամին իւր
Իսահակ որդին զոհելու տեղն է ։
Այս վանքն ալ Հապէշից ըլլալով,
առաջ Հայոց ձեռքն էր ։

Զ. Սուրբ Յակովբայ եկեղեցին Յունաց ։
Ս. Յարութեան Աւագ դրան աջ կող-
մը հին զանգակատունն է, որ հիմակ
աւերակ է ։ Ասոր ներքեւը դուռ
մի կայ ուրկէ Յունաց յանուն սուրբ
Յակովբայ եղած եկեղեցին կը մըտ-
նուի, եւ ուր տեղ ուրիշ քանի մ'
աննշան մատուռներ եւս կան ։

Ասոնք են ահաւասիկ սուրբ Յա-
րութեան տաճարի մէջը և դուրսը

եղած երկրպագելի և նշանաւոր տե-
ղուանքը։ Տէրունական ուխտաւորք
նոյն գիշերն հոն մնալով և յիշեալ
ներքին սրբավայրերը ուխտ եւ եր-
կրպագութիւն ընելէն եւ Ս. Գե-
րեզմանի վրայ մատուցուած անմահ
Ս. Պատարագին ներկայ գտնուելէն
յետոյ, որ ամէն գիշեր կը մատու-
ցուի. հետեւեալ առաւօտուն դուռը
բացուելով իւրաքանչիւր ոք կը դառ-
նայ՚ի Ս. Յակոբը և հանգիստ կ՚առնու։
Յետ այնորիկ կրնայ ինքը առաջնորդ
մի գտնելով, որու կրնայ առաւելա-
պէս ծառայել և սոյն գիրքս, շրջա-
գայիլ կարգաւ բոլոր սուրբ և նշա-
նաւոր տեղիքը թէ սուրբ քաղաքին
մէջ և թէ անոր բոլորտիքը պարըս-
պին մօտ եղած տեղերը, որոնց տե-
ղագրութիւնը հոս պիտի ընենք։

## ԵՐԿՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## ԽԱՉԻՆ ՃԱՆԱՊԱՐՀԸ ՄԻՆՉԵՒ Ի ԳԵՐԵԶՄԱՆ ԱՄԵՆԱՍՈՒՐԲ ԿՈՒՍԻՆ

Տէրունական ուխտաւորք քանի մի օր հանգիստ առնելէն յետոյ կը փափագին այցելութեան և ուխտի երթալ Աստուածամօր սրբոյ կուսին գերեզմանին, որ քաղաքին արեւելեան կողմը պարսպէն դուրս Գեթսեմանի ըսուած ձորին մէջ է։ Եւ երկու ճանապարհ ունի երթալու, մին քաղաքին մէջէն անցնելով և Ս. Ստեփաննոսի կամ սուրբ Աստուածածնի ըսուած դռնէն դուրս ելնելով, երկրորդն՝ Սիօնի կամ Փրկչի դռնէն և պարսպին տակովն երթալով. Արաբացիք այս երկու դռներէն առաջնոյն Պապ-էլ-Սպաթ՝ և երկրորդին Պապ-էլ-Տաւուտ կը կոչեն Երկրորդ ճանապարհը քիչ մի հեռու է, իսկ սովորական ճանապարհ՝

ռաջինն ըլլալով, մենք ևս անկէ կ'առաջնորդէինք մեր բարեպաշտ Ուխտաւորաց · ցոյց տալով նոցա Խաչէ կամ Զարչարանաց Ճանապարհէ (1) վրայ գտնուած սուրբ Տեղուանքը ։

Եւ որովհետեւ սոյն Ճանապարհը Պիղատոսի պալատէն մինչեւ 'ի Գողգոթայ կը վերջանայ, ուստի մենք այ տեղէ սկսելով շարունակեցինք մեր հոգեւոր այցելութիւններն ամենայն ջերմեռանդութեամբ ։

Առաւօտ կանուխեկ սուրբ Յակոբեայ վանքէն ելնելով եւ դէպ 'ի աջ կողմը դառնալով՝ կը հասնէինք սովորական Ճանապարհով մինչեւ Ս. Յարութեան եկեղեցւոյն դրան բակը, ուր քանի մի օր առաջ կատարեցինք մեր այցելութիւնները ։

---

(1) Խաչի կամ Զարչարանաց Ճանապարհ կոչեցինք, Լատինք ցաւագին Ճանապարհ կը կոչեն, այն ցնէրը՝ ուսկէ Քրիստոս խաչն ուսը՝ Պիղա- պալատէն հանուելով մինչեւ Գողգոթայ ելաւ ։

Բանկլին արեւելեան կողմի Հայրաւա-
յին անկիւնը. փոքր դռնէն դուրս
ելնելով, այրջան ծախող վաճառա-
կանաց փողոցին մէջ տեղ՝ աջ կողմը՝
Հին կամինքաշուա մի կը տեսնուի։
Այս տեղս առաջ կաշէգործներու
գործարանն էր, եւ Հին ժամանակ յա-
նուն Ս. Աստուածածնի, եւ բատ
ոմանց՝ յանուն Սրբոց Առաքելոց,
եւ կամ ըստ Հաննէ վարդապետի՝
յանուն սրբոյն Պետրոսի Առաքելոյ
Եկեղեցի մը կար։ Հիմակ սասոն եւ
Հինգ տարի է որ՝ 1869ին՝ Բրուսիոյ
տէրութիւնը առած է Գանանեան
կառավարութենէն, եւ նորոգս այսօր
սկսի մեծ շէնքեր շինելու. արդէն
մեծաքանակ ծախք ընելով փորեցին՝
ուր շատ հնութիւններ եւ շինու-
թիւններ եւ մանաւանդ Հին եկե-
ղեցւոյ աւերակ տեղը գտնուեցաւ,
թէ եկեղեցւոյ եւ թէ բոլոր տեղ
ւոյն յատակը մաքրեցին, որով բա-
զում նշխարք եւ վերին սենեակներ
յայտնուեցան. ընդ որս նաեւ մեծ

ձեռնտուութեան՝ զոր Բրուսիոցիք առ-
այժմ առժամանակեայ կերպիւ Ա-
ղօթատեղի ըրած են իրենց համար
1871էն սկսեալ։

Այս դրանը առջեւէն անցնելով Ճանապարհը երկուքի կը բաժնուի, աջ կողմինը պղնձագործաց և մաղազաց մեծ շուկայն կը տանի. մենք պէտք է դէպ 'ի ձախ կողմի Ճանապարհը ուղղուինք. և քիչ մի առաջ երթալով Ճանապարհը կը ծռի դէպ արեւելք և յետոյ դէպ 'ի հիւսիս՝ որ կը հանէ մութ շուկայն։ Յիշեալ շուկային կամարին բերանը, ձախ դին աւերակ տեղ մի կ'երեւի բարձր, ուր տասն և երկու աստիճաններով վեր կ'ելնուի, այս տեղս Կոստանդնուպոլսոյ ժամանակ Ս. Յարութեան տաճարի նախադռունն էր, ուր տակաւին երկու սիւները կան-գուն կ'երեւին, և հինն Ճանապարհ է դէպ 'ի վեր, ուսկէ կ'երթուի պտուոց վանքը և Հաղէչից վանքը Ոսկէհոր ըսուած սառնիճը, որոնց

վրայօք ուրիշ անգամ պիտի խօսինք։

Ա. Սեան դատավճռոյ։ Նախադու-
ռէն դէպ 'ի մութ շուկայն առաջ
երթալով, անոր ծայրը չորեքուղի
ճանապարհ մի կը հանդիպի. դիմա-
ցի ճանապարհը քաղքին Դամաս-
կոսի ըսուած դուռը կը հանէ, զոր
Արաբացիք Պապ-էլ-Ամուտ կը կոչեն.
ձախ կողմինը դէպ 'ի Յունաց և Լա-
տինաց վանքերը, աջ կողմինն է Խան
ճանապարհը. արդ՝ ձախ կողմի երթա-
լիք ճամբուն բերանը՝ հիւսիսակողմն
է Սեան դատավճռոյ ըսուած սիւնը, և
ըստ աւանդութեան՝ Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի մահուան վճռոյն
յայտարար թուղթը այդ սեան վրայ
փակցուցին։ Յիշեալ սիւնը խանութի
մի մէջ տնկուած է, որուն կամարէն
վեր կը բարձրանայ, և 7-8 մետր եր-
կայնութեամբ կը տեսնուի։

Բ. Դատաստանէ դուռը։ Այս սեան
մերձ արեւելահարաւ կողմ եղած
աւերակ կամարն որ ճամբուն բե
րանն է, Է՛ Դատաստանէ դուռն, ուսկ

Ցիսուս Քրիստոսը խաչն ուսը շալ-
կած դուրս հանեցին ։ Կը կարծուի
հաստատակօրէն, որ 'ի մահ դատա-
պարտուած ամէն անձինք այս դըռ-
նէն դուրս կը հանուէին տանջանա-
րանը տարուելու համար ։

Գ. Բերբենիկեայ դուռը ։ Ցիշեալ տե-
ղէն դէպ 'ի այլ կողմի ճանապարհին
մէջ յառաջելով 60 մեդրի չափ, այլ
թեւին վրայ պատին մէջ տեղաւո-
րուած սիւն մի կ'երեւի. այս տեղ-
ւոյս համար կ'ըսուի թէ Արքունւոյն
Բերենիկեայ (Վերոնիքա) դուռն էր,
որ Քրիստոսը՝ խաչն ուսը անցուցած
ժամանակնին՝ չդիմանալով նորա քա-
շած նեղութեանը, համարձակեցաւ
քովը մօտենալ եւ երեսէն վազած
քրտինքները սրբել ։

Դ. Պիղատոսին կամարը ։ Նոյն ճանա-
պարհը շարունակելով՝ երկու ուղի
[illegible]ընէ դիմաց, մին դէպ 'ի հիւսիս,
[illegible]ւսը դէպ 'ի հարաւ ։ Դէպ 'ի ձախ՝
[illegible]ւսիսային կողմի ճանապարհէն յա-
[illegible]ջ երթալով անցքը կը լայննայ,

եւ դիմացդ՝ անկիւնադրուխը՝ նոր դուռ մի կ'երևի, այս տեղ է Աւրարիացւոց հիւրանոցը և Նորաշէն մատուռը։ Ասոր հանդիպակաց կողմի անկիւնադրուխը հին քանդակ մի կայ. զոր Հռովմէական Հայք ծախու առին իրենց եկեղեցի շինելու համար և արդէն իսկ սկսած են շինել. այս շէնքի պատին տակովը փողոցին վրայ մարմարասիւնի մեծկակ կտոր մը կ'երեւի. այս տեղս հասնելով Յիսուս, կ'ըսէ աւանդութիւնը, եւ խաչին ծանրութեան տակ ընկճուած ըլլալով Սիմոն Կիւրենացւոյն պատահեցան, եւ բռնեցին զինքը որ խաչը նա տանի. Յառաջ երթալով դէպ 'ի աջ կողմի փողոցին մէջ, ձախ դին կ'երեւի Նորաշէն մատուռ մի եւ անոր կից Գաղղիացի Սիօնի Քոյրեր ըսուած մայրապետաց վանքը. Այս վանքին կռթնած հին կամար մի կը փողոցին վրայ՝ հիւսիսէն դէպ 'ի հարաւ ձգուած, որուն վրայ սենեա մի՝ կամ Տանկաց աղօթարան մի կ'ե

րեւի երկու կողմէն մէյ մէկ պատուհանով։ Պիղատոս այս կամարին վրայէն ցոյց տուաւ, կ՚ըսեն, Յիսուսն Հրէից, զինքը ծեծել տալէն յետոյ, կարծելով թէ այս անգութ ազգին սիրտը կրնայ ամոքել, եւ ըսաւ. "Ահա այրդ ցձեզ"։

Ե. Հերովդէսի պալատը։ Քիչ մը աւելի յառաջ գնալով, ձախ կողմն է Հերովդէս Չորրորդապետի պալատին տեղը, այն որ Յովհաննու կարապետին գլուխը կտրել տուաւ, և ծաղրաքանութեամբ վարուեցաւ Յիսուսի հետ՝ երբ Պիղատոս անոր քով խրկեց զՅիսուս։

Զ. Անտօնինեան աշտարակ, կամ Ատեան դատաւորարան։ Պիղատոսի կամարէն 40 մեդր դէպ ՚ի արեւելք զօրանոցի դուռը կայ ուր ատրիճաններով կ՚ելնուի։ Փրկչի ժամանակ այս տեղ Անտօնինեան աշտարակը կար, ուր կը նակէին Հռովմայեցւոց կողմէն եղող դատաւորները։ Պիղատոս Պոնցի դատաւորը որքան որ Յիսու-

որ անմեղ հրատարակեց, այսու ամենայնիւ փոխանակ աղատ արձակելոյ՝ Հրէից ձեռքը մատնեց որ ՚ի խաչ հանեն։ Հոս էր այն ժամանակները Դատաստանական ատեանը։ Յիշեալ զօրանոցին մէջ՝ տեղ մի կայ, որուն համար կ՚ըսուի թէ Փրկիչն մեր Յիսուս Քրիստոսի փշով պսակուած տեղն է։

Է. Փուշ-պսակի Եկեղեցին։ Զօրանոցի հիւսիսային պատին դիմացը ձախ թեւին վրայ երկաթեայ պզտիկ դուռ մի կայ, որուն ներսը եկեղեցի մը եւ կրօնաւորաց խուցեր կան, այս դռնէն ներս մտնելով բակին ծայրը դէպ ՚ի ձախ կողմը եկեղեցւոյ դուռըն է, զոր Հայք Փուշ-պսակի կ՚անուանեն։ Յիսուս Հրէից ձեռքը մատնուելէն յետոյ գլուխը փուշ-պսակ դրած՝ այս տեղս բերին ու սկսան խարազանով ծեծել ու ամէն տեսակ նախատինք՝ թուք ու մուտալ իրեն. այն եկեղեցին այժմ Լատինաց ձեռքն է, զոր տիրեցին 1838ին։

Այս տեղ կը վերջանայ Թուջին ճա-
նապարհը ։

Բայց մենք շարունակենք մեր այ-
ցելութիւնը դէպ 'ի յառաջ, ու կա-
մարի մի տակէն անցնելով, ուր կը
տեսնուի Սողոմօնեան տաճարի մէկ
դուռը, և փողոցին վերջացած տեղը
դէպ 'ի աջ դին ներսէ ներս կ'երեւի
ուրիշ մէկ դուռը ։ Հոս ճանապարհը
չորեքուղի է, որ մէկուն վրայ տան
մը կամարը կայ. այս կամարին տա-
կէն անցնելով՝ եւ բաւական առաջ
երթալով ձախ դին կ'երեւի Յովակի-
մայ եւ Աննայի տունը, ուր իրենց
անուամբ հին եկեղեցի մի կայ հայ-
կական ձեւով ։ 1187 Թուականին՝
Սալահատտինի տիրելով աստ՝ քա-
ղաքին մէջ գտնուած Տէրվիշներու
ուսումնարան ըրաւ որ այն ժամա-
նակ նոյն տեղն Սալահիէ կը կոչուէր,
Վերջին ժամանակներս՝ 1856 Թուա-
անին՝ նոյն տեղն Գաղղիացիք ստա-
ան Օսմանեան տէրութենէն 'ի պար-
՚ւ, և հին շէնքը պահելով Եկեղե-

ցին Նորոգեցին, եւ փողոցին վրայ՝ երկայնութեան՝ ընդարձակ և հոյակապ առաջնորդարան մը եւ ներսի կողմը սենեակներ, ու դպրոց մը շինեցին մեծաքանակ ծախուք, սրբատաշ քարերով. և եկեղեցւոյն քով եղած տուներն գնելով՝ այժմ կ'աշխատին ընդարձակել եւ հոյակապ վանք մը ընել։

Ասոր գրեթէ կից է Ս. Աստուածածնի անուամբ յիշուած բաղնիքը, և այս բաղնիքին դիմացի ճանապարհը շեղելով. Սողոմոնի տաճարին ուրիշ մէկ դուռը կը տեսնուի, որու քով աջ կողմը մեծ փոս մի կ'երեւի, որ է Պրոպատիկէ աւազանը (1). իսկ ձախ դին ծռուելով քանի մի զօրքեր կը տեսնուին որոնք Աստուածածնի դրան պահապաններն են։ Այս դուռը դէպ 'ի արեւելք կը բացուի. և աջ

(1) Այն աւազանին հիւսիսային կողմին կից փողոցին վրայ անմշակ մեծ պարտէզ մը կայ Հայոց վանքին սեփական։

ու ձախ կողմը Ցանկայ գերեզմանա-
տունն է. ուղղակի ճանապարհը բըռ-
նելով դարուվար իջնելու ժամանակ՝
ճանապարհը կը բաժնուի 'ի ձախ և
'ի յաջ. երկրորդ ճամբուն մէջ յա-
ռաջ երթալով դէպ 'ի վեր՝ հոն ծայրը
գետնին երեսը հարթայատակ ժայ-
ռեր կ'երեւին. այս տեղս, կ'ըսեն,
քարկոծուեցաւ սուրբ Ստեփաննոս
Նախավկայն։ Եւ դարձեալ ձախ դին
դառնալով, ձախ թեւի վրայ Հայոց
Զիթենեաց պարտէզն է, որու դու-
ռը կից է սուրբ Աստուածածնի ե-
կեղեցին իջնելու արտաքին աստի-
ճաններուն։

Սուրբ Աստուածածնի Գերեզմանը։ Գէթ-
սեմանի ձորին հիւսիսային ծայրը կ'իյ-
նայ ամենասուրբ Կուսին փառաւոր
Տիրուհը. քանի մի ոտք աստիճաններէ
վար արտաքին գաւիթը կ'իջնուի։
- կեղեցւոյս առաջին հիմնադիր Աբ-
-ար Թագաւորի կնոջ Հեղինէէն յե-
տոյ, եղած են երկրորդ Հեղինէն՝
ոստանդիանոսի մայրն ու ինքը։ 47

ոտք աստիճաններով կ'իջնուի Եկե-
ղեցւոյ մէջ. Ս. Կուսին Գերեզմանը
որ ժայռի մէջ փորուած է, դրսի
կողմէն տաշելով՝ միայն սուրբ Մար-
մինն ընդունած մասը թողուցած
են, չորս կողմը ազատ թողլով՝ որ
Եկեղեցւոյն արեւելեան թեւին
մէջ կ'իյնայ, ըստ որում Տաճարը
խաչաձեւ է։ Գերեզմանին ներքին
կողմն ալ կոկուած ու զարդարուած
է. մարմնոյն դրուած տեղը ճերմակ
մարմարիոնով ծածկուած է քար-
ձրր դիրքով ու սեղանաձեւ, որու
վրայ ամէն օր Պատարագ կ'ընեն
միայն Հայք ու Յոյնք. երկու փոք-
րիկ դռներ ունի, մին դէպ 'ի հիւ-
սիս եւ մին դէպ 'ի յարեւմուտս։
Հեթում Բ. Կիւլիկիոյ թագաւորը
1300ին Եգիպտացւոց վրայ արշաւանք
ըրած և յաղթութեամբ ետ դար-
ձած ժամանակ յԵրուսաղէմ գալով
'ի նշան գոհութեան՝ Գերեզմանի
դրսի կողմը արեւմտեան դրան կից
սեղան մը կանգնել տուաւ, որ մին.

չեւ ցայսօր կը մնայ և միայն Հայոց սեփական է, ուր երբեմն կը Պատարագեն եւս:

Ս. Գերեզմանին հիւսիսային կողմը՝ և Եկեղեցւոյն արեւմտեան թեւին մէջ՝ զատ զատ երկու սեղաններ կան Հայոց սեփական, առաջնոյն վրայ Ասորիք կը պատարագեն ամէն ուրբաթ օրերը, և երկրորդին վրայ Ղպտիք, ամէն չորեքշաբթի օրեր Հայոց թոյլտուութեամբ:

Ս. Գերեզմանին ետեւի կողմը սեղան մը կայ, ուր Ասորւոց պատարագաց Սեղանին առջեւէն կ'անցնուի՝ Յունաց է, իսկ հարաւային կողմը եղած անկիւնը Հայոց ժամարարներու զգեստաւորուած տեղն է:

Եկեղեցւոյն հիւսիսային թեւին վրայ եղած տախտակեայ տեղն, ուր 12 աստիճաններով վեր կ'ելնուի Յունաց տեսչին խուցն է:

Եկեղեցւոյ աստիճաններէն վեր ե-
ծ ժամանակ իսկոյն աջ կողմը դուռ կայ, ուր տեղ է Հայոց Տեսչին

խուցը եւ պահարանը։ Աստիճանաց կէսը հասնելով՝ աջ դին պատարագամատոյց սեղանն է Հայոց սեփական, ուր Յովսէփայ Աստուածահօր գերեզմանն է, պատին մէջ առանձին կամարով. դիմացի կողմն ալ Յովակիմայ և Աննայի գերեզմաններն են կրկին սեղանով, որ Յունաց ձեռքն է։ Բոլոր եկեղեցին Հայոց եւ Յունաց կը վերաբերի. նոյնպէս երկու ազգ միայն իրաւունք ունին ամէն օր պատարագելու սուրբ Գերեզմանին վրայ։ Թէ Ս. Գերեզմանին եւ թէ բոլոր եկեղեցւոյն մէջ գտնուած ամէն զարդ, կանթեղ, ջահ, կերոն, աշտանակ և այլն և այլն, հաւասարապէս երկու ազգին են, թէպէտ իւրաքանչիւրինը որոշուած եւ զատուած է։

Աստիճաններու գլուխը եղած ժամանակնիս, աջ և ձախ կողմերը պատուհաններ և մէկ դուռ մ՚ալ կ՚երեւի պատով հիւսուած, որ հասարակօրէն կը կարծուի թէ վերի եկե-

ղեցին ելնելու դուռը եղած ըլլայ.
ըստ որում, ինչպէս յայտնի կ'երեւի,
Հին ժամանակ այժմեան Տաճարին
վրայ ուրիշ եկեղեցի մի եւս կար,
որ եօթներորդ դարուն մէջ դեռ
կանգուն կը կենար եւ բոլորակ ձեւ
ունէր: Վեշտասաներորդ դարուն
մէջ յիշեալ եկեղեցին աւերակ մնա-
ցած ըլլալով, քաղքին պարիսպնե-
րը նորոգելու գործածուեցան ա-
նոր քարերը:

Սուրբ Գերեզմանի տաճարը եր-
կու բանալի ունի, որոնց մին Հայոց
եւ միւսն Յունաց լուսարարին քով
կը մնան:

Եկեղեցիէն դուրս ելածիդ պէս
անմիջապէս ձախ դին նեղ անցք մի
կ'երեւի, եւ փոքր դուռ մի երկա-
թեայ, եւ մէջը անշուք խորշեր են
ստորերկրեայ՝ երեք սենեակով. այս
տեղս Լատինաց ձեռքն է, որուն
համար կ'ըսուի թէ Յիսուս դեռ
խաչուած Առաքելոց հետ եկա-
օթելու, ուր եւ սագնաքի մէջ մը-

նալով արեան քրտունք հոսեց իւր դէմքէն, եւ ուր սաստ յաղօթելն. “ Հայր իմ, եթէ հնար է, անցցէ բաժակս այս յինէն ”։

Գաւթի արեւելեան աստիճաններէն վեր ելնելով, աջ կողմը խարխուլ պատով հիւսուած տեղ մի կայ որ Արաբացւոց է եւ մէջը գերեզման մի կայ կ'ըսեն, սակայն գերեզմանը այժմ չերեւիր։

Քիչ մ' առաջ երթալով Գեթսեմանի ձորին ուղղութեամբը՝ ձախ թեւին վրայ փողոց է դէպ 'ի Ս. Համբարձման լեռը ելնելու; և փողոցին բերանը Նոր պատով հիւսուած Ձիթենեաց պարտէզ մի կայ, և մէջը ութ ձիթենի, որոնց բուները աւանդութեամբ Քրիստոսի ժամանակէն կը կարծուին, և Ողջո՛նի ծառեր կը կոչուին ըստ ռամկաց։ Այս տեղս շատ տարի չէ, որ Լատինն իւրացուցին չորս դին հաստատուն պատ քաշելով, եւ հիմակ գեղեցի ծաղկանոց է, եւ ամէն ազգէ ուխ

տաւորք ներս կ'ընդունին, և երկա-
թեայ փոքր դուռ մ'ունի. արեւե-
լեան հարաւակողմի անկիւնը։ Դըր-
նէն դուրս՝ դէպ յարեւելք՝ ժայռ
մի ցոյց կուտան գետնի վրայ, որոյ
համար աւանդութեամբ կ'ըսուի թէ
Փրկիչն մեր Յիսուս հոս սպասել
տուաւ Պետրոսը, Յովհաննէսն ու
Յակոբոսը, պատուիրելով անոնց որ
արթուն մնան ու աղօթեն, ինքը
քարընկէց մի տեղ հեռանալով
խնդրեց իւր Հօրմէ, որ չարչարանաց
բաժակը զանց ընէ իրեն խմելու։

Երկոտասաներորդ դարուն մէջ
եկեղեցի մի կար այս տեղ յանուն
Առաքելոց ննջմանը։

Յիշեալ պարտիզին դրան հարա-
ւակողմը 15 մեդր հեռու սիւնի կը-
տոր մի կը տեսնուի, և ասիկայ նշան
է այն տեղւոյն՝ ուր Յուդա մատ-
նութեան համբոյրը տուաւ Փրկչին։

Համբարձման լերան այցելութիւ-
ուրիշ աւուր թողլով, մենք դառ-
նանք դէպ 'ի քաղաքը Փրկչադռնէն

ներս մտնելու և Ճանապարհին վրայ գտնուած նշանաւոր տեղուանքը աչքէ անցընելու համար ։

Ա․ Որդիմոլլեան դուռը ։ Յիշեալ աւետարանական տեղերէն եւս դառնալով և Ձիթենեաց պարտիզէն․ պատին տակովը յառաջ գնալով, ձախ-դին է Ս․ Համբարձման ստորոտը և աջ դին Գեթսեմանի ձորը ։ Ասկէց երեսնիս դէպ ՚ի սուրբ քաղաքը դարձուցած ժամանակնիս կ՚երեւի Որդիմոլլեան Դուռը, որ պատով հիւսուած է ։ Եւ ունի կրկին կամար երկու ոտքերու վրայ, որոնց ամէն մէկուն լայնութիւնն է 2 մետր, ամէն մէկ կամար եւս 2 մետր և 85 հարիւրորդամետր լայնութիւն ունի. կամարներուն շրջանակի դուրս ցցուած մասերն ալ տերեւաձեւ զարդարանքներով շքեղացուցած է ։ Այս դրունէն մտաւ յաղթանակաւ Փրկիչ մեր Յիսուս՝ Ծաղկազարդի կիւրակէ օրը ։

Եւ կ՚ըսուի թէ՝ Հերակլ կայսր

Կենաց փայտը Պարսից գերութենէն ազատելով՝ նոյն դռնէն ներս մտցուց, և ուսին վրայ շալկած տարաւ Գողգոթայի վրայ տնկեց ՚ի տես հաւատացելոց ։ Ս. Երուսաղէմ Մահմետականաց ձեռքն անցնելէն յետոյ, այս դուռը պատով հիւսեցին սուտ դաւանութեան մի հաւատալով, իբր թէ Ֆռանկ ազգը այս դռնէն կրկին անգամ ներս մտնելով պիտի տիրէ քաղաքին ։ Այս կողմն կը տեսնուին նաև Սողոմոնեան պալատին մէկ մասը, որոնք յայտնի են ահագին մեծութեամբ քարերէն ։ Ասոնց մէջ մէկ հատ քար մի կայ որ 6 մետր երկայնութիւն, 2 մետր լայնութիւն, և 1 մետր բարձրութիւն ունի ։

Ե. Տէառնեղբօր Ս. Յակոբայ ուխտ-տեղը ։ Ճանապարհն առաջ տանելով կամուրջի մի կը հանդիպինք, որ շինուած է Կեդրոնէ ըսուած հեղեղատին-այ ։ Ըստ աւանդութեան Լատինաց՝ Հրէայները Յիսուսը բռնած տանելնին երբ հոս հասան նոյն

կամուրջին վրայէն չանցընելու համար՝ հարաւային կողմէն վար Կեդրոնի հեղեղատին մէջ ձգեցին զինքը որ անկէ անցնեն, որոյ նշան՝ ինկած տեղը ոտքերուն և ծունկերուն տեղերը մնացին ժայռին վրայ (¹)։ Իսկ մերայինք աւանդութեամբ կ'ըսեն թէ Տեառնեղբայր Յակոբոս առաքեալը Տաճարի աշտարակէն հոս գահավիժեցին Հրէայք, և թափիչները՝ որ լուացք կ'ընէին ձորին մէջ, վրայ հասնելով իրենց թակերովը գլխուն զարկին՝ երբ սուրբ Առաքեալը դեռ կը գոչէր. «Տէր թող սոցա, զի ոչ գիտեն զինչ գործեն»։ Այսմաւուրք, Հոկտ. 23. և Դեկտ. 25։

Գրիգոր Շղթայակիր պատրիարքի ժամանակ խիստ աւեր ըլլալով սոյն կամուրջն՝ եւ վտանգաւոր անցուդարձից, 1728ին մեծ պատով մի ամրացուց ու կամուրջը նորոգեց '

(¹) Տես Հանդէս, պատմ. Ս. Երուսաղէմի, և 255, տպեալ 'ի Կ. Պոլիս 1807։

ընդարձակեց . և այն տեղ գտնուած սառնիճին բերանն ալ, որ երկխուղակի էր, նեղցնել տալով ապահովեց բաւական աշխատութիւն կրելով . և կամուրջին քով դէպ 'ի արեւելակողմն գտնուած կէս արտավարի չափ արտն ալ գնեց որ մինչեւ ցայսօր կայ և Հայոց վանքին է, որուն մէջ կայ նաև մի քանի ձիթենիի ծառեր :

Գ . Աբիսողոմայ արձանը : Կամուրջին դէպ յարեւելակողմը և հեղեղատին ձախ դին կը տեսնուի Աբիսողոմայ արձանը կամ Գերեզմանը, զոր Աբիսողոմ՝ Դաւթի որդին՝ ինքն իւր կենդանութեանը կանգնել տուաւ . Բ . Թագ . ԺԸ . 18 : Միաժայռ քարէ է . և մինչեւ ծնօտը (աղլուխ) ժայռէն կարըուած է . չորս կողմը դէպ 'ի երեսները չորս սիւներով զարդարուած է և անոնց վրայ բոլորաձեւ տաշուած սառամնի ձեւով և ծայրը երթալ սրացած, որ կը վերջանայ արուեստի փնջով մի : Ամէն մէկ երեն վրայ չորս սպատուհան ունի, և

ներսը լեցուած է խիճով զոր անց-
նող ու դարձող Հրեայք կը նետեն։
Արձանին յատակն ալ մի և նոյն ժայ-
ռին մէջ փորուած է գեղեցիկ զար-
դերով, բայց հիմակ հողով ծած-
կուած լինելուն չերեւիր։ Աբիսա-
ղոմայ բուն գերեզմանը Յորդանանու
արեւելեան կողմն է փոսի մէջ, ուր
տեղ նետեցին զինքը հորը դէմ ա-
պըստամբութիւն ըրած ժամանակ
սպաննուելէն յետոյ. Բ. Թագ. ԺԸ. 17։

Դ. Յովսափաթու ըսուած Գերեզմանը։
Աբիսողոմայ գերեզմանին կից արե-
ւելեան կողմը կը տեսնուի Յովսափա-
թու ըսուած Գերեզմանը, որ վիմափոր
մեծ այր մ'է, և դուռը գետնին մէջ
դրեթէ թաղուած, որուն միայն վե-
րին ծնօտը կը տեսնուի գետնին ե-
րեսին հաւասար։ Այս շիրիմը հա-
սարակօրէն կը կարծուի որ դատարկ
եղած ըլլայ և 'ի յիշատակ երեւելի
անձի մը՝ կամ նոյն Յովսափաթ թա-
գաւորին կանգնուած. վասն զի ըստ
Աստուածաշունչ սուրբ գրոց՝ մ

չեալ Թագաւորը Երուսաղէմի մէջ Թաղուեցաւ. Գ. Թագ. ԻԲ. 51։

Ն. Սուրբ Յակոբայ Այրը կամ Գերեզմանը։ Աբիսողոմայ արձանէն 45 մեթր անդին դէպ 'ի հարաւ՝ մահարձան մի կ'երեւի ժայռին մէջ փորուած, ուր պզտիկ գաւիթ մի կայ երկու սիւներով և երկու կէս-սիւներով, որոնք նոյն ժայռէն յօրինուած և մարդակով մի իրարու հետ միացուցած են՝ բոլորը մէկ ժայռէ։ Այս մահարձանիս համար քրիստոնեայք Ս. Յակոբայ այրը կամ Գերեզմանն է կ'ըսեն. Մահմետականք Տանթուր-Փարաօն կը կոչեն. իսկ վրան եբրայեցերէն վերատառութիւն կայ, որու մէջ գրուած է Եզիրայ ցեղին թաղը։ Յիսուս Քրիստոսէ քիչ ժամանակ առաջ շինուած կը կարծուի այս մահարձանս։

Առաքեալքը երբ տեսան որ իրենց Տէրը դահիճներու ձեռք կապուած յանձնուեցաւ, իրենք թաքուցին փախան, մէջերնէն ոմանք

հասոր գնացին տեղ մի սպահութեցան, որու վրայ ուրիշ անգամ պիտի խօսինք. իսկ Յակոբոս առաքեալ փոքրը, եկաւ այս այրին մէջ պահուեցաւ: Աւանդութեամբ կ'ըսուի թէ՝ մինչեւ Քրիստոսի յարութիւն առնելը հոս մնաց առանց բերանը բան մի դնելու, և թէ Փրկիչն մեր այս տեղս եկաւ երեւեցաւ իրեն, որպէս կը վկայէ Պօղոս ասելով, "Ապա երեւեցաւ Յակոբայ". Ա. Կորնթ. ԺԵ. 7:

Յակոբոս առաքեալ փոքրը՝ Ալփեոսի և Յուդայի եղբայրն է, և Յիսուսի Քրիստոսի հետ մօր քրոջ որդիք են. ասիկայ եղաւ Երուսաղէմի առաջին եպիսկոպոսը և Յիսուսի Քրիստոսի փոխանորդը: Հրէայք նախանձելով և թշնամանալով և իրենց քահանայապետէն գրգռեալ Տաճարի պարսպէն վար նետեցին զինքեւ հոն թափիչներու ձեռօք չարաչար հոգին աւանդելով այն մահուար ձանիս մէջ թաղուեցաւ, ըստ .

մանց յամի Փրկչին 62 ։

Քրիստոնէութեան առջի դարուց մէջ նոյն մահարձանիս վրայ մատուռ մի կար, ուսկէ վար շիրիմը կ'իջնուէր ժայռին մէջ փորուած աստիճաններէն, որոնք դեռ կը տեսնուին։

Զ. Զաքարիայի Գերեզմանը։ Սուրբ Յակոբայ շիրմին հարաւային կողմը կ'իյնայ՝ անոր կից, Զաքարիա որդւոյ Բարաքեայ Գերեզմանը։ Բոլորովին միակտուր ժայռէ քառակուսի կտրուած եւ իւրաքանչիւր երեսները երկու կիսասիւնով զարդարուած է, որոնց ծնօտները պարզ արուեստիւ մի դէպ 'ի դուրս քուաձեւ ցցուած են. և անկէ սկսելով դէպ 'ի վեր բրգաձեւ ծածք ունի առանց կորսնցնելու իւր քառակուսի ձեւը. դուռ չունի, և հաւանական է որ չորս քովերը դիզուած Հրէից գերեզմաններուն մէջ աներեւութացած ըլլայ ։

Զաքարիա Յովիադայ մեծ Քահանայապետին որդին երջանկանաւ որ ժողովուրդը բոլոր կռապաշտութեան

ծոնեւէ ինկաւ, աստուածային նախանձով վառուած, գնաց Տաճարն ու Իսրայէլացիքը յորդորեց որ ճշմարիտ Աստուածը չթողուն. բայց նոքա փոխանակ իւրեան մտիկ ընելու, Տաճարին գաւթին մէջ զինքը քարկոծեցին ինչպէս որ կը կամենար Յովաս Թագաւորը. Յիսուս Քրիստոսէ 864 տարի առաջ. Բ. Մնաց. ԻԴ. 20, 21:

Հոս վերջացնելով մեր Երկրորդ այցելութեան շրջանը, դառնանք յետ եւ կամուրջին վրայէն անցնելով եւ Կեդրոնի հեղեղատը ձախ կողմերնիս ձգելով ելլենք դէպ 'ի վեր, բռնելով այն ճանապարհը որ Փրկչագուռը կը տանի եւ քաղաքին պարիսպը աջ դիմնիս կ'իյնայ: Ներս մտնելով դռնէն եւ միւս կամարաբեռնէն դուրս ելած ժամանակնիս դէպ 'ի ձախ կողմի ճամբան բռնենք որ երկու փողոց դարձնելէն յետոյ ուղղակի Սուրբ Յակոբայ մեծ վանուց Հայրապետական դուռը կը տանի ու

բու դիմացի պարտիզին մէջի. եղած շոճի ծառերը, որոնք բոլոր ընդարձակ հրապարակը կը ծածկեն, աւելի մեծ շքեղութիւն եւ գեղեցկութիւն կ'ընծայեն տեղւոյն ։

Ներս մտնելով հանգիստացանք մեր հոգնած մարմնոյն, և մի քանի օրէն պատրաստուեցինք այցելելու համար մեր Սուրբ Փրկչայ վանքն և Սուրբ Երուսաղէմի հարաւային կողմի շրջակայներն ։



# ԵՐՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## Ի Ս. ՓՐԿԻՉ ԵՒ Ի ՀԱՐԱՒԱՅԻՆ ՇՐՋԱԿԱՅՔՆ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

*Առաւօտ մը նախաճաշ ընելէն յետոյ, երբ գեղեցիկ արեւ և մեղմ եղանակ կ'ընէր, բարեպաշտ ուխտաւորաց խումբը Փրկչի դռնէն դուրս կ'ելնէ Փրկչավանք ուխտ ընելու և սուրբ քաղաքի հարաւային շրջակայքն եղած նշանաւոր հին տեղուանքը այցելելու ։*

*Փրկչադռնէն դէպ 'ի հարաւ 37 մեդր առաջ երթալով Հայոց Զիթենեաց պարտիզին ցանկապատին տակովը, անոր ծայրը քանի մի ոտք աստիճաններ կը տեսնուին Հայոց հին տապանաքարերով շինուած, որու կից կայ նաեւ հին սիւնի մի կտոր ։ Այս տեղւոյն համար աւանդութեամբ կ'ըսուի թէ՝ Առաքեալներ. երբ ամենօրհնեալ սուրբ Աստուածամօր վախճանէն յետոյ անոր մար-*

մինը ճաղի մէջ դրած հոս հասան , Հրէից խուռն բազմութենէ մի արգիլուեցան , որոնք ատելութեամբ զինեալ կ'ուզէին վար տապալել նորա սուրբ մարմինը , բայց անմիջապէս պատժուեցան . մէջերնին ամէնէն յանդուգն եղողն որ քահանայ մի էր , երբ ձեռքը դէպ 'ի ճաղն երկընցուց որ վար ձգէ , ձեռքը գօսացաւ , եւ միւսներն կուրացան ։ Այն պատժոյն վրայ սարսափելով զղջումի եկան եւ Առաքելոց միջնորդութեամբ Աստուած շնորհեց անոնց առողջութիւնը . հաւատացին ամէնքն ալ 'ի Քրիստոս եւ մկրտուեցան ։

Յիշեալ աստիճաններէն ետ դառնալով դէպ 'ի արեւմտեան փողոցը կը մտնենք , դարձեալ Հայոց Ձիթենեաց պարտիզին ցանկապատին տակովը որ ձախ դին կ'իյնայ , 50 մետր ռաւ՝ տախտակեայ փոքր դուռ մի երեւի որ յիշեալ պարտիզին դուռն , ասկէ ներս մտնելով պարտիզին

մէջ տեղէն ուղղակի 60 մեդր յառաջանալով՝ 8 աստիճաններէ վար կիջնանք՝ որ երկաթեայ փոքր դուռ մի կը տեսնուի, այս է Հայոց Սուրբ Փրկչի հին վանուց դուռը։ Ներս մտնելնուս եկեղեցւոյն գաւիթն է, որ և գերեզմանատունն է սուրբ Աթոռոյս Պատրիարքաց, Եպիսկոպոսաց եւ վաստակաւոր Վարդապետաց և Միաբանից, ինչպէս կը ցուցնեն տապանաքարերը (1)։ Պատրիարքացը բարձրկեկ շինուած են մարմարիոնով զարդարուած; ինչպէս կ'երեւին դռնէն ներս մտնելնուս ձախ կողմի անկիւնը և գաւթին դիմացի կողմի կամարներուն տակը։ Այս եկեղեցւոյս և վանքիս տեղը, ինչպէս ամէն ազգ կը վկայեն, Կայիափայ քահանայապետին տունն է, ուր տեղ Յի-

(1) Թէ՛ ասոնց տապանագրութեանց և թէ՛ անոնց ու Ս. Յակոբեայ վանուցս մէջ գտնուած զանազան տեղուանք հին Բաշ—բաղչերու մէջ եղած յիշատակարաններուն, տես գրքիս վերջը դրուած յաւելուածին։

տեւս Քրիստոսը մատնութենէն յե-
տոյ բերին և հոս հարցաքննութեան
ենթարկեցին քահանայապետին դի-
մացն հանելով։ Այս տեղ Պետրոս
երեք անգամ ուրացաւ իւր Տէրը՝
չեմ ճանչնար զինքն ըսելով, եւ
հինգշաբթի գիշերը դէպ ՚ի ուրբաթ
լոյս՝ այս տանը մէջ անցուց Յիսուս
հազարումէկ նախատանաց համբե-
րելով։ Գաւիթին արեւելեան կողմն
է Եկեղեցւոյ դուռը, ուր մտնելով՝
սեղանին ձախ կողմը կողմնակի պըզ-
տիկ դուռ մի կայ եւ մէջը փոքրիկ
սեղան մի պատարագամատոյց՝ ուր
հազիւ երկու հոգի կը պարունակի,
այս է Երկրորդ բանտը, ուր անցուց
Փրկիչն մեր Յիսուս այն մէկ գիշե-
րը։ Եկեղեցին որ աւանդ սեղան մի-
բաւն դիրք մի ունի, մէկ սեղան մի-
այն կը ներկայացունէ, որու վէմն է
Յիսուսի Քրիստոսի սուրբ Գերեզմա-
նի կափարիչ Վէմը, զոր Հրեշտակը
որ շըլեց ու վրան նստաւ. Մարկ.
. 2։ Այն քարը որ գրեթէ կէս

բոլորակի ձեւ ունի, բոլոր սեղանը կը ծածկէ, եւ երեք տեղէն բաց թողուած է համբուրելու համար։ Այս կափարիչ Վէմիս վաւերականութիւնը ուրիշ Քրիստոնէայ ազգերն ալ կը հաստատեն։

Ս. Փրկչայ վանուց մէջ չորս սեղան կայ պատարագամատոյց, դրսի գաւթինը յանուն Ս. Զարչարանաց. եկեղեցւոյ աւագ սեղանն յանուն Ս. Փրկչայ, ձախ կողմը գտնուած փոքրիկ մատրան՝ երկրորդ բանտի սեղանը Ս. Բանտ. և ետեւի կողմի պահարանին կամ աւանդատան մէջ գտնուած սեղանն յանուն Ս. Երրորդութեան է։

Յիշեալ վանքին գոյութիւնը մինչեւ քրիստոնէութեան առաջին դարը կ'ելնէ, և Հայոց սեփական ստացուածք եղած է իւր հիմնարկութենէն 'ի վեր։ Սուրբ քաղաքս Արաբացւոց ձեռք անցնելէն յետոյ բաւական նեղութիւն կրած են սուրբ Բանտին ծառայող միաբանք, և բա

ւական ժամանակ լքեալ Թողու-
ցուած է բռնաւոր մարդոց ձեռք ։
Զորեքտասաներորդ դարուն մէջ ,
Յովհաննու Արճիշեցւոյ աշակերտ՝
Կարապետ անուն վարդապետ մի ,
Տոսպ գաւառէն յԵրուսաղէմ ուխ-
տի գալով , եւ տեսնելով յիշեալ
վանքը զոր Արաքացիք Հայոց ձեռ-
քէն յափշտակելով ախոռ կամ խան
շինած են , վշտալից սրտով Եգիպ-
տոս կ'իջնայ և 4000 դահեկանի կրկին
անգամ ծախու կ'առնու Սուլթա-
նէն , և վերադառնալով Եկեղեցին
կը նորոգէ , յորում էր կ'ըսէ Կա-
փարիչ վէմը ։ Զկնի այնորիկ հետ-
զհետէ սուրբ Աթոռոյս Պատրիար-
քունք պէտք եղած նորոգութիւն-
ներն ըրած , եւ պարիսպն աւելի
բարձրացուցած են Միծնցւոց յար-
ձակումներէն ազատ մնալու համար ։
Վերջին նորոգութիւններն եղան
1848ին Կիրակոս պատրիարքի օրով ,
ժամանակ գաւիթն եղած , սե-
նին ալ նորոգեցաւ , եւ արեւմը-

տեսան կամարներն եւ սենեակները չքնաւեցան :

Վանքի դռնէն դուրս ելնելով պարտիզին հարաւային կողմը գտուած տախտակէայ փոքրիկ դռնէն 3 սաք աստիճանաւ գերեզմանատունը կը մտնուի : Այն գերեզմանատունը, որ Սիօն լերան վրայ է, երեք ազգայ կը վերաբերի որոշեալ սահմաններովն, Հայոց, Յունաց եւ Լատինաց. մեծ մասը Հայոց է, որոնք մարդասիրաբար կը Թոյլատրեն Հապէշ, Ղպտի, եւ Ասորի ժողովրդոց եւս՝ իրենց ննջեցեալները հոն մէկ կողմը Թաղելու համար : Լատինաց գերեզմանատունը նոր պատով բաժնուած է, եւ բաց ի հիւսիսային կողմէն ուր ճանապարհ կայ, միւս երեք կողմէն Մեր գերեզմանատան մէջ մտած է, եւ յայտնի կ'երեւի որ բուկիրքը բոլոր մէկ գերեզմանատուն եղած է Հայոց ազգին սեփական, ու յետոյ մէկ փոքր մասը Լատինաց

տրուած, ինչպէս կը վկայեն սուրբ Աթոռոյս հին Յիշատակագրերը ։ 1866ին Լատինք երբ իրենց գերեզմանը շրջապատեցին բռնութեամբ մեր գերեզմանատան մէջ երկու դուռ թողեցին, որուն համար Բարձ. Դրան բողոքեց սուրբ Աթոռը, բայց եւ այնպէս այն խնդիրը դեռ վէճի տակ մնացած է (1) ։

Գերեզմանատան հարաւային մասը որ սահմանաքարերով բաժնուած է, Յունաց ազգին է. Նորա արեւելեան կողմը պատով շրջապատուած՝ եւ դէպ ի հիւսիս դուռ ունեցող գերեզմանոցն ալ Ամերիկացւոց է ։ Յիշեալ վերջին գերեզմանատան հարաւակողմը պզտիկ գետին մի կը տեսնուի, որ Ս. Աստուածածնի տանը տեղն է, ուր Յիսուսի Քրիստոսի մահուանէն յետոյ կը բնակէր սուրբ Յովհաննէս աւետարանչին հետ, եւ այս տեղը ինքն

(1) Տես Խնդիր Ս. Տեղեաց, տպեալ Երուսաղէմ 1871 ։

ալ վախճանեցաւ ։ Դեռ քանի մի խոշոր քարեր կը տեսնուին, որոնք աւանդութեամբ կ'ըսուի թէ նոյն տան հնութեան կը վերաբերին ։ Յոյնք այս տեղւոյս չոր պատին քով Պենտէկոստէի օրը աղօթելու կու-գան և ժամերգութիւն կը կատա-րեն, ըստ որում իրենց գերեզմա-նատան կից է ։

Բ. Սուրբ Սիօն վերնատուն ։ Յիշեալ գետնոյն արեւելեան դին իրար ան-ցած տներու կոյտ մի կը նշմարուի գմբեթաւոր և մինարէ մի եւս ունի ։ Հայք սոյն տեղին Ս. Սիօն կը կոչեն, Մահմետականք Նէպի-Տաւուտ, և Լա-տինք Ընթրեաց տեղ։ Երկու դուռ ու-նի, մին արեւմտակողմը՝ եւ միւսն հիւսիսակողմը. այս դռնէն ներս կը մտնեն այցելութեան գացող ուխ-տաւորք։ Մահմետական Սիօնցիք հոն յատուկ տեղ մի ցոյց կու տան ուխտ ընելու, ուր մտնելու համար նախ ախոռի մի մէջէն պէտք է անցնիլ, յետոյ աստիճաններէ վեր քարայա-

տակ պզտիկ գաւթի մի վրայ կ'ել-
նուի, և հոն ձախակողմեան դռնէ
հին եկեղեցւոյ մէջ կը մտնուի, որ
հիմայ մզկիթ է, և կառուցեալ է այն
վերնատան տեղւոյն վրայ ուր Յի-
սուս Քրիստոս իւր Առաքելոց հետ
զատկական զառն կերաւ, ուր սուրբ
Հաղորդութեան խորհուրդն կատա-
րեց, ուր Աշակերտաց ոտքերը լը-
ւաց, և թացեալ պատառն Յուդայի
տալով՝ յայտնեց թէ անոր ձեռօք
պիտի մատնուի եւ, Պետրոսի ուրա-
ցումն Գիտէր պիտի ուրանայ. վեր-
ջապէս այս տեղ խոստացաւ անոնց
Սուրբ Հոգին խրկելու։ Երկու ան-
գամ այս տեղը՝ Վերնատան մէջ՝
իւր Աշակերտներուն երեւեցաւ.
Երկրորդ անգամուն իւր կողը բա-
նալով Թովմաս առաքելոյն մատովը
շօշափել տուաւ. ըսելով. « Բեր ըզ-
տեռն քո եւ մխեա 'ի կողս իմ, եւ
մի լինիր անհաւատ՝ այլ հաւատա-
ցեալ »։ Յիսուս Քրիստոսի համ-
բարձմանէն յետոյ Հոգին Սուրբ

այս տեղս իջաւ Առաքելոց վրայ ։

Քրիստոնէութիւնը ծաղկած ժամանակէն 'ի վեր այս սուրբ Տեղւոյս վրայ եկեղեցի շինուած էր . և մինչեւ վեշտասաներորդ դար Քրիստոնէից ձեռքը մնացած՝ եւ երեւելի ուխտատեղի եղած էր . իսկ 1554 Թուականին Մա՛հմետական Շէյխ մը տիրեց սոյն տեղւոյն եւ բնակութիւն հաստատեց անդ , որ մինչեւ հիմայ նորա սերունդը բազմանալով կը բնակին , եւ որոնք Սիօնցի կը կոչուին , և դրամական փոքրիկ պարգեւ մի ընդունելով ուխտաւորներէ՝ ցոյց կուտան անոնց Վերնատան տեղը , որ ինչպէս տեսանք , այժմ անշուք սրահ մի է ։

Սիօնցիք կը հաւատան թէ Դաւթի և Սողոմոնի գերեզմանները այս տեղս են , և ներքնատներուն մի ցոյց կուտան զանոնք պարունակող , բայց ներս մտնելու ոչ այլոց կը թողուն և ոչ իւրեանք կը մտնեն . և այս պատճառաւ քովը տեղւոյն Նէպի-Տաւուտ

կը կոչեն ։ Բազում ժամանակէ 'ի վեր է Ս. Սիոնի Հարաւային և Հիւսիսային արեւելակողմը բաւական նոր շէնքերով ընդարձակեցին, Հիւսիսային արեւելեան կողմի նոր շէնքերը մինչեւ մեր Փրկչաւանքի Հարաւային պատը կը հասնի, նեղ ճանապարհ մի միայն երկուսին մէջտեղը մնալով ։

Գ. Պետրոս առաքելոյն այրը ։ Այս ճանապարհէն եւ դառնալով դէպ 'ի Փրկչադուռը, եւ անկէ աջ կողմի ճանապարհը շեղելով պարսպի պատին տակովը, մտնենք աջ կողմերընիս եղած առաջին ճանապարհը որ քարակոյս եւ անհարթ շաւիղ մի է. և անկէ 200 մեթրի չափ յառաջ երթալով դէպ 'ի Հարաւ՝ ծակ տեղ մի դիմացնիս կ'ելնէ Սողոմոնի Ջրանցքին մէջ. անկէց ալ դէպ յառաւելք վար իջնելով եւ 100 մեթրու քալելով Պետրոս առաքելոյն այրը կը գտնենք, որ Սիոն լերան Հարաւային արեւելեան ստորոտին վերայ է՝

Ճանապարհին ձախակողմը և 10 մեդր դէպ ՚ի ներս : Պետրոս առաքեալ իւր Տէրն ուրանալէն յետոյ հաւուն խօսիլը լսելով՝ յիշեց Յիսուսի Քրիստոսի կանխասացութիւնը , եւ իւր յանցանքը ճանաչելով՝ եկաւ այս տեղս իւր մեղքը ողբալու : Այրին բերանը բաւական ընդարձակ է ու դէպ յարեւելք կը նայի : Այս տեղ Արշակունեաց տէրութեան ժամանակէն փոքրիկ վանք և եկեղեցի ունէին Հայք եւ կը կոչուէր . « Վանք Հառաչանաց Պետրոսի » , և մինչեւ երկոտասաներորդ դարուն մէջ եկեղեցին կը մնար :

Դ . Սելովամայ աղբիւրը : Անկէ կրկին ետ դառնանք մինչեւ Փրկչադրան կողմը և պարսպին տակովը ստորական Ճանապարհաւ առաջ երթանք քաղաքին Աղբիւսաց ըսուած դուռը զոր Արաբացիք Պապ—էլ—Մաղարպէ կը կոչեն , և անկէ դէպ ՚ի Սելովամայ աղբիւրը երթալու շաւիղը բռնելով իջնենք , և անկէ սկսելով շարունա-

կենք մեր այցելութիւնը զոր Երկ-
րորդ այցելութեան մէջ թողուցինք ։

Ջորին արեւմտեան կողմը կ'իյնայ
Սեղրէլամայ աղբիւրը որ դէպ 'ի արեւելք
կը նայի, ուր է համանուն գիւղն ու-
րուն հարաւային արեւելեան կողմը՝
հին շէնքի մը՝ որ մզկիթ կը կարծուի,
աւերակները կ'երեւին ։

Սեղրէլամայ աղբիւրը զոր Արաբացիք Այն
-Սըրրէ-Մէրլէմ(1) կ'անուանեն Ոփալը-
մուած բլուրին ստորոտը շինուած է,
17 ոտք աստիճաններէ վար կ'իջնուի,
ուր պզտիկ և տափարակ տեղ մը կայ,
անկէ դարձեալ 15 ոտք վար իջնե-
լով ջրին մօտ կը հասնուի ։ Ջրին
հոսանքը անկանոն է, ժամանակ կայ
օրուան մէջ որ կը դադրի, յետոյ
նորէն կըսկսի, համը աղի է՝ չխմուիր,
բայց ամառը մեծ օգուտ կ'ընէ քա-
ղաքին՝ ջրերուն նուազած ժամանա-
կը ։ Աւազանը՝ ժայռին մէջ փորուած

---

(1) Մարիամայ տիրուհւոյ (Աստուածածնի)
աղբիւրը կը նշանակէ ։

պզտիկ խուցի մը մուտքը շինուած է, և այս խուցին մէջէն է ջրանցքը, որու միջին լայնութիւնն է 63 հարիւրորդամետր և բարձրութիւնը տեղ տեղ մինչեւ 4 մետր և քիչ մը աւելի: Երկրորդ տափիճաններու վրան հնաշէն կամարով ծածկուած է:

Ե. Յուդայի կախուած ծառին տեղը: Զաքարիա մարգարէի գերեզմանէն, դէպ 'ի հարաւ 100 մետր հեռու, Յուդայի Սկարիովտացւոյ կախուած ծառին տեղն է՝ ըստ աւանդութեան. Հոս է և Հրէից գերեզմանատունը, ուր տեսնելու արժանաւոր բան մը չկայ, բաւական է հեռուանց ակնարկ մը նետել, և անիրաւ մատնութեան մը ազնուալի վախճանը խորհրդածել:

Զ. Գոյլէւկլու-Բիեան ջուրը: Գուրձեալ Զաքարիայի գերեզմանէն սկսելով, 363 մետր դէպ 'ի հարաւ ձախ թեւի վրայ. Արաբացի գիւղականաց գիւղ մի կը տեսնուի Սելուան անուամբ, ինչպէս քիչ մը առաջ յիշեցինք.

այս գիւղը Գայթակղութեան լերան (1) ստորոտը շինուած է ։ Այս լերան գայթակղութիւն բառուելուն պատճառը այն է որ, Սողոմոն Եգիպտոսէն բերել տուած իր կռապաշտ կանանց համար, այս տեղը կռոց տաճարներ կառուցանելով՝ ժողովուրդը իւր վրայ գայթակղեցուց . Գ. Թագ. ԺԱ. 8 ։ Դ. Թագ. ԻԳ. 13 ։ Այս տաճարներէն մին դեռ կանգուն կը կենայ գիւղին քով, և անոր հիւսիսային կողմը որմածայռ ժայռի մը վրայ՝ միակտուր քար է քառակուսի՝ ժայռին մէջ փորուած դեղին գունով, և պզտիկ դուռ մը ունի Կեդրոնի ձորին վրայ ։ Ճարտարապետական զարդերէ զուրկ չէ դրսի կողմէն, իսկ ներսի կողմէն՝ արեւելեան ու հիւսիսային երեսները պատուհանի նման երկու խորշեր ունի և տաճարուն ալ իշու կոնքի ձեւով է ։

(1) Լեառն Մոսաթայ . որ Թարգմանի լեառն ծուլութեան կամ ապականութեան . Դ . Թագ . .. 13 ։

Է. Արքունի պարտէզը և Ջրի աւազան։

Անցնինք յառաջ Կեդրոնի ձորին միւս կողմէն և Սելովամայ աղբիւրի առջևէն զոր արդէն տեսանք, աջ կողմերնիս է Ոփալ ըսուած բլուրը, ձախ կողմերնիս Արքունի Պարտէզը։ 300 մեդրի չափ հեռուն՝ ճանապարհին վրայ՝ Ջրի աւազան մի կը հանդիպի աւերեալ, հոս կուգան կը թափին Սելովամայ աղբիւրի ջուրը՝ ապառաժի մէջ փորուած ստորերկրեայ ջրբուխէ մի անցնելով։ Գիւղի Ֆէլլահ կանայք այս աւազանիս մէջ կը լուան իրենց կտաւեղէնները, և քաղաքին պահապան զօրքերը անկէ կուգան ջուր առնելու։ Ասոր չորս դին գետինը պառկած կ'երևին նշանաւոր շէնքի մը աւերակներ, որ հաւանաբար մեծ աղբիւրի մը մնացորդ նիւթեր եղած պիտի ըլլան, որ Գ. Եզրասի մէջ կը կարդանք. Ժ. 14։ Այս աւազանին ջրովը կ'ոռոգեն Սելովամայ պարտէզները, այն է սուրբ Գրոց Պարտէզ արքունի ըսուա֊

Ծր. Դ. Թագ. ԻԵ. 4: — Երեմ. ԼԹ. 4: Ջրէ աւազանը Ոփալ բլուրի հարաւային արեւելեան ծայրը կ՚իյնայ:

Ը. Սողոմոնի լիճը: Այս աւազանէն 4—5 մեթր դէպ ՚ի հարաւային արեւմտակողմը կը տեսնուի Սողոմոնի լիճը, զոր Յովսեփոս Փլաւիանոս կը յիշատակէ, որուն մէկ մասը ժայռին մէջ փորուած է, և հիմակ բանջարեղէնաց պարտէզ ըրած են:

Թ. Սեղովամայ աւազանը: Վերոյիշեալ աւազանէն 83 մեթր դէպ ՚ի յարեւմուտք է Սեղովամայ աւազանը, Ոփալի հարաւային արեւմտեան մասին. Դիւրըճէունի ձորին դէպ ՚ի ծայրը ձախ կողման վրայ շինուած. յիշեալ ձորը Ոփալ բլրին և Սիոն լերանը մէջ տեղէն անցնելով Յովսափատայ ձորին հետ կը միանայ: Այս աւազանին համար է որ քանի Փրկիչն մեր Յիսուս ՚ի ծնէ կոյրին. Թէ. երթայ Սեղովամայ աւազանին ջրովը աչքերը լըւայ որ տեսնէ. Յովհ. Թ. 1—7: Հին ժամանակ այս տեղ եկեղեցի կար և

տաճարը անոր մէջ առնուած էր , եւ երկուքի բաժնուած , մին այր մարդոց՝ և միւսը կանանց համար , որոնք իրենց ցաւոց բժշկութիւն գտնելու համար լուացուելու կու-գային ։ Երկոտասաներորդ դարուն մէջ դեռ եկեղեցւոյն կամարներն ու սիւները կեցած էին , և շատ հա-ւանական է որ Հայոց 70 եկեղեցեաց մին եղած ըլլայ , որոնց կարգին մէջ կը յիշուի թէ չորս վանք կան Սե-բաստիոյ կողմը ։

Այս տաճարը 15 մեդր երկայ-նութիւն եւ 4 մեդր միջին լայնու-թիւն և 5 մեդր բարձրութիւն ու-նի ։ Արեւելեան պատին մէջ դեռ քանի մը սիւներու բեկորներ կը տեսնուին ։

Ոփլայի բլուրը և Սիօնի մէկ մասը որոնց դիմացը կը գտնուին , Հին Եր-ուսաղէմի պարսպին մէջն էին ։ Յո-վաթամ Թագաւորը Ոփլայի պարսպ-ին վրայ շինութիւններ ըրած է ։ Բ. Մնաց. ԻԷ. Գ.

Ճ. Եսայի մարգարէի ողողման տեղը: Անկէ 130 մեդր անդին գետնէն բարձրացած ու քարերով ամրացուցած տեղ-մը կը տեսնուի Սողոմոնի լճին հարաւային արեւելակողմը, և վրան թթի ծառ մի կայ բաւական հին. աւանդութեամբ կ'ըսուի թէ Եսայի մարգարէն հոս սղոցեցաւ Մանասէ թագաւորին հրամանաւ, և այն տեղուանքը թաղուեցաւ:

ՃԱ. Ցօփայ հոր: 400 Մեդրաչափ նախ դէպ 'ի հարաւ, յետոյ դէպ յարեւելք յառաջ երթալով երկու չէնք կը հանդիպին այն տեղ ուր պարտէզները կը վերջանան: Այս չէնքերուն մէկը Մահմետականաց աղօթարանն է, որուն քով ջրի տաշտ մի կայ, և միւսը հորի մը վրայ խար-խարխալ չինուած մի է, զոր Արաբացիք Պիր-Էյուպ կը կոչեն, այն է Յոբայ հորը, զոր ռամիկք սովորաբար Աէն-Ռոգել կ'անուանեն: Հաւանական կը կարծուի թէ Հռոգէլը աղբիւր ըսածն այս է, Յուդայի և

Բենիամինի ցեղին սահմանագլխոյն վրայ շինուած . Յես . ԺԵ . 7 : ԺԸ . 16 : Բ . Թագ . ԺԷ . 17 :

Այն հորին մէջ, ինչպէս կը կարծուի, Իսրայէլացիք Բաբելոն գերի երթալէն առաջ Երեմիա մարգարէի հրամանաւ Տաճարին նուիրական հուրը պահեցին : Գերութենէ դառնալէն յետոյ Նեէմի՝ հուրը պահող քահանայից որդիքը խրկեց որ երթան փնտռեն, բայց անոնք թանձրացած ջուր միայն գտան հոն : Այն ժամանակ Նեէմի հրամայեց որ այն ջրէն առնուն և փայտերուն ու զոհերուն վրայ ցանեն, այն միջոցին երբ արեւն ամպերուն մէջէն դուրս ելնելով անոր վրան փայլեցաւ, յանկարծ կրակ մի բռնկեց, որով նուիրական հուր ըլլալը յայտնուեցաւ . Բ . Մակ . Ա . 19—22 :

Այս ջրհորը 29 մեթր խորութիւն ունի, եւ խիստ մեծ քարերով շինուած է, որով անոր հնութիւնը կիմացուի : կենդանի ջուր է որ նոյն

Հորին տակէն կ'անցնի կերթայ, բայց ուր երթալը մարդ չգիտեր, երբ սաստիկ անձրեւներ տեղալու ըլլան, ջուրն այնքան կ'աճի, մինչեւ բերնէն դուրս հոսելով առուակ մի կը կազմէ և բաւական օրեր կը տեւէ. մինչեւ մէկ ամիս չարունակ հոսիլը տեսնուած է: Եւ այս յորդութիւնը բնակչաց բոլ հնձոց առատութեան նշան է, և մեծ ուրախութեան առթ կը կատարուի Կերդոնի ձորին մէջ Յօբայ — Հորին բոլորտիքը, ցորչափ որ տեւէ անոր յորդութիւնը: Ջրին համը Սեւլովանայ աղբիւրին պէս ազի չէ, կրնայ խմելու գործածուիլ:

ԺԹ. Ո—ափ շ—ունէն: Յօբայ — Հորէն ետ դառնալով իբր 150 մեդր ճանապարհ, աջ կողմերնիս թողլով Կերդոնի ձորը եւ Սեւլովանայ պարտէզները, մտնենք այն նեղ ճանապարհը որ կիրճի մի աջ կողմը հանէ արեւմուքէն դէպ յարեւելք: Այս խոր կիրճը Ենոնի որդոյն ձորն է, զոր տեղացիք այժմ

Ո—ափ—էլ—Րօղադ կամ Ո—ափի—Շաուա-նէհ [1] կը կոչեն, որ Յուդայի ցեղի սահմանը՝ Բենիամինի ցեղէն կը զատէր ։ Այս ձորին մէջ Իսրայէլացիք կը պաշտէին Մողոք ըսուած կուռքը, որուն մինչեւ անգամ զմարդիկ կը զոհէին ։ Յուդայի Մանասէ թագաւորը իւր զաւակները այն Մողոքայ կրակէն անցուց. Բ. Մնաց. ԼԳ. 6 ։

Այս ձորը՝ ձոր Գեհոնի կամ Կոտորածի ալ կոչուած է՝ Իսրայէլացւոց այն տեղ կռապաշտութեան հետեւելնուն պատճառաւ. Երեմ. Է. 31, 32 ։ Եւ Երեմիա մարգարէն՝ Աստուծոյ հրամանաւ, հողէ թրծած աման մի բերելով, ծերունեաց եւ քահանայից հետ մէկ տեղ, այն ձորին մէջ զարկաւ գետինը խորտակեց զայն՝ ըսելով. «Այսպէս, կ'ըսէ զօրութեանց Տէրը. այս խեցեղէն ամանս ինչպէս որ խորտակեցաւ, այնպէս պիտի ջախջախեմ այս ժողո-

---

[1] Տես 117 երեսի ծանօթութեան ։

վաւրդս և այս քաղաքս, և ալ չպիտի բժշկուի․ Երեմ․ ԺԹ․ 11—14։

Յիշեալ ձորին ձախ կողմին վրայ եղած փորուածոյ աստիճաններէն վեր ելնելով, ընդարձակ գերեզմանոց մի կը տեսնուի, որ հաւանական կարծեմ հին Տոփեթին եղած պիտի ըլլայ, ուր կ'երեւին ժայռին մէջ փորուած գերեզմաններ։ Հին ժամանակ մինչեւ երկոտասաներորդ դարը ճգնաւորներու բնակարան եղած են, եւ տակաւին նշանագիրներ կը տեսնուին ոմանց վրայ։

ԺԳ․ Առաքելոց առանձնարանը։ 150 մեդրաչափ տեղ քալելով և քարաժայռի վրայ փորուած աստիճաններէ վեր ելնելով, ձախ կողմը ժայռին մէջ փորուած չէնք մի կ'երեւի ուլթ ճարտարութիւնով և շքեղութիւնքով զարդարուած, նոյնպէս երկու կոյղ խաղ, երկու պսակ և չորս վարդ, որնք իրարմէ երկու բարակ գաւառնաձեւ զարդով մի բաժնուած են։ Դռաքին սենեակը մեծ մասամբ ա-

ւերած է ։ Այս շէնքս Առաքելոց ա-
ռանձնարանը կը կոչուի, վասն զի՝ ըստ
աւանդութեան՝ Յիսուս Քրիստոս
Ձիթենեաց պարտիզին մէջ բռնուե-
լէն յետոյ, Առաքեալներէն 7 կամ
8 հոգին հոս եկան առանձնացան ։
Աննա մեծ քահանայապետին համար
այս տեղ Թաղուեցաւ կ'ըսուի ։ Յե-
տոյ Ոնոփրիոս անապատականը աստ
բնակելու եկաւ, ուր ժամանակէ մի
յետոյ պզտիկ մատուռ մի ևս շի-
նուեցաւ, ինչպէս ցոյց կուտան նը-
կարներու մնացորդները ։ Մէջը գե-
րեզմանական խորշեր դեռ կ'երե-
ւին, ոմանք բարձրկեկ նստարանի
ձեւով ու կամարով մի յարկացած ։

ԺԳ. Ակեղդամա կամ Ջանէր ։ Առա-
քելոց առանձնացած տեղւոյն կից է
արեւմտեան կողմէն Ակեղդաման կամ
Ս. Աւետարանին մէջ Ագարակ ա-
րեան ըսուած տեղը, ուր կ'ենթու[illegible]
Է մեղր բարձրութեամբ ժայռի մէ
վրայէ անցնելով. այս գետինը Յու-
դային եա դարձուցած երեսուն ար

խաչաձեւ գմբէթ ունի՝ ութ տեղաց ծակեր բացուած , ուսկէ մեռեալները վար կ՚իջեցնէին ։ Բոլոր շէնքը 20 մեդրաչափ երկայնութիւն և 12 լայնութիւն ունի ։ Ինչպէս լսինք , այս շէնքը Հայոց սեփական է եւ տարուէ տարի գետնին իճարէն մինչև ցարդ կը տրուի կառավարութեան ։

1736 Թուականին 'ի Բրուսիա տպուած Dappers Palaest. անուն գրքի մը մէջ , եր . 421 , յիշեալ Հայոց Ջառների մասին հետեւեալ տեղեկութիւնն կայ զոր արժան դատեցինք հոս դնել Թարգմանելով , 'ի հետաքրքրութիւն ընթերցողաց . « Ագարակն Ակեղդամայ
« կամ գերեզմանատունն ուխտաւո-
« րաց՝ Սիօն լերան հարաւակողմն ,
« Գեհոնի ձորոյն վերի կողմն է , ցա-
« մաք բլուրի և քարաժայռ լերանց
« մէջ տեղ , որ հին ժամանակներէն ՚ւ
« վեր փոքրիկ կտոր գետին մ՚է , և
« որ Հրէայները յԵրուսաղէմ մեռ-
« նող օտարաց գերեզմանատուն ը-

« նելու համար Բրուտէն գնեցին
« Արծաթի, զոր մատնիչն Յուդայ
« ետ դարձուց. Մատթ. Իէ. 3–8:
« Գործ. Ա. 19: Ներկայ ժամանակին
« մէջ (1736) այն տեղուն կը տիրեն
« Հայերը՝ որք Մահմետականներէն
« գնած են յատկապէս գերեզմանա-
« տուն ընելու համար: Այն տեղուն
« կեդրոնը քառանկիւնի կամարա-
« կապ չէնք մի կայ կառուցեալ,
« ոտնաչափ երկարութեամբ և լայ-
« նութեամբ, առատաղէն 4 և կամ
« 5 լուսամուտներ ունի, յորմէ չը-
« ւանաւ կ'իջեցնեն Հայերը յԵրու-
« սաղէմ մեռնող Հայ ուխտաւորաց
« մարմիններն, բայց առանձին դուռ
« մի ևս ունի յորմէ մտնելով, ննջե-
« ցելոյն մարմինն՝ առանց թաղելու,
« կարգաւ՝ քով քովի՝ գետնի վրայ
« կը դնեն և այնպէս կը մնայ գետ-
« նին երեսը, 'ի վերայ այսր ամե-
նայնի, քանի մ' օրէն զկնի ննջե-
ցելոց մարմինները կը չորանան՝ ա-
ռանց հոտելոյ.»:

Մարինոս Լատին պատմագիրն ալ այս տեղւոյն համար կ'ըսէ թէ քըսան և չորս ժամէն մինչեւ կը դարձընէ դիակն՝ եթէ հողի մէջ թաղուելու լինի։ Կը պատմուի թէ կ'ըսէ՝ Գիշխոյն Հեղինէ, այս հողէն նաւով Հռովմ տարաւ, և Վատիկան լերան մօտ լեցնել տալով գերեզմանատանը բրաւ, ուր թաղուած մեռեալներուն մարմինն 24 ժամէն հող կը լինին, մնալով միայն ոսկորներն։

ԺԵ. Չար խորհրդի լեռը։ Շարունակելով ճանապարհը ձորին եզերքով որ երթալով իւր խորութիւնը կը կորսնցնէ, աջ դին եղած ճանապարհին վրայէն ձորին միւս եզերքը ելնելով՝ ձախ կողմը լեռ մի կը տեսնուի, զոր ոմանք տեղացիք Ճէպէլ-էլ-Քուպուր կը կոչեն, որ "Գերեզմանոցի լեռ" ըսել է, նոյն գերեզմանատան պատճառաւ զոր վեր տեսանք, իսկ ոմանք աւելի գործածական անուամբ Տէյր—ապու—Թօր կը կոչեն, որ կը նշանակէ՝ "Ցուլին Հօր

իրենց գերեզմանատունը. այս տեղ հնութեան մերաքերեալ ժայռի մէջ փորուած սարիճաններ կ'երեւին մի-այն, որ բատ ոմանց Դաւթի ժամա-նակէն կը կարծուի:

Ճանապարհին ձախ կողմը ջուր պարունակելու մեծ աւազան մի կայ, որուն Պիրքէթ-էլ-Սուլթան կը կոչեն, և Սուրբ Գրոց "Ջրբուղխ կաղմելոյ" բաղը կը կարծուի(1), որ 180 մեդր երկայնութիւն և 80 մեդր լայնու-թիւն ունի. հիմակ աւերակ է եւ ջուր չպարունակիր երբէք. Ենոնի որդւոյն ձորին մէջ շինուած է: Աւա-զանի հարաւային պատին վրայ ջր-բանցք կայ ձորին լայնութեան վրայ շինուած ինը աչք կամուրջով, որ Յերուսաղէմ ժամանակէն մնացած կը կարծուի: Այս ջրանցքը Պիղա-տոս դատաւորը Տաճարին գանձովը

(1) Բ. Եզրաս. Գ. 16: Կաղմելոյ բաղը, որ Եբրայեցերէնն է Ասոխահ, մեծ աշխատութեամբ և արուեստիւ շինուած կը նշանակէ:

անգամ մի նորոգեց, ինչպէս կը պատմէ Յովսեպոս, Գիրք. ԺԸ. 4. որու պատճառաւ մեծ խռովութիւն ծագեցաւ գաւառորին եւ ժողովրդոց մէջ եւ բազմաթիւ Հրէայք սպաննուեցան։ Քրիստոնէայք Սողոմոնի ջրբանցք, իսկ Մահմետականք Քանաթ-էլ-Քու-ֆֆար կ'անուանեն։ Մեր ժամանակները, շատ սպառ չէ, քաղաքիս նախկին կառավարիչ Իզզէթ փաշայն եւս նորոգեց, և Ալըբեր կնքեալ ջուրը՝ նոյն ճամբով Օմարայ տաճարը բերել տուաւ. այժմ նոյն ճանապարհն վերստին նորոգութեան կարօտ է։

Առաջուան ատագանին արեւմտեան հարաւակողմը մէկ գծի վրայ շինուած սենեակներու շարք մի կը տեսնուի, զոր Մօնթէֆիօրէ մեծահարուստ Հրէայն շինել տուաւ իբր աղքատանոց. ուր կը բնակին կար-
ու երկերկու տարի՝ կարգութիւն
-նեցող Հրէայ ընտանիքներ՝ ձրի։
60ին շինուեցաւ. և մէջը հողմա-
ցք մի եւս կայ։

Յիշեալ աւազանին հիւսիսային արեւմտակողմը բլուր մի կը տեսնուի, ուր տեղ կայ մի փոքրիկ եկեղեցի Յունաց յանուն անարծաթ բժշկացն Կոզմայի եւ Դամիանոսի, որոց գերեզմանքն եւս են աստ ըստ ոմանց, բայց Յոյնք յանուն Ս. Գէորգայ կը կոչեն զեկեղեցին որոյ տեսուչն է աշխարհահռչակ Բէթլէհեմցի մի ուր կը բնակի իւր ընտանեօքն։ Այն եկեղեցին պարունակող բլուրին մնացեալ ամենամեծ մասը Զիթենեաց պարտէզ է, և Նիգոֆորիէ կ'ըսուի, յանուն Նիգոֆորի Յոյն քահանայի մի, որ առաջին անգամ ծախու առնելով տեղը՝ պարտէզ տնկեց և շէնքեր դրաւ, որ զբօսավայր է հիմակ. անկէց՝ կը տեսնուի Յոպպէի դուռը, զոր արդէն առաջին անգամ Երուսաղէմ մտած ժամանակնիս տեսանք, և որ քաղաքին ամենէն աւելի գործածուածն է և անթիւ բազմութիւն պակաս չէ։ Աւրիանոս կայարանը այս դրան վրայ մօտ

ճարեայ քարէ խօղի պատկեր մի կանգնեց, արգիլելով Հրէից՝ որ հոն չմօտենան եւ մօտեցողը մահուամբ կը պատժուէր ։ Դրանը վրայի վերնագիրէն կ'իմանամք՝ որ 1544 ին Սուլթան Սելիմին որդին Սուլէյման Բ, վերանորոգած է ։

Երրորդ այցելութիւննիս այս տեղ կ'աւարտի ։



## ՉՈՐՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## Ս. ՅԱԿՈՎԲԱՅ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ԵՒ ՎԱՆՈՒՑ ՄԷՋ

*Բարեպաշտ ուխտաւորաց հինգերորդ արտաքին այցելութենէն առաջ՝ հարկ կը համարիմք ներքին այցելութիւն մի ընել տալ Սուրբ Յակովբայ մայր եկեղեցւոյս եւ վանուցս ուրիշ նշանաւոր տեղուանքը, թէ՛ հոգեւորապէս մխիթարելու եւ թէ՛ իրենց փափաքն ու հետաքրքրութիւնը լեցնելու համար, ըստ որում այն այցելութիւնն բոլորովին ազգային հաստատութեանց կը վերաբերի, եւ իւրաքանչիւր ոք իւր սրտին մէջ հարկաւ կըզգայ ուրախութիւն եւ մխիթարութիւն մի, տեսնելով ազգային բարեպաշտական հնութիւններն եւ ուրիշ ուսումնական հաստատութիւնները։*

*Մտնենք ուրեմն Ս. Եկեղեցւ. մէջ որ փառաւոր եւ ակնապարս*

շինուած մ՚ունի և որու երկայնութիւնն է 22 մեդր և լայնութիւնն է 16. Եւ մօտենանք Աւագ Սեղանին մօտ մեր երկրպագութիւնն ու երախտագէտ սրտերնիս հոն նուիրելու: Այն Աւագ Սեղանիս ներքեւ թաղուած է Ս. Յակովբայ Տեառնեղբօր մարմինը, որովհետեւ այն եկեղեցւոյս տեղն էր Ս. Յակովբայ տունը, և հոս ամփոփուեցաւ միւս Ս. Յակովբայ Զեբեդէոսի որդւոյն գլուխը:

Աջակողմեան դասին մէջ կաթողիկէին եղած մեծ ու փառաւոր աթոռը Տեառնեղբօրն է, ուր տարին անգամ մի յիշեալ սուրբ Առաքելոյն տօնին օրը, ժամանակին գտնուած Պատրիարքը կ՚ելնէ կը բազմի առաւօտեան ժամերգութեան միջոցին, «փառք ՚ի բարձունս» երգին սկիզբէն մինչեւ ցվերջն, երբ այն երգն կը մնայ՝ բոլոր դասական Միաբանքը կը համբուրեն: Անոր քովի աթոռն է Պատրիարքականը, ուր սովորաբար կը նստին Պատրիարքունք:

Այն Եկեղեցիս հին ատենները ըստ
երկայնութեան աւելի փոքր լինելով.
աւանդութեամբ կ'ըսուի թէ Հե‑
թում թագաւորն ընդարձակած է,
Աւագ սեղանն ու քովի երկու սեղան‑
ները դուրս քաշել տալով. և ապա
Ռ. Ճ. Ա. Հայոց թուականին (1652) Փի‑
լիպպոս կաթողիկոսը յԵրուսաղէմ
գալով՝ Ս. Եկեղեցւոյն դասերուն և
ատեանի յատակը գոյնզգոյն քարե‑
րով և ճարտարապետական հիանալի
արհեստով զարդարել տուաւ եւ
բեմն բարձրացուց նմանապէս զար‑
դարել տալով գոյնզգոյն քարերով։
Եկեղեցին պզտիկ բայց խիստ սիրուն
ու պայծառ գմբէթ մի ունի պատու‑
հաններով՝ ժողովրդոց կանգնած սը‑
րահին վրայ և քառակուսի քարեղէն
չորս մոյթերուն մէջ տեղը։ Բոլոր
Եկեղեցւոյն պարիսպներուն ներքին
երեսները գետնէն մինչև երկու կան‑
գուն բարձրութեամբ յախճապա
կեայ քարերով զարդարուած, և ան
կէ վեր երկու կարգ պատկերներու

ծածկուած են, երկու դասերուն մէջ եղած վարի կարգի պատկերները՝ աջ կողմինը՝ Երուսաղէմի երեւելի Հայրապետաց, և ձախ կողմինը՝ Հայոց Նշանաւոր եւ ուրիշ Հայրապետաց պատկերները կը ներկայացնեն համակ զգեստաւորուած. իսկ սրահին մէջի վարի կարգի պատկերներն են՝ Նշանաւոր Սրբոց եւ Մարտիրոսաց Նահատակութիւնները, Երկրորդ կարգիններն են՝ Յիսուսի Քրիստոսի Տնօրէնութեան և Աւետարանական պատմութեանց պատկերները. Նմանապէս չորս մոյթերն ալ ամէն կողմանց երկու կարգ զանազան պատկերներով ծածկուած են ոսկէզօծ շրջանակներով. իւրաքանչիւր պատկեր իւր մէջը կը պարունակէ, Շղթայակիր Գրիգոր Պատրիարքի ժամանակ՝ զանոնք յիշատակ ընողներուն անունները, ըստ որում յիշեալ մենուն Հայրապետն եղած է Եկեղեցին նորոգող ու զարդարողը, ձեռնտուութեամբ Կոստանդնուպօլ-

ույ Պատրիարք և իւր հանձիրան Կա-
լոստ Յովհաննէս Եպիսկոպոսի, ինչ-
պէս ցոյց կուտայ Աւագ սեղանի
խաչկալին վրայի ոսկեզօծ խոշոր եր-
կաթագիր Յիշատակարանը գրեալ
'ի Թուին Հայոց ՌՃՀԱ. (1722)։

Եկեղեցւոյս ձախակողմն է սուրբ
Էջմիածնի եկեղեցին. ուր կը մնանուի
փառաւոր միջնադռնէ մի՝ կամարա-
կապ եւ սիւնազարդ. մէկ խորան
ունի յանուն Սուրբ Էջմիածնի, զոր
Եղիազար կաթողիկոս շինել տուած
է և յետոյ Շղթայակիր նորոգած։
Հարաւային պատին կից խորանաձեւ
եւ պզտիկ կաթողիկէիւ Սեղան մը
կ'երեւի Սուրբ Աննա անուամբ, զոր
Շղթայակիր Գրիգոր Պատրիարքը շի-
նել տուած է, եւ որու տակը ե-
րեք խոշոր քարեր կան, որոնց մին
Անեցական լեռնէն, մին Յորդանան
գետէն՝ և միւսը Թափօրական լեռ-
նէն բերուած են, որոնց համա,
տես 'ի գիրս Համնէի. (Երես 88)
Եկեղեցւոյս երկայնութիւնը 28 մեդ,

եւ լայնութիւնը 7 մեդր է . դասա-
գլուխը Պատրիարքական աթոռ մը
կայ ։ Հոս կը կանգնին կանայք , եւ
հոս կ՚ընծայեն բարեպաշտ ուխտա-
ւորք իրենց Գլխաւէր անուամբ եղած
տուրքն ։ Հարաւային կողմէն պատին-
կից աստիճաններով Վերնատունը
կ՚ելնուի , ուր տեղ կան երկու փոք-
րիկ սենեակներ յանուն Պայծառա-
կերպութեան եւ Ընթրեաց ։ Այս
Վերնատունը 1835 ին շինուեցաւ
Գաբրիէլ Պատրիարքի օրով , որ ժա-
մանակ Ադրիանուպոլսեցի Տ. Պօղոս
Վ. Պօլսոյ Նախկին Պատրիարքը՝ կա-
ռավարիչ ընտրուած էր Ազգային
միօրէնութեամբ Սուրբ Աթոռոյս
պարտուց ներքեւ ինկած միջոցին ,
ուսկէ ազատելէն յետոյ ձեռք զար-
կաւ թէ՛ այս վերնատանս եւ թէ՛
ուրիշ շինութեանց ։

Անկէ վերստին վար իջնելով եւ
բոլորելով միջնադռնէն մեծ եկեղե-
ցին մտած ժամանակնիս , աջ կողմեր-
ս Հայրապետաց պատկերներուն

կարգին սատափեայ դուռ մի կ'երևի
միափեղկ, ուսկէ պատին մէջէն 21
աստիճանաւ վեր ելնելով, ձախ դին
պատուհան մի կայ պատշգամով՝ ուր
ատենօք Ս. Միօն անունով փոքրիկ
սեղան մը կար, և որ մեծ Եկեղեցւոյն
գաւթին վրայ կը նայի, և աջ դին պա-
տուհան մի կայ ուրկէ Ս. Էջմիածնի
տաճարին վրայէն եկեղեցւոյ մէջ կը
նայուի, ասկէց 3 ոտք ետ ելնելով՝
դիմացնիս սեղան մի կ'ելնէ, յանուն
Ս. Առաքելոյն Պօղոսի որ շինուած է
Եկեղեցւոյ ձախակողմեան յանուն
Ս. Աստուածածնի սեղանոյն վրայ.
ասկէց դէպ 'ի ձախ կողմն 12 աս-
տիճան վեր ելլելով և Առագ խորա-
նին ետևէն անցնելով՝ եւ 12 ոտք
վար իջնելով աջ կողմը դարձեալ
սեղան մի կը տեսնուի յանուն սրբոյն
Առաքելոյն Պետրոսի, որ շինուած
է Եկեղեցւոյ աջակողմեան յանուն.
Սուրբ Կարապետի սեղանոյն վրայ
այս երկու սեղաններն՝ երկու մէ
կամարաձեւ պատուհաններ ունի

որոնք երկու դասերուն վրայ կը նա-
յին ։ Այս սեղաններուն վրայ ալ
Պատարագ կը մատուցուի յիշեալ
Առաքելոց տօնին և տարուան մէջ
ուրիշ մի քանի անգամ՝ որոշեալ
օրեր ։

Եկեղեցւոյ աջակողմեան դին՝
Ս. Էջմիածնի միջնադրան դիմացը՝
նոյն մեծութեամբ դուռ մի կայ կա-
մարաձեւ, բայց երկուսի բաժնուած
է հորիզոնաբար, վարի մասը դուռն
է սատափեայ երկու փեղկերով և
վերի մասը ամպիոն ձեւացուցած է,
ուր կը կարդացուի Յայսմաւուրքը ։
Այս դռնէն ներս սուրբ Ստեփան-
նոսի մատուռը կը մտնուի որ երկու
մոյթի վրայ կառուցուած է, և ե-
րեք սեղան ունի, Աւագ սեղանն է
յանուն Սուրբ Ստեփաննոսի նա-
խավկայի, աջակողմեանը Սուրբ
ուսաւորչի, ձախակողմեանը՝
ւրբ Կիւրղի Երուսաղէմայ Հայրա-
ետի, ասոր սեղանաքարին տակն է
տեղուած այն հին Մկրտութեան

աւագանը, որու մէջ յիշեալ Սուրբ Հայրապետը՝ հարիւր հազար անձինք մկրտեց Հրէայներէն Երեւման խաչին պատճառաւ։ Այս սեղանին կից դուռ մը կը տեսնուի, որուն ներսը մէջտառ մէջ երկու խուցեր են, որ է պահարան եւ իւղատուն։ Յիշեալ Ս. Ստեփաննոսի մատրան հիւսիսային կողմը երկաթի փոքրիկ դուռ մի կայ, ուսկէ կ՚երթուի մոմատունը, Ս. Պատարագի սպասի գործարան մասատունը, և այլ ուրիշ տեղեր ու թաղեր։ Նոյն մատրան մէջ է մկրտութեան Սուրբ Աւազանը, եւ ժամարար վարդապետք՝ աստ կ՚ըզգեստաւորին։

Սուրբ Ստեփաննոսի սատափեայ դռան կից դէպ 'ի հարաւ եղած Տէրունական պատկերն՝ Սուրբ Յակոբայ բաժակարբու Առաքելոյն գլխատումը կը ներկայացընէ, և որոյ առաջը մարմարեայ նեղ սև ղանաքար մի կայ։ Աջ դին է Գլխադիրը, զոր առաջին օրն տեսանք

Ս. Գրիգորի մատուռն քաջ 'ի հարա-
ւային հասարակ սատափեայ դռնէն,
յարեւմուտքէն ալ դուռ մի ունի,
ուսկէ կ'ելնուի ամենափոքրիկ քա-
ռակուսի բակի մի մէջ երկու դրո-
նով. Հիւսիսային դռնէն ներս՝ որ
միշտ վարագուրով ծածկած է՝ սուրբ
Մինասայ մատուռը կը մտնուի, ուր
կայ երեք սեղան, մին յանուն սուրբ
Մինասայ՝ եւ միւսն յանուն սուրբ
Սարգսի, իսկ միջին փոքրիկ սեղանն
յանուն Ս. Յարութեան։ Աստ մէջ
է աւանդատունը ուր կը պահուին
եկեղեցւոյ բոլոր զարդարանքներն և
զգեստեղէնները առանձին խցերու
եւ խորշերու բաժնուած, որոնց
պահպանութիւնը յանձնուած է ա-
ւագ Լուսարարին։ Սուրբ Մինասայ
մատրան յախճապակեայ պատերը
զարդարուած է ամէն տեսակ հա-
սրակ և ընտիր գաւազաններով։
Այն մատրան և պզտիկ բակին հա-
ւային դռնէն դուրս ելնելով դէպ
արեւմուտք և դրան կից ուրիշ սա-

տափեայ երկփեղկ դուռ մի կայ, ուր է Սուրբ Մակարայ անուամբ սեղան մի, որուն ներքեւ ամփոփուած է նոյն սուրբին մարմինը. ասիկայ Երուսաղէմ մի հայրապետներէն մին եղած է չորրորդ դարուն մէջ: Հիւսիսային կողմն ալ մարմարեայ նեղ սեղան մի կ'երեւի, որու տակ կայ Ս. Լուսաւորչի մասունքէն: Այս մատուռը միանգամայն և խոստովանարան է, ուր կը գտնուի միշտ այր մարդոց խոստովանահայր վարդապետը:

Այս մատուռին դիմացը առանձին երկաթեայ տրապիզով բաժնըւած տեղ մի կայ, որ Գլխադրի դաս կը կոչուի, ուր տեղ կը կանգնին եկեղեցականք եւ դպրաց դասը՝ երբ սուրբ Պատարագը Գլխադրի մէջ կը կատարուի շաբաթ օրերը, ուր տեղ կայ եւ պատրիարքական աթոռ մի: Նոյն աթոռին քովը որ եկեղեցւոյն հիւսիսային արեւմտեան անկիւնն է դուռ մի կայ, ուսկէ 30 ոտք աստիճաններով հիւսիսային պատին մէջէն

վեր կ՚ելնուի Սուրբ Նշանի խորանը, ուր կը պահուէր առաջ կենաց փայտը, եւ Գրիգոր Հայրապետ Շղթայակիր 1722 Թուին նորոգելով պատարագամատոյց սեղան մը կանգնեց, եւ պատշգամ մի շինելով լայնցուց պատուհանն, որ Գիլխադրի մատուռին վրայէն դէպ 'ի Ս. Յակովբայ եկեղեցւոյ մէջ կը նայի, և այս խորանին մէջ տեղ՝ կենաց փայտը դնելու համար դարակ մի շինել տուաւ ։

Աստիճաններուն գլուխը ուրիշ ճանապարհ մի կայ, ուսկէ կը մըտնուի Երկոտասան Առաքելոց փոքր մատուռը հնաշէն, զոր Թագաւորաց աղօթարան կը համարէ Հաննէ Պատ. Երե. 89, ըստ որում մատուռն երկրորդ դուռ մի եւս ունի որ 'ի տանիս կ՚ հանէ ։ Այն մատուռս ալ Գրիգոր Հայրապետ 1722 Թուին նո-
գելով՝ գրքատուն ըրած էր եւ
իր ուցան եղած ձեռագիր հին
եանքը կազմել տալով այս տեղ
ափած էր ։

Ցիշեալ տանիքին վրայ , որ առան-
ձին բակ մի է խիստ հին ժամանակէ
մնացած , Առաքելոց մատրան պատ-
կից ուրիշ խորան մի կայ . յանուն
Սուրբ Համբարձման , ուր տեղ տարին
անգամ մի պատարագ կը մատուցուի։

Այն տանիքին հիւսիսային դռնէն
դուրս մեծ տանիքներն կ'երթուի .
դիմացնիս դէպ 'ի աջ կողմը փոքր
կամարի մի մէջէ քանի մի աստիճա-
նով վար նոր դուռ մի կ'երեւի եր-
կու փեղկով , ասիկայ է այժմեան
Գրչատունը որ սովորական անուամբ
Թանգարան . կը կոչուի , Մէջը երկու
դուռ ունի , մին հին դուռ մը որ
վարը մոմատան կողմէն է իսկ միւսը
հիւսիսային կողմը՝ ուր տեղ է բուն
Թանգարանը . հին ատենէ 'ի վեր
այն սենեակն «Հին Պատրիարքարան» կը
կոչուի , որ հետզհետէ շատ բանե-
րու եւս փոխուեցաւ . զոր օրինակ՝
1832ին Դրիեստէն եկած տպագրու-
կան Մամուլն հոս դրուելով 183
Թուականի սկիզբն առաջին անգա

տպուեցաւ "Տէրունի Աղօթամատոյց վասն Ջերմեռանդ աղօթողաց, որ կամ անձամբ և կամ մօտ Ներկայանան 'ի Ս. Տնօրինական տեղիսն Քրիստոսի Աստուծոյ մերոյ" յանուն տետրակին; և ապա 1834 ին "Քերականն կամ Այբբենարան" և բազում կոնդակներ և այլն. եւ յետոյ մամուլն և գիրերն ուրիշ տեղ փոխադրուելով՝ զոր քիչ մը վերջ պիտի տեսնենք՝ այս տեղս ժամանակ մ'ալ վարժատուն եղաւ, եւ այժմ Թանգարան. այս Թանգարանիս հաստատութիւնք Ներկայ Եսայի Արքազան Պատրիարքին կը պարտաւորի. որ Նորա անխոնջ ջանից արդիւնքն է, որու մէջ 1700 հատորէն աւելի ձեռագիր գրեանք կան բաց 'ի ուրիշ լեզուներէ և տպեալ հին ու նոր գրքերէն, որոց Թիւը 1500 ի կը հասնի։

Ցիշեալ Գրքատունէն դուրս ելնլով և դէպ 'ի աջ դին ծռուելով, այն Գրքատան պատին ծայրը դուռն կայ, ուր մտնելով և քիչ մը ա-

ռած երթալով դիմացնիս երկու սա-
տիճան կ'ելնէ, մէկը վար իջնալու,
ուրկէ Մոմատուն կ'երթուի, եւ
միւսը քանի մի ոտքով վեր ելնելու,
ուր կը մտնուի դուռնէ մի, եւ անմի-
ջապէս աջ ու ձախ դիերնիս մէյ մէկ
դուռ կ'երեւին, այս տեղս է լուսա-
նկարչութեան գործարանը, որ նոյնպէս
ներկայ Եսայի Սրբազան Պատրիար-
քը հաստատած է։ Ուղղակի երթա-
լով եւ դէպ 'ի աջ կողմը շեղելով
կ'երթուի Հոգւոյն Սրբոյ փոքրիկ մա-
տուռը, որու դրան վրայի պատկե-
րէն յայտնի է. ասոր մէջ փոքրիկ
պատուհան մի կայ ուրկէ վար սուրբ
Թորոսի եկեղեցին է, զոր քիչ մը
վերջ պիտի տեսնենք։ Այն Հոգւոյն
Սրբոյ մատրան շինութեան վրայ ա-
ւանդութիւն մի կայ, որուն ստու-
գութեանը վստահ չըլլինելով՝ զանց
կ'առնումք յիշատակել։ Այս տեղ
եւս տարին քանի մի անգամ և Հ
գեգալստենէն յետոյ պատարագ
մատուցուի։

Այս տանիքին վերջին ծայրը անկիւնի մի գլուխ երկու դուռ կայ, ձախ կողմինը հին Տպարանինն է, ինկ միւսը տանիքի դուռ է ։

Ասկէ կրկին ետ դառնալով մինչեւ Թանգարանի դուռը, և դէպ 'ի ձախակողմի աստիճաններէն վար Սուրբ Ստեփաննոսի եկեղեցւոյ տանիքն իջնելով՝ դիմացնիս դուռ մի կուգայ, որ ուխտաւորաց ժամանակ փակեալ կը մնայ ։ Այս դրանէն դուրս դարձեալ տանիք է, այս տանիքի արեւելեան պատին հիւսիսային անկիւնը դուռ մի կայ, ուրկէ աստիճաններով վար կ'իջնուի Սուրբ Թէոդորոսի Եկեղեցին, որ առանձին երկաթեայ դուռ մի ունի հարաւակողմը, եւ ուրիշ դուռ մի եւս յարեւմուտք ։ Այն եկեղեցւոյս համար Հաննէ վարդապետ կը ''այէ թէ ՉԼԵ (1) թուին Լեւոն Թա-

(1) Հաննէ վարդապետի Պատմ. Ս. Երուսամի գրքին 110 երեսին մէջ տպագրական եւ

գաւառ շինել տուած է 'ի յիշատակ եղբօր իւրոյ Թորոսի՝ որ պատերազմի մէջ մեռաւ ընդդէմ Եգիպտացւոց, և նորա մարմինն եւս այստեղ փոխադրել տուաւ, որու գերեզմանը, կ'ըսէ Հաննէ՝ եկեղեցւոյ հիւսիսային անկիւնը կը գտնուի ։

Եկեղեցին առանց սիւնի է, ունի 15 մետր երկայնութիւն և 7 մետր լայնութիւն ։ Առանձին դասով բաժնուած է . աջակողմեան դասին մէջ Մկրտարան կայ, որու պատին մէջ

---

կամ գրչի սխալմամբ՝ փոխանակ ՉԼԵ (735) թուականն դրուելու՝ ՊԼԵ (835) թուականն դրուած է ։ Ինչպէս նաև որդի բառն փոխանակ եղբօր ։ Սխալմամբ կ'ըսենք որովհետև նոյն գրքի 91 և 270 երեսներուն մէջ գրուած են Լևոն Գ. Թագաւորին շինութեանց ճիշդ և ուղիղ թուականները՝ որ է ՉԼԵ (735) ։ Այն արձանագրութեան համեմատ՝ որ դրուած է 'ի Ս. Ցախոցք եկեղեցւոյ՝ ձախակողմեան կողքի սեան՝ դէպ 'ի հիւսիսակողմն նայող երեսին վերայ՝ Յովհաննու Աւետարանչի պատկերին տակը ։

Սոյն Լևոն Եգիպտացւոց Սուլթանին գերի ինկած ժամանակ յԱրտաւազդէմ ուխտի եկաւ . Վարդան Բաքրատ երես 225 ։

պատուհանաձեւ փոքրիկ տեղ մը կայ երկաթեայ փեղկով փակուած , որ ըստ աւանդութեան Լեւոն Գ.ի եղբօր Թորոսի գերեզմանն է կ՚ըսուի, և սորա տակ եղած խաչ-քարի վրայ հետեւեալ Յիշատակարանը կայ ։

ՅԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՏԷՐ ԴԱՒԻԹ ԱՐՀ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ԵՍ ՄԵՂԱՒՈՐ ՄԱՐՏԻՐՈՍ ԿԱՆԳՆԵՑԻ ԶԽԱՉՍ ԲԱՐԵԽԱՒՍ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ, ԻՆՁ ԵՒ ԾՆՈՂԱՑ ԻՄՈՑ ՍԱՐԳԻՍ ՔԱՀԱՆԱՅԻՆ ԵՒ ԽԱՆՈՒՄԻՆ ԵՒՍ ԱՌԱՒԵԼ ՅՈՎՀԱՆՆԷՍԻՆ, ՍԱՐԽԱՇԻՆ, ԵՒ ՄԻՐԱՆՇԻՆ. ԹՎԻՆ Ռ.Լ.Թ։

Այս Մկրտարանին քով դուռ մի կայ ուսկէ քանի մի աստիճանով պահարանը կ՚ելնուի , որ ունի մի սեղան յանուն սուրբ Կարապետի . Հոս պատերուն վրայ ագուցած բաւական հին՝ խաչ-քարերու վրայ փորագրուած Յիշատակարանք կան, յո-
յ ոմանք դժուար կը կարդացուին։
ագ սեղանն յանուն Ս. Թէոդոսի է, որոյ բեմին վրայ՝ Հարաւային

անկիւնը՝ աստիճանով վեր փոքրիկ մատուռ մի կայ յանուն Սուրբ Մերկերիոսի, իսկ դրսի գաւիթին մէջ սեղան մը կայ յանուն Ս. Թադէոսի և կուսին Սանդխտոյ։

Սոյն Եկեղեցւոյս մէջ 'ի տօնի Սուրբ Թէոդորոսի և Սուրբ Մերկերիոսի եւ ուրիշ քանի մի անգամ տարին Պատարագ կը մատուցուի։

Եկեղեցւոյս արեւմտեան դռնէն դուրս ելնելով և աջ դինէն քանի մի աստիճանով վեր դէպ 'ի աջակողմը՝ Աստուածընկալ Խաչը կ'երթուի. իսկ ձախ դին դէպ յառաջ երթալով և կրկին շեղելով ձախակողմը՝ նեղ ճանապարհէ մի դէպ 'ի սուրբ Թորոսի վերնադուռը կ'երթուի՝ ուսկէ ներս մտանք, այս դրան աջակողմը երկու խուց կայ, որ Հեթում Թագաւորի սենեակք կը կոչուին աւանդութեամբ։

Յառաջ գնալով եւ քանի մի աստիճաններէ վար՝ Գրիգորոյ Խաչէ րան աջեւէն կրկին քանի մի աստիճան վար իջնելով, ձախակողմ

գանէն դուրս Յորդանանէն մէջ կը գտնենք զմեզ, որու տակն է վանքին աղօրիքը, և ասոր կից՝ հին ախոռ բռնուածն որ շինուած են Պարոն-Տէր Գրիգոր Պատրիարքէ ՚ի թուին Հայոց ՌՂ (1090)։ իսկ ցորենատան արեւելակողմն եղած ներքին Թաղերն ՌՃՀԳ (1174) թուին և ցորենի ամբարանոցն ՌՃՀԶ (1177) թուին շինուած են Չղթայակիր Գրիգոր Պատրիարքի և Հաննէ վարդապետի ժամանակ։ Այս տեղ Աւագ-Սեղանի պատին ճիշդ ետեւը եղած ճանապարհի յատակն՝ եկեղեցւոյ խղատան տանիքն է, ուր գետնէն 2 կանգունի չափ բարձր՝ դէպ ՚ի արեւելք պատին երեսը զետեղուած կ՚երեւի մի փոքրիկ կլորակ ճերմակ մարմարեայ Խաչ-քար՝ առանց արձանագրի, զոր անցուդարձ ... ղ բարեպաշտ հաւատացեալք կը համբուրեն, աւանդութեամբ կ՚ըսեն թէ՝ Հեթում Թագաւորի գերեզմանն աստ է, սակայն այս աւան-

դութիւնն հաստատող գրաւոր ո՛եւ
է վկայութիւն մը չ'ունինք ։

Բայց պէտք է յիշել միայն թէ
Ս. Յակոբայ Աւագ - Սեղանի այս
պատն՝ վերուստ 'ի վայր՝ և Ս. Էջմի-
ածնի կամարներու հանդերձ սարքե-
րովը (որ Եղիազար կաթողիկոսէն ա-
ռաջ բաց գաւիթ էր) եղած չինու-
թեանց քարերն՝ թէ՛ չինութեամբ,
թէ՛ քարերու տաշուածքներով եւ
թէ՛ տեսակովը, բոլորովին յար եւ
նման են վերոյիշեալ Սուրբ Թորոս
Եկեղեցւոյ կից « Հեթում Թագաւորի
սենեակին » քաշուած երկու սենեակ-
ներու հիւսիսային երեսի պատի չի-
նութեանց, որովհետեւ ըստ աւան-
դութեան՝ կ'ըսուի թէ՝ այդ երկու
սենեակներն և Ս. Յակոբայ Աւագ
խորանի պատն դէպ 'ի արեւելք ընդ-
արձակել և չինել տուողն՝ եւ Պօղոս
ու Պետրոսի մատուռներն աւելցնող
ըը Հեթում Թագաւորն եղած է
Ս. Էջմիածնի եւ Ս. Ստեփաննոս
եկեղեցւոյ տաճարներու արեւմտեա

ծայրէն յայտնի կ՚երեւի այս հին և նոր շինութեանց կցուած տեղն ու տարբերութիւնը ։

Ինչպէս իրենց տեղը յիշեցինք նոյն բարեպաշտ թագաւորն եղած է նաեւ Ս. Յարութեան տաճարի Մնաւրէց կոչուած տեղւոյն մատուռը՝ և Ս. Աստուածածնի գերեզմանի ա-ռեւմտեան դրան կից դրսի Հայոց սեղանը շինել տուողն ։

Յիշեալ Հեթում թագաւորն՝ Լեւոն Գ.ի որդին է, որ Թաթարաց հետ Երուսաղէմը առաւ եւ մեծա-հանդէս տօն կատարեց Երուսաղէ-մայ մէջ, ինչպէս կը յիշատակուի Համթեցի Մինաս վարդապետի գը-րած «Համառօտ Պատմութիւն Թա-գաւորացն Հայոց և Հռովմայեցւոց» 52 և 160. Եւ «Հեթում պատմիչ» 47. 48 երեսներուն. Եւ յԱկանց ՝տպատի Գրիգոր վարդապետէ շա-ադրեալ «Պատմ. Թաթարաց» ա-ւն գրքին մէջ ։

Ցորենի ամբարանոցի ներքին

դրան արեւելեան կողմը բոլորակ խաչ–քար մը կայ, հետեւեալ արձանագրութեամբ՝

ԽԱՉՍ Է ՈՎԱԿԻՄԱ ԵՒ ԱՆՆԱՅԻ ՏԱՆԷՆ Է ՈՒՐ ԾՆԱՒ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

Այս խաչ–քարին եզերքը արձանագրութիւն մ՚ ալ կայ հետեւեալ կերպիւ՝

ԿԱՆԳՆԵՑԱՒ ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԳՐԻԳՈՐ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ՄԻԱԲԱՆԻՑ ՈՐ ՇԻՆԵԱՑ ՑՈՐԵՆԱՏՈՒՆՍ ԹՎԻՆ ՌՃՀԷ (1177) ԻՆ

Յովհաննավանքին հարաւակողմը շինուած է Նոր Զարդախ ըսուած փառաւոր յարկը, չորս գեղեցիկ սենեկով եւ առանձին Լիւանով, զոր Կիրակոս Պատրիարք շինել տուած է 1849ին։

Ճանապարհը շարունակելով Ս. Յակոբեայ պարսպին տակովը, ձախ կողմերնիս ձգելով Հաննէ և Իզմիր Բ–ճէրը, դէպ ՚ի վեր դին կ՚ելնենք վա-քին արտաքին մեծ դաւիթը, և դ-մացնիս կ՚երեւի խնձաձեւ քար

չէն և երկաթի ճամբով սանդուխ մի, ուր կան երկու սենեակք, որոնք Պաղոս պատրիարքի կառավարչութեան ժամանակ շինուեցան ։

Այս սանդուղքին հարաւակողմը կ՚իյնայ Հոգեգալուստը, զոր արդէն եկած ժամանակ տեսանք ։ Հոգեգալստեան աջ կողմը երկաթի վանդակներով պատսպարուած լայն արձակ տեղ մի կ՚երեւի, զոր Եղիազար կաթողիկոսն շինել տուած է ՌՃՀԴ (1124) թուին Հայոց՝ հանդերձ վրայի թաղերով, այս տեղս հին ժամանակ ախոռ էր, որ յետոյ մէկ մասն հիւանոց եղաւ, և մէկ մեծ մասն ալ փայտատուն, զոր 1866 ին Ամենապատիւ Եսայի Պատրիարքը նորոգելով՝ հոս փոխադրեց Տպարանը ։ Հինգ մասի բաժնուած է, Ա. մասն է գրաշարից տեղը, Բ. տպելու գործարա-
, Գ. կազմարանը, Դ. ձուլարանը
վիմագրատունը և Ե. ընդարձակ
առաջարանը. սոյն վերջին երկու մարը շինուած են ՚ի Յիշատակ Թա-

լսացի մեծապատիւ Մահտեսի Յակոմբ Էֆէնտիի Աշըգեան՝ որ յԱղէքսանդրիա ։ Յիշեալ ընդարձակ յարկին վրան՝ դէպ 'ի գաւիթին վրայ է՝ Պէքեար Բողը, եւ անոր եաեւի կողմը՝ Թոխատ Բողը, որու պատուհանները Տպարանի պարտիզին վրայ կը նային, զոր առաջ Պատրիարքաց յատկացեալ պարտէզ էր, եւ զոր Հաննէ Ներսէ պարտէզ կը կոչէ ։ Տպարանի մուտքը սենեակ մի կայ ուր տեղ կը ծախուին տպուած բոլոր գիրքերը ։

Սուրբ Յակովբայ վանուց միւս մասերն ու Թաղերը զանց կ՚ընեմք այս տեղ ստորագրել, որովհետեւ ուխտաւորք ինքնին կրնան շրջագայել և տեղեկութիւններ ստանալ։ Բայց չեմք կրնար առանց յիշատակութեան թողուլ արդի հոյակապ Պատրիարքարանը՝ զոր 'ի հիմանէ շինել տուաւ Զմիւռնիացի Յովհաննէս Արքազան Պատրիարքը 1853 ին Ասոր Ճանապարհն Սուրբ Յակով

քայ գաւթին մէջէն է, ուր կ'ե-
րեւին քարեայ սանդուխներ հա-
րաւային պատին մէջ արեւմտեան
անկիւնը, ուրկէ կ'ելնուի նախ սուրբ
Մինասայ Բուրգը որ Պօղոս Պատրի-
արքի կառավարչութեան ժամանակ
շինուած է : Սանդուխներէն վեր
ելնելով՝ դիմացը կ'երեւի Պատրի-
արքարանին մեծ դուռը վրան Ցի-
շատակարանով : Այս դռնէն ներս
մտնելով և քանի մի ոտք մարմարեայ
սանդուխներէ վեր ելնելով՝ դիմա-
ցընիս ընդարձակ սենեակ մի կայ
փայտեայ յարկով, որ այժմ Խոր-
հրդարան է Տնօրէն խորհրդոյն,
աջ կողմերնիս փառաւոր դուռ մի է,
ուրկէ կը մտնուի ընդարձակ սրահը,
որու երկայնութիւնն 21 մեդր է և
լայնութիւնը 7 1/2, մէջտեղը գեղե-
ցիկ գմբէթով :

Սրահը զարդարուած է Թուրքիոյ
եհապետի, և Անգղիոյ, Աւստրի-
, Գերմանիոյ, Ռուսիոյ Կայսերաց
Կայսրուհեաց արքայանուէր մե-

ծաղկի կենդանագիրներով, ինչպէս նաեւ Տ. Ցակոբոս. Տ. Ցովհաննէս և ներկայ Տ. Եսայի Սրբազան Պատրիարքայ՝ Լազարեանց իշխաններու՝ և այլ զանազան պատկերներով։

Աջ ու ձախ կողմի դէմ առ դէմ եղած երկու սենեակներն Վեհարան են, որոց մէջ կայ պահարան մի և գրքատուն մի՝ ձեռագիր և տպագիր գրեանց։ Աջ կողմի սենեկին պատուհաններըն սուրբ Ցակոբայ վանուց արտաքին հրապարակին և աւագ դրան վրայ կը նային, նոյն կարգի երկրորդ դուռն ալ դարձեալ սենեակ մի է որ պարտիզին վրայ կը նայի։ Ձախ կողմի վեհարանին քովի երկրորդ դռնէն, ուր տեղ փոքր սենեակ մի եւս կայ իբր պահարան, Ճանապարհ ունի նաեւ տորոքին յարկը իջնելու, որ քանի մի մասերու բաժնուած է, հոն է նա բաղանիքը։ Վարի յարկը եր-դուռ ունի, մին ՚ի պարտէզ ելլու և երկուսն ՚ի փողոց, որոնց մ

կամարին տակ կը բացուի , ըստ ո-
րում յիշեալ Պատրիարքարանը շի-
նուած է մէկ մասը վանքին մէջ եւ
միւս մասը պարտիզին վրայ , որոնց
մէջ տեղն է փողոց , և փողոցին վրայ
դարձած է կամարը , որով երկու
մասերը իրարու հետ կը միանայ :

Հրապարակին վրայ վանուց դրան
առջեւի պարտիզին պարիսպը Ամեն.
Տ. Եսայի Ս. Պատրիարքը ուղիղ գծի
վրայ նոր կանգնել տալով, 5 խանութ
ալ շինել տուաւ ոմանց միաբանից
ծախիւքը , եւ հիւսիսային հին կա-
մարին տակն ալ , որու վրայ է Սե-
ղանատունը եւ Գարպասատունը ,
ուրիշ երկու փոքր խանութ և վեց
մեծ ու ընդարձակ շտեմարաններ
շինել տուաւ , որոնց վերջին կամա-
քաքերնին կից եղածն է վանքին Դե-
ղարանը . նոյնպէս հին գինետունը
յատատունի փոխելով՝ երկու դուռ
նալ տուաւ , մին յիշեալ կամա-
ն տակ՝ և միւսն Դեղարանին գի-
ցի փողոցին մէջ :

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## Ի ՎԱՆՍ ՍՈՒՐԲ ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏԻ ԵՒ ՔԱՂԱՔԻՍ ՄԷՋ ԳՏՆՈՒԱԾ ՈՒՐԻՇ ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵՐԸ

Սուրբ Յակովբայ մեծ դաւթին դէպ 'ի հարաւակողմի մէկ անկիւնը երկու կամար կ'երեւին, առանց վրայի սենեականերն Եաղուպ աղայի Զարտախն է որ այժմ Պզտիկ Զարգար կ'ըսուի, ձախ կողմի կիսակամարին տակէն Պահճայը Բաղը կ'երթուի, զոր Կիրակոս պատրիարքն շինել տուած է 1848ին՝ եւ որուն հիմերը կառուցուած էին Զաքարիա Պատրիարքի ժամանակ. այս Թաղի դրան դիմացի ճանապարհէն կ'երթուի կրատունը (Քիրէճհանէ) որ բաւական ընդարձակ շինուածք մ'է, ուր կիր կը պահուի վանքին շինութեանց համար. իսկ աջ կողմի կամարին տակ երկաթեայ փոքր դուռ մի կը տեսնուի, այ դռնէն ելնելով կ'երթուի Սուրբ Հրե

պողպատէ վանքը։ Բայց մենք դեռ հոն չգնացած, ճանապարհին վրայ երկու նոր շէնքերուն այցելութիւն ըրինք։

Յիշեալ երկաթի դռնէն դուրս նեղ շաւիղն առաջ երթալով դիմացնիս անմիջապէս նոր շէնք մի կ'ելնէ թեղօշի ծառերով շրջապատուած. վրայի յիշատակարանը մեզ կ'իմացընէ Զամ-Բաղ ըլլալն, որ Զմիւռնիացի Յովհաննէս պատրիարքի օրով շինուեցաւ 1852ին, եւ թէպէտ այն ժամանակ իւր ուսումնական նպատակին չծառայեց, իսկ հիմայ ներկայ Արքազան Պատրիարքին տնօրինութեամբը ձեմարանին մէկ մասը կը կազմէ, և ժառանգաւոր աշակերտաց հանգստարան է, կրկնայարկ է եւ կը պարունակէ 45 սենեակ. զատ են ննջարանները ու դասարանները, սեղանատունն և այլն։

Ասոր արեւելեան կողմի փառաւոր ու հոյակապ շէնքն է քուն մարան կոչուածը, որուն ձեւը շատ

նմանութիւն ունի կ'ըսեն Գաղղիա-
ցիք Փարիզու Սորպոնին ։ Տասը մար-
մարեայ լայնարձակ աստիճաններէ
վեր կ'ելնուի ։ Ճեմարանի ներքին
ձեւն է խաչաձեւ , չորս անկիւնը
չորս փառաւոր սենեակներ բռնած
են , եւ կեդրոնը գմբէթ մի ունի .
երեք թեւերուն մէջ , դէպ 'ի ճա-
կատը երեքական ընդարձակ պատու-
հաններ և երկու կողմերը չորս չորս
դարաններ կան ապակեփեղկերով ,
որոնց մէջ կը պարունակին հնու-
թիւնները , իւրաքանչիւր ըստ իւր
տեսակին կարգաւ զետեղուած դա-
րաններուն մէջ . յիշեալ հնութեանց
եւ թանկագին նիւթոց մէկ մասը
Հնդկաստանի Ազգային առատա-
ձեռնութեան շնորհքն է , զոր Հընդ-
կաստանի նուիրակ Գեր . Ներսէս
Ծայրագոյն վարդապետը՝ այժմ Ե-
պիսկոպոս՝ հետը բերաւ 1870ին
Ճեմարանէն դուրս արտաքին մե
հրապարակը , ճանապարհ է դէ
'ի Ս . Հրեշտակապետի վանքն երթալու

և տախտակեայ միափեղկ դռնէ մի անցնելով անել փողոցի մէջ, և դիմացը երկաթեայ փոքր ու ցած դուռ մի կայ, որ է յիշեալ վանքին դուռը, փողոցին հարաւային ծայրը գտնըւած միափեղկ դռնէ 'ի զատ ուրիշ փողոցադուռ մի կայ տախտակեայ Նորաշէն, որ դէպ 'ի Փրկչադուռը (1) կը հանէ ։ Վանքին դռնէն ներս մըտնելով, դէպ 'ի աջ կողմը բաց դուռ մի կայ որ եկեղեցին կը հանէ՝ ձախ կողմին վըայ ։ Երկու մասի բաժնըւած է, առաջինը կանանց կայնելու տեղն է, ուր կայ պատարագամատոյց սեղան մի Չարչարանաց Տեառըն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ մկրտարան մի գեղեցիկ՝ յիշատակ Տաշճի-պաշի մահտեսի Վարդան Աղայի ։ Երկրորդ մասն է բուն տաճարը երեք խորանաւ, նուիրեալ անուն սրբոց Հրեշտակապետաց,

(1) Փրկչադըրան քով պարսպին ներքին կողմին Աւքիլեանոյ մը կայ, որ այժմ փոխադրուած է [illegible] գալով Յովսէփ—Հայրին քովերը ։

ձախակողմեան դաշտին մէջն է աւան-
դատունը, ուր 1725ին Գրիգոր
Շղթայակիր Պատրիարքը տեղը մեծ-
ցնելով սեղան մի կանգնեց յա-
նուն Հռիփսիմէ կուսին: Տաճարին
հիւսիսակողմն արեւմտեան անկիւ-
նը պատին մէջ ուրիշ սեղան մի կայ
Գլխադրի մատրան ձեւով, որ է
Քերովբէ ատաղձին քանդակը: Վասն զի
ըստ պատմութեան Ս. Աւետարանի,
նոյն տեղը Աննա քահանայապետի
տունն ըլլալով: Տէրն մեր Յիսուս
Քրիստոսը իւր մատնութենէ յետոյ
Աղբիւսաց դռնէն (Պապ-ըլ-Մուղարպէ)
ներս մտցնելով, ուղղակի բերին
նախ յիշեալ քահանայապետին տու-
նը, և մինչեւ որ նորա ատեանն հա-
նեն, գաւիթը Ձիթենի ծառի մի կապե-
ցին, և հոն ապտակ մի կերաւ քահա-
նայապետին ծառայէն. Յովհ. ԺԸ. 22:
Խանութին կից է գրեթէ դրան կողմէ
Ձիթենիին տեղը, որու արմատը դե-
կը մնայ և հիմակ նորա շառաւիղնե
րէն մեծցած ծառացած են, և այ

պատճառաւ Արարացիք Վանքին Տէր Քէլ-Չէյլոնէ՝ այսինքն Վանք Չիթենւոյ՝ կը կոչեն։ Չիթենիին քով քանի մի խոշոր քարեր եւս կը տեսնուին, որ Աննայի ժամանակէն մնացած են, յորոց մէկը՝ որ բերանի մէջ բացուած է Ոչխաննոյն քար կը կոչուի. Դան. ԺԹ. 20. բայց այլք աւելի հաւանական կը համարեն պատուեալ քարերէն լինելն. Մատթ. Իէ. 51։

Ս. Հրեշտակապետի եկեղեցւոյ տեղւոյն համար աւանդութիւն մը կայ որ կ՚ըսուի թէ՝ Դաւիթ Մարգարէն այս տեղէն տեսաւ Յեբուսացի Որնային կալին քովը՝ կոտորած ընող Աստուծոյ Հրեշտակը, որ երկրին ու երկինքին մէջ տեղ կայնած ձեռքի սուրն Երուսաղէմի վրայ երկնցուցած էր, Դաւիթ ու ծերերը քուրձեր հագած՝ երեսնուն վրայ ինկան (1). Բ. Թագ. ԻԴ. 16, 17. և Ա. Մնաց.
. 15, 16։

---

(1) Այս մասին 1835 թուականին յԵրուսաղէմ տպուած Գողգոթայ Տետրակին 26 երեսին մէջ

Այս Եկեղեցւոյս գոյութիւնը ժամանակակից է սուրբ Տեղեաց շինութեանը. ինչպէս կայիափայի տունը (Ս. Փրկիչ), նոյնպէս և այս տեղս անյիշատակ ժամանակէ 'ի վեր Հայոց սեփականած է, և ասոնց հիմնադրութիւնը Աբգարու կնոջ Հեղինէ Թագուհիէն կը կարծուի, որ առաջին հիմնադիր է սուրբ Տեղեաց. և որովհետեւ Տիտոսի ժամանակ Սիօնի վերայ կառուցեալ շէնքերուն մէկ մասը կանգուն մնացին, այս տեղ-

---

գտնուած հեռուեալ Տաճկերէն ոտանաւորն եւս բնա կը գտնենք։

Հրեշտակպարեստ քիլլիսէսի
Իմանըն իւք ըընտան եէրի,
Գու սուր օլ Աննանըն պէյթի
Քի օլ վագըթ սէր քեահինուի։
Գունտէ տիր Ջէյթուն սէճէրի
Քի Թէնլէ պաղլանըր Գարի,
Թէրքի տիւնեա կըզ վէ գարի
Անտէ եափինիշ մէգանի։
Տավուտ անտէն Մէլայիքի
Կէօրտիւ տէնիր գաղէպ վագթի,
Օլ քի գըրարտի խնամնի
Աղըմ խըվֆիլէ Թէօվպէ տէտի։

տանքս եւս այն ժամանակէն 'ի վեր Թէ յայտնի եւ Թէ գաղտուկ կըպահպանուէին Հայ կրօնաւորաց եւ բարեպաշտ առանձնացելոց ձեռօք , մինչեւ յերկրորդ Հեղինէ՝ մայրն Մեծին Կոստանդիանոսի . այս կարգին մէջ է նաեւ Սուրբ Յակոբայ եկեղեցին ։

Սուրբ Հրեշտակապետի վանուց մէջ Կիլիկիոյ Թագաւորք եւս ըստ իւրեանց կարգի նորոգութիւններ ըրած են , ինչպէս Լեւոն Գ. Թագաւոր Հայոց ՉԼԵ (1286) Թուականին (1) պարիսպը շինել տուած է , ըստ Յիշատակարանին գրեալ սուրբ Յակոբայ Եկեղեցւոյն մոյթին վրայ ։ Վերջին անգամի շինութիւններ եւ նորոգութիւններ եղած են Գրիգոր Շղթայակիր Հայրապետին օրով , եւ 1848 ին Կիրակոս Պատրիարք Աւագ-Խորանին խաչկալն ոսկեզօծել տըւաւ ։

(1) Նոյն է սա որ սուրբ Թէոդորոսի եկեղեցւոյ եւս շինեց , ինչպէս վերը պատմեցինք ։

Սոյն վանուցս մէջ պատսպարուեցան ժամանակ մը Լատին կրօնաւորք Ս. Սիոնի վանքէն վռնտուելէն յետոյ, մինչեւ որ Բ. Դրան հաճութեամբ հիմակուան իրենց Ս. Փրկիչ ըսուած վանքը ստացան, որ յառաջագոյն Վրաց վանք էր Սուրբ Յովհաննու անուամբ։

Սուրբ Հրեշտակապետի վանուց մէջ կը բնակին Մայրապետք եւ յաշխարհէ մեկուսացեալ հաւատաւոր կանայք, որոնք Ս. Յակոբեայ միաբանից պիտոյիցը կը ծառայեն եւ խնամք կը տանին նոցա մաքրաբար. ունին իւրեանց առանձին գլխաւոր մի՝ իրենց մէջէն ընտրուած, որ Տնտես կ՚անուանի։ Դարձեալ Եկեղեցին Տեառն վարդապետի մի ձեռօք կը կառավարուի, եւ հոս կը մատակարարուի քաղաքի Հայ ժողովրդոց հոգեւոր պէտքերը։

Այս վանքս երկու դուռ ուն
բաց անկէ ուսկէ մտանք, երկրո
դուռն է հիւսիսակողմը՝ նոյնպ

երկաթեայ և ցած, ու՛ քաղաքի ժո-
ղովրդոց թաղերը կը հանէ, ուրիշ
երրորդ դռնէ մի անցնելէ յետոյ։
Այս երկու վերջին դռներուն մէջ-
տեղի անցքին մէջ աստիճաններով
ելնելու յարկ մի կը տեսնուի, որ
Քաղաքացի օրիորդաց Դպրոցն է,
1861ին հիմնաքկեալ ծախիւք Նախ-
ջեւանցի բարեպաշտ Շուլղովեան
մահտեսի Կարապետ Աղայի. 40ի
չափ աշակերտուհիք կը գտնուին.
որոնք բաց 'ի տեսակ տեսակ ասղ-
նէգործութենէ՝ կ'ուսանին իրենց
մայրենի լեզուին քերականութիւնը,
քրիստոնէական վարդապետութիւն
եւ այլն։

Քաղաքիս մէջ գտնուած և պատ-
մական նշանակութիւն ունեցող տե-
ղերն են հետեւեալները.

Ա. Առաքելոց վանքը։ Սուրբ Հրեշ-
տակապետի վանուց երկրորդ արտա-
ն դռնէն դուրս ուղղակի երթա-
լ և աջակողմը փողոց մի թողլով,
'րորդ անել փողոց մի կը հանդի-

պի նոյն կողմը, ուր տեղ է Յունաց յա-
նուն Ս. Գէորգայ փոքրիկ վանքը, որ
նոր հաստատութիւն է և չունի ոչ
պատմական և ոչ տեղագրական կա-
րեւորութիւն մի։ Մենք նորա կից
միւս փողոցն ալ աջ դինիս թողլով
եւ դէպ 'ի ձախ կողմը ծռուելով՝
Ս. Յակովբայ պարսպին պատին տա-
կով շարունակենք ճամբանիս, ուր
քառուղի փողոցաբերան մի կը հան-
դիպի. դարձեալ շարունակելով դէպ
'ի հիւսիսային փողոցին մէջ և երկու
կամարի տակէն անցնելով և յետոյ
դէպ 'ի արեւելք ծռուելով աջ կող-
մերնիս անկիւնացեալ տեղը երկա-
թեայ միջակ դուռ մի կ'ելնէ, այս
է Ասորւոց վանքը։ Այս տեղ Յովհան-
նու՝ Մարկոս կոչեցեալի մօրը տունն
էր, ուր Պետրոս առաքեալ բանտէն
Հրեշտակի ձեռօք ելնելով և պարըս-
պագռնէն անցնելով եկաւ դուռը
զարկաւ, երբ հաւատացեալք ներ
սը ժողովուած իրեն համար աղօթ
կ'ընէին, եւ աղախին մի իմանալու

դրան զարնելը եւ ճանչնալով Պետ-րոսի ձայնը՝ ուրախութենէն ներս վազեց լուր տալու, որոնք թէպէտ չէին հաւատար, բայց երբ դուռը իրարու վրայ կը զարնուէր, բացին ու տեսնելով զՊետրոս զարմացան. Գործ. ԺԲ. 1—19։

Այն եկեղեցւոյս չինութիւնն ալ թագաւորական է, նուիրեալ յա-նուն Սուրբ Աստուածածնի։ Գրի-գոր Շղթայակրի ժամանակ Հայոց միաբանութեան ձեռքն էր սոյն վան-քը պարտուց փոխարէն գրաւ առ-նուած, ուրիշ ժամանակներ եւս Ասորիք Հայոց հետեւակ կամ նոցա պաշտպանութեան ներքեւ լինելով, իրենցմէ միաբան չգտնուած ատեն Հայք կը հոգային եկեղեցւոյն։ 1727ին Գրիգոր Հայրապետ Շղ-թայակիր նորոգելով սպիտակացոյց ոյն, եւ 1831 թուականին Պօղոս պատրիարքի կառավարչութեան ժա-մանակ կրկին անգամ նորոգուելով սպիտակցաւ Հայոց ձեռօք որ մին-

չեւ մեր օրերը տակաւին Հայագիր Ցիշատակարաններ կային, իսկ իւրեանց վերջին Ապտ—ըլ—Նուր եւ Գէորգ Եպիսկոպոսներն հետզհետէ զանոնք եղծանելով Ասորերէն գրել տուին, եւ ուրիշ նորոգութիւններ եւս ըրին։ Երկու կամ երեք վիմաքան և եմ ունին, իսկ ժողովուրդ միայն մէկ տնուոր։

Բ. Երկաթի դուռը։ Ասորւոց վանքէն դէպ 'ի հիւսիս ուղղելով, ձախ կողմին վրայ Անգղիացւոց հիւանդանոցը կայ, Հրէից ազգին համար հաստատուած, որոնց դարձին համար մեծ հոգ ու խնամք կը տարուի քաւական ժամանակէ 'ի վեր։ Ցառաջ գնալով կամարի մի տակէն մինչեւ ծայրը, անկիւնագլուխը հին ու քանդակածոյ սիւնի մի կտոր կը տեսնուի, Հաննէ վարդապետ այս տեղս կը դնէ քաղաքին Երկաթի դուռը, ուսկէ Տիրոջն Հրեշտակը Պետրոս առաքեալն անցընելով քաղաքի մէջ մոցուց ու ինքն աներեւոյթ ե

ղաւ, եւ Պետրոս գնաց Մարկոսի մօրը տունը, ինչպէս քիչ մը վերը պատմեցինք ։ Իսկ Լատին պատմագիրք այս երկաթի դրան տեղը կը նշանակեն աջակողմեան փողոցին ծայրը գիմացի պատին երեսը տեսնուած հին ու խոշոր քարերով շինուած կամարը, որ հիմակ գետինը բարձրանալով՝ կամարին վերի մասը միայն կ'երեւի ։

Տասն և չորս տարի յառաջ 1870ին Անգղիական հնախուզական ընկերութեան կողմէ գիտնական ճարտարապետս մի ուրիշ շատ տեղերէ 'ի զատ՝ այս տեղս ալ փորելով, հին շէնքեր և խցի նման յարկեր գտաւանկը ։

Գ. Ս. Յարութեան տաճարէ նախադրութեան։
Անկէ դէպ 'ի հիւսիսային փողոցն ուղղելով և մասխաճառաց կամ փեռեզակաց շուկայէն անցնելով ուղղակի կ'ելնենք Մութ շուկային մէջ, ուր Երկրորդ այցելութեան ժամանակ տեսանք Սուրբ Յարութեան

Տաճարի Նախադրան տեղը, որոյ 'ի նշան կանգուն կը մնան երկու հին ու մաշուած սիւներ : Աստիճաններէն վեր ելած ժամանակնիս, որ միշտ դէպ 'ի այլ դին շեղելով կ'ելնուի, ձախ դին սպառով հիւսուած գետին մի կ'երևի, այս տեղս 1860ին Ռուսք Պլատոնց փախճանեալ քահանայէն գնեցին եւ սակայն արդէ Պլատոնի եպիսկոպոսը կ'ուզէ զայն ետ առնուլ իբր ազգային ստացուածք : Յիշեալ գետնոյն մէջ կ'երևուի Հրէից Թագաւորութեան ժամանակի քաղաքին երկրորդ պարսպէն մնացեալ աւերակ մասեր սարսափելի մեծ քարերով շինուած :

Դ. Պղպատոյ վանք, Ռոկէհոր և Հայոցէրէց վանք : Գրեթէ 100 մեդր առաջ երթալով անել ճանապարհին մէջ, այ դին կանգուն սիւն մի կայ, որ Խաչի ճանապարհին նշանակեալ մէկ տեղն է : Այս տեղ երեք դուռ կ'երեւին, դէպ 'ի ճակատն եղած մեծ դուռը Պղպատոյ վանքինն է, զոր 1870ի

Նորոգեցին , եւ բաց 'ի եկեղեցիէն գեղեցիկ ու բարձրադիր Առաջնորդարան մի եւս կառուցին ։ Աջ կողմի դռնէն Ոսկէհոր կ'իջնուի , զոր Լատինք սուրբ Հեղինէի գանձատունը կը կոչեն , և նա շինել տըւած է ։ Ոսկէհոր կամ գանձատուն կոչուելուն պատճառը առասպելական կը համարուի ։ Լատինք կ'ըսեն թէ յիշեալ Թագուհին իւր թքովը հողը քարացընելով ոսկի կը գոյացընէր , և մշակները կը վարձատրէր առատօրէն ։ Ձախ կողմի դուռը Հայերէնց վանքն է . եւ անմիջապէս տեսնուած բակի նման քարայատակը Հայոց Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ տանիքն է , որու մէջ տեղը բարձրացած է յիշեալ եկեղեցւոյն գմբէթը հանդերձ պատուհանօք ։ Հապէշից վանքն աւերակաց կոյտ մի է , եւ այանի ցոյց կուտայ բնակողաց եղճութիւնը , որոնց օրապահիկ աւուրն ու հացն անգամ Հայոց միաբանութիւնը կը հոգայ ։

Այն վանքը Սուրբ Յարութեան տաճարի արեւելակողմը կ'իյնայ, ուրկեց լաւ կ'երեւի հին տաճարին մասերը, որոնց վրայ խնայած է ժամանակը իւր աւերիչ ձեռքն երկընցընել ։ Չորրորդ դարուն այս վանքիս տեղն ալ Սուրբ Յարութեան Տաճարին մէջը պարունակուած էր ։ Գրեմբէլթին և աւերակներուն մէջ տեղը Հապէշը ծիլթենի մի ցոյց կուտան, քուրջերու կտորներով զարդարուած, որու համար կ'ըսեն թէ՝ Հայր Աբրահամ այս տեղ ուզեց զոհել իւր միածին որդին ։

Ե. Գաղատոնի վանք ։ Անկէ կրկին ետ դառնալով Տաճարին Նախադրուռն ըսած տեղերնիս, սիւներուն քովէն վար իջնելով և Մութ շուկային մէջ ուղղուելով աջ կողմերնիս եղած աղջի փողոցին՝ մէջ մտնենք, որոյ ուղղութիւնն է արեւմուտքէն դէպ 'ի յարեւելք ։ Ներս մտած ժամանակ աջ թեւնուս վրայի առաջին շէնքը հին

կեղեցի մի է, որոյ անունը ծանօթ չէ, բայց անտարակոյս կը թուի մեզ որ Գաղատիոյ վանք ըսածն է այս, կառուցեալ յանուն սուրբ Հռիփսիմէի եւ Գայիանէի, որ Հայոց ունեցած 70 վանուց 21րդն էր, որոյ համար գրուած է թէ Սուրբ Յարութեան դրան քովն է։

Զ. Դշխոյն Հեղինէի խաչգիններուն տեղը։ Յիշեալ փողոցէն ուղղակի զառ'ի վայր երթալով աջ կողմերնիս մեծկակ դուռ մի կայ, որ ըստ ռամկաց Դշխոյն Հեղինէի խաչգիններուն տեղը կ'ըսուի, և ըստ Լատինաց՝ Նորա հիւրանոցը կը կոչուի, իսկ Արաբացիք Թէյվէ-էլ-Խաւէյի կ'անուանեն. ժամանակ մի հիւանդանոց էր, բայց հիմակ երբեմն միայն աղքատաց համար պղուր կ'եփեն, ուր դեռ հին ժամանակէ մնացած երեք խալկին ն ահագին մեծութեամբ, որ յաուն Դշխոյն Հեղինէի կը յիշուին. Եւ րովհետեւ հաւաստագոյն կարծեօք յն հաստատութիւնն Աբգարու

կնոջ Հեղինէի պալատին տեղւոյն վրայ է, որ Ակռայ լերան վրայ կը գտնուէր, և նա էր որ սովու ժամանակ աղքատաց համար ցորեն բերել տալով բաժնեց ու խնամք տարաւ, 'ի յիշատակ սոյն մարդասիրական գործոյն մնացած է այնքան դարերէ 'ի վեր իւր պալատին մէջ սոյն անմնջելի նշանը եւ ճշմարիտ քրիստոնէութեան օրինակը։

Շատ դարերէ յետոյ Ռոքսելան Սուլթանուհին որ Սուլթան Սէլիմի որդւոյն Սուլթան Սիւլէյմանի սիրուհին էր, Նորոգել տուած է այս մարդասիրական հաստատութիւնն, և Սիւլէյման անոր մշտնջենաւորութեան համար Պէյթճէլէ գիւղի Բեթլեհէմի և Սէլովամայ եկամուտները նոյն տեղւոյն շնորհած էր, թէպէտ մինչեւ ցայսօր՝ բաւական վագֆներ ունի, բայց աղքատներն կերակրելու համար բաւական խնամք չտարուիր։

Թէ սոյն Թէքքէի դուռը եւ Թ.

փողոցին նոյն կարգին վրայ գտնուած
քանի մի շէնքերը որ հիմակ էֆէն-
տիներու տուներ են, եւ որ այժմ
տեղական կառավարութեան ապա-
րանն ևս այս կարգի շէնքերուն մէջն
է, բաւական հնութիւններ ունին,
շատ տներուն ճակատը չթաքարով
յօրինուած են, եւ բաւական ճար-
տարապետական են, որոնք մինչեւ
Խաչակրաց ժամանակ կը հասնին։

Է. Սուլէտարինի դուռը և Այն-Սէպիլ։
Դշխոյն Հեղինէի հիւրանոցէն կամ
Թէքիէէն ելնելով եւ դէպ 'ի արե-
ւելք ճանապարհը շարունակելով
կը հասնինք քառուղի փողոցի բերա-
նը, որուն ձախակողմեան հիւսի-
սային արեւմտեան անկիւնը՝ հնա-
շէն Մեդրեսէ մի կայ Տաճկաց, որուն
համար կ'ըսուի թէ՝ Մատթէոս Ա-
ւետարանչի տունն էր, և հոս գրեց
Ը. Աւետարանը Եբրայեցի լեզուաւ։
Այս չորեքուղի ճանապարհին արե-
ւելեան հիւսիսակողմի անկիւնն ալ
ն Սէպիլ մի կայ. արեւելեան ճա-

Ճանապարհը ուղղակի կը տանի Սողո-
մոնեան Տաճարի Պապ-էլ-Հատիտ ը-
սուած դուռը, եւ մեծ ուղին՝ որ
Դամասկոսի դրան ճանապարհն է և
որ հիւսիսէն դէպ 'ի հարաւ կ'եր-
կարի Յովսեփոսի լայն հեղեղատ կոչած
լեռանցամէջն է. դէպ 'ի աջ դին
ուղղուելով և ճանապարհին ծայրը
հասած ժամանակնիս բաւական դա-
րուվեր է, և հեղեղատին ծայրն է
որ Մակաբայեցի Իշխանաց հրամա-
նաւ պարսպի աւերակներով լեցուե-
լով Ակրա լեռը Սողոմոնի տաճարին
հետ միացաւ։

Այս ճանապարհին մէջ՝ ձախ
կողմ՝ հին շուկայ մի կ'երեւի, որ
ատ է Սողոմոնեան Տաճարի Պապ-
էլ-սուկ-ըլ-խաթթանին (դուռ բամբա-
կի շուկայի) ըսուած դուռն, և այն
շուկային մէջ՝ Տաճարի դրան մօտ
աջակողմն է Ճիֆթէ կոչուած բաղնիքն.
շուկայէն դուրս ձախ կողմն է Հա-
մամ-ըլ-էյն (ակի բաղնիք) որ մեր
ջինք կը կոչեն Նոր բաղնիք, ո

բաղնիքէն քիչ մը անդին դէպ 'ի Հա-
բաւ Սէպիլ մի կայ, որ յիշեալ բաղ-
նիքի Ալի Բաղնի* կոչուիլն այս Սէպիլէ
անուանէն առնուած է ։

Յիշեալ Ճանապարհէն դուրս ել-
նելնուս ձախ դին պզտիկ տուն մի
կ'երեւի դրսի կողմէն քանդակուած,
որ Սալահէտտինի թիւրպէ կը կոչուի, ըստ
որում Նա եղեւ հիմնադիր, և այսօր
ալ դարձեալ դպրոց է Մահմետա-
կանաց ։

Այս տնէն 20 մեդր աւելի ներս՝
գեղեցիկ աղբիւր մի կը տեսնուի
Այն-Սէպիլ անուամբ. աստ ջուրը
Աղբիւր կնքեալէն կուգայ, որ նախ
Տաճարը գալով կը թափի եւ յետոյ
անկէ կը բաժնուի ։

Այս աղբիւրին հարաւային կողմն
է Դատաստանատունը (Մահքէմէն) ։
Այս տեղ քարի մէջ փորուած սըն-
տուկի ձեւով տապան մի կար (1),

(1) Ճիշդ ասոր նման արկղաձեւ և քարի մէջ փորուած տապան մի կար Ս. Յակոբայ մեծ սեթի սառնիճին քով դրուած, որ իբրեւ [illegible]

Թագաւորաց գերեզմաններէն բե-րուած, որ 1869ին Գաղղիոյ Հիւպա-տոսին խնդրանօք Փարիզու կայսե-րական Թանգարանը խրկուեցաւ ։ Արտաքին բակին մէջ միւսինէ յօ-րինուած գեղեցիկ աղբիւր մի կը տեսնուի, որու ջուրը նոյնպէս Աղ-բիւր կնքեալէն կուգայ ։

Այն—Սէպիլէ յարեւելակողմը եւ կից անոր՝ Սողոմոնեան Տաճարին Պապ—ըլ—Սինսիլէ կոչուած դուռն է ։

Այն—Սէպիլէն 200 մեդր եւ դառ-նալով նոյն փողոցին մէջ, երկու տուն կ'երեւին, մին աջ՝ և միւսն ձախ դին, որոնք թէպէտեւ խլխլեալ, այսու ամենայնիւ նշանաւոր գեղեց-կութիւն մի ունին ։ Առաջին տու-նը, որու դուռը չթաքարով յօրի-նուած է, Խաչակրաց ժամանակ դըպ-

---

ըսախ կը գործածուէր ։ եւ ապա 1866 Թուրք տպարանը փոխադրուելով, հոն ալ երբեմն ձու-ըսախ գործածուեցաւ, սակայն 1869ին Հնութեան Թանգարանը փոխադրուած է ներկայ Եսայի Լ Պատրիարք Հօր հրամանաւ ։

բոց էր, այժմ Սօլիմէ կը կոչուի, և Էսատ էֆէնտի Մուֆթի-էլ-Շաֆիհիէ անուն անձինն է ։ Երկրորդը՝ որ նոյնպէս խաչակրաց ժամանակ դպրոց էր օրիորդաց, այսօր դարձեալ վարժարան է մահմետական աղջկանց և Շէյխ Իսմայէլ Տանէայիին է, և Էլ-Ածէմիէ կը կոչուի, յանուն այն պարսկուհւոյն որ Սալահէտտինի մէկ պաշտօնէից կինն էր և հոս թաղուեցաւ, ուր կը տեսնուի դեռ գերեզմանը ։

Ը. Հրէից արտասուած տեղը ։ Ցիշեալ տանց առաջնոյն դիմացը փողոց մի կայ, ուր չորս բոպէի չափ քալելէն յետոյ, միշտ դէպ 'ի ձախ գնալով, կը հասնինք Տաճարին արտաքնագոյն քով, ուր տեղ Հրէայք ուրբաթ օրերը աղօթելու և արտասուելու կուգան, գլուխնին զարնե- վ նոյն պարսպին, որուն քանի մի սրբ. քարերը խիստ հին են և, Սողոմոնի ժամանակէ մնացած կ'երեւին. որոնց մէջ մինչեւ 3 մեդր եր-

կայնութիւն ունեցող քարեր կան ։ Հրէից այս արարմունքը տեսնելով՝ ստուգուած կը համարուի այն ճըշմարտութիւնը զոր Երեմիայի բերնով զրուցեց Տէր ․ « Զի՞ գոչես ՚ի վերայ բեկման քո՝ սակայն ոչ արարից քեզ վախճան ․ բռունն են ցաւք քո ․ վասն բազմութեան անօրէնութեան քո սաստկացան , մեղք քո արարին քեզ զայդ » ․ Երեմ ․ Լ ․ 15 ։ Ողբային տեսարան մի է արդարեւ այսպիսի ցրուեալ ազգի մի վիճակը , որոնք աշխարհիս ամէն կողմէն խումբ խումբ կուգան իւրեանց արտասուաց կաթիլները խառնելու նախահարցը արտասուքին, որոնք տառանեալինք դարերէ ՚ի վեր է կը թափեն նոյն տեղւոյս վրայ , ոչ ուրիշ բանի համար ըստ մեզ՝ եթէ ոչ մարգարէին վերոյգրեալ խօսքերը ճշմարտելու ։

Այս արտասուաց տեղը սալայատակեալ բակ մի է 30 մետր երկայնութեամբ և Դ մետր լայնութեամբ ։

Հիւսիսոյ կողմէն Մահտէսիէին պատն է, հարաւէն մասնաւոր անձի մի տունն է, ուր տեղ հին Տաճարի պարսպին դրան մէկ մնացորդը կը գտնուի, արեւմուտքէն ուրիշ տուներով ծածկուած է, իսկ արեւելեան կողմն է Տաճարին պարիսպը, այն զոր իրենց արտասուքներովը ու համբոյրներով կը պաշտեն ու կը յարգեն։

Թ. Եզեկիայի աւազանը։ Նոյն դառնալով այս տեղաց մինչեւ ձախակողմի տաճին փողոցը, անկէ 'ի հարաւ շեղելով մինչեւ Հրէից արտասուած տեղւոյն պատերին ծայրը, այսինքն՝ Օմարայ Մզկիթի պարսպին հարաւային արեւմտեան անկիւնը, հոն կը տեսնուի Կամրջին խարխարեալ մասեր, որ յառաջնագոյն Տիւրոպէոնի ձորին վրայ ձգուած էր եւ Մորիա լեռը Սիօն լերան հետ կցեր։ Այս կամուրջը, ինչպէս երեւի, 15 մեդր լայնութիւն ունեցած է, եւ Հրէից թագաւորները ըրած են հաւանաբար. Արիստա-

բուլոս մեծ քահանայապետը կոր-
ծանել տուաւ այս կամուրջը Քրիս-
տոսէ 64 տարի առաջ որպէս զի Պոմ-
պէոս չկարենայ անկէ Տաճարը մըտ-
նելու . Յովսէպ . Ա . 5 : Այն կամուր-
ջին մէկ ծայրը Մախքաբայեցւոց պալատէն
կը հասնէր Սիոն լերան վրայ :

70 մեդր աւելի անդին դէպ 'ի
հարաւ աղամանդագործներու երկու ան-
տառներու մէջէն անցնելով, Աղբիւ-
սաց դուռը կը հասնուի : Բայց մենք
ետ դառնալով եւ ձախ կողմի առջի
փողոցը մտնելով մինչեւ Սայէբէ ը-
սուած տունը հասնինք, անկէ դար-
ձեալ ձախ կողմի ճանապարհը դէպ
'ի յարեւմուտք առաջ քալենք : Այս
փողոցիս կէսէն սկսելով մինչեւ
ծայրը շուկայ է, ձախ դինիս Հրէից
Թաղը կամ շուկայն է, աջ կողմեր-
նիս սասը քայլաչափ երթալով ձախ
դին Մեծ Շուկային (Սուք—էլ—Քէպիր՝
բերանն է . ասոր արեւմտեան ծա-
ռը խանութներուն ետեւի կողմն
Եպիսկոպոսարանը, որ կրնայ տեսնուիլ

քարձր Արճարանին մէջէն, որ աւազանին վրայ կը նայի, և ուրիշ շրջակայ տուներէն։ Այս աւազանին համար՝ շատ հնագէտք՝ Եզեկիա Թագաւորի շինել տուած և Ստորին աւազան ըսածը կ'իմանան; ուր Վերին աւազանէն ջրանցք մ' ալ բանալ տուաւ Ասորեստանցւոց Սենեքերիմ Թագաւորին գալու ժամանակը, որպէս զի պաշարման մէջ ջուր ունենան։ Վերին աւազան ըսածնիս այժմեան Յոպպէի դրան դուրսն եղածն է, Տաճկաց գերեզմանատանց մէջ, և ջրանցքը մինչև հիմայ կը մնայ նոյն նպատակին ծառայելով անձրևաց յորդութեան ժամանակ։

Ժ. ԴՈՒ-ԼԻԲԵՐՐԸ։ Յիշեալ Մեծ շուկային ծայրը՝ աջ կողմն Մեծ Հիւրանոցն է (Հօթէլ), որուն առաջը հրապարակ մի կայ, ուր Ֆէլլահ կանայք կը նստին բանջարեղէն և փայտ ծախելու։ Ձախ կողմը դէպ 'ի հարաւ թեքելով դուռ մի կը տեսնուի քանի պահապան զօրքով պահպանուած.

տանկայ է քաղաքին բերդը, և ռամկօ-
քէն Դաւիթի բերդը կը կոչուի, ըստ որում
նորա շինել տուած աշտարակին կամ
պալատին տեղն է. Բ. Թագ. Ե. 7-11.
որ այժմ զինարան է: Քաղաքին բո-
լոր շէնքերէն բարձր է, մինչև
Սուրբ Յակոբեայ գմբէթէն: Հերով-
դէս մեծը այս տեղս երեք աշտա-
րակ շինել տուած էր, առաջինն էր
Հիպպիկոսի ըսուածը, երկրորդը՝
Մարիամնեայ, երրորդը Փասայելը.
և այս աշտարակներուն հնութիւն-
ները դեռ մինչև ցայսօր կ'երե-
ւին այն խոշոր վէմ քարերէն, որոնք
մինչև Դաւթի ժամանակէ մնացած
կը կարծեն գիտնականք: Այս երեք
աշտարակներէն 'ի զատ երկու հատ
ևս կան որոնց շինութիւնն ու քա-
րերուն մաքրութիւնն ալ կը վկայէ
որ Հերովդէսին ժամանակէն չեն,
շատ շատ մինչև Սուլէյման Բ. կ'ել-
նեն:

ԺԱ. Խորշերին մուտը: Քաղաքի
ձախ դին Դաւթի բերդին դիմաց՝

է Անգղիացի Եպիսկոպոսական Բու- ղաքականաց աղօթարանը, որ շի- նուած է Հերովդէս մեծի պալատին տեղւոյն վրայ։ Այն աղօթարանին քով ետեւի կողմէն դեռ կանգուն կը տեսնուի փոքրիկ եկեղեցի մի յա- նուն Յակովբ առաքելոյ որ Եագո- պէ կը կոչուի։ Անկէ իբր 55 մեդր դէպ յարեւմուտք կան երեք փոքր մատուռներ ձախ Թեւին վրայ, նը- ւիրեալ յանուն Երից Մարիամանց, որոնց Յիսուս յարութենէն յետոյ այս տեղս երեւնալով, ասաց. « Ո՛ղջ էք »։ Նոքա ալ մօտենալով անոր ոտ- քերը պագին ու զինքը պաշտեցին։ Մատթ. ԻԸ. 9։ Այս տեղւոյն մերա- յինք Գաղաթերից դուռն կ'անուանեն։

ԺԲ. Թովմայ առաքելոյն տան տեղը։ Անկէ դուրս ելնելով Հասարակ ճանապարհին վրայ դէպ 'ի Սուրբ Յակովբայ վանքին երթալու, կամա- րին բերանը Հասնելնուս մեր վա- ւաց Դեղարանին դիմացի փողոցին մէջ ձախ դին առաջին դուռը Թով-

լով՝ երկրորդ դուռն է Թովմայ առաջելոյ փանը տեղը, որ անկեան վրայ է։ Հաննէ պատմագիր կ՚ըսէ թէ՝ Թովմայ առաքելոյն Յիսուսի ձեռօք Հնդիկ վաճառականաց ծախուած տեղն է. որ և կ՚ըսէ, հին ժամանակէ ՚ի վեր եկեղեցի էր յանուն Թովմայ Առաքելոյ, և 200 տարի կայ որ Մահմետականք չնչին պատճառաւ մի յափշտակելով խուրացուցած են, բայց հաւատալով թէ նորա մէջ կեցողը առանց պատժոյ չմնար՝ լըքեալ թողուցին. եւ վերջին աւերըն հասած էր, երբ 1865ին կրկին նորոգեցին եւ դուռ մի դրին որ միշտ փակ կը մնայ։

Ահա հոս կը լրանայ մեր Հինգերորդ այցելութիւնը։

## ՎԵՑԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ Ի ԼԵՌԱՆ ՍՈՒՐԲ ՀԱՄԲԱՐՁՄԱՆ

Ձիթենեաց լեռն Երուսաղէմի արեւելեան կողմն է, և Արքայական լեռներէն մին, ուրկէ Տէրն մեր Յիսուս Քրիստոս համբարձաւ յերկինս՝ իւր աշակերտաց բարեխօսութեան իշխանութիւն շնորհելէն յետոյ, եւ յետ այնորիկ Համբարձման լեռ կոչուեցաւ Քրիստոնեայ ազգաց քով, զոր Արաբացիք Ջեպէլ-էլ-Թուր կ'անուանեն։ Եւ Միջերկրականէն ծովէն 800 մետրաչափ բարձր է։

Տիտոս երբ Երուսաղէմը պաշարելու եկաւ, իւր տասներորդ խումբը Ձիթենեաց լերան վրայ բանակեցուց. Յովսէպ. Ե. 8.

Նոյնպէս Խաչակրաց ժամանակ Տանկրետ Ձիթենեաց լեռը եկաւ, ուկէ լաւ կրնայուէր քաղաքին վրայ. ին տեղ Հինգ Արաբացի Մահմետականք վրան յարձակեցան, որոնցմէ

երեքն սպաննեց և երկուսը փախան։

Քրիստոսի ոտնատեղւոյն վրայ Հեղինէ Թագուհիի ժամանակէն շինուած եկեղեցի մը կար․ այս եկեղեցին Պարսից Խոսրով Թագաւորի յարձակման ժամանակ 616 Թուականին կործանեցաւ․ Երուսաղէմի Զաքարիա Պատրիարքն և Քրիստոսի սուրբ Խաչը գերի տարուեցան։ Երբ Զաքարիայի փոխարէն իբր տեղապահ Մոդեստոս նստաւ, նա կրկին նորոգեց սուրբ Համբարձման եկեղեցին, բայց որում քիչ ժամանակ յետոյ եկող ուխտաւոր Պատմագիրք կը ստորագրեն յիշեալ եկեղեցին, որ բոլորաձեւ էր և վերի կողմը բաց։ Եւ ութերորդ դարուն մէջ ականատես Պատմագիր մի կ'ըսէ թէ Քրիստոսի ոտնատեղւոյն վրայ կախուած լուսաւոր ջահը․ հողմին դէմ պաշտպանուելու և անձրեւէն ազատ բռնուելու համար ապակիէ վանդակով մի ծածկուած էր վերի կողմը։

Խաչակրաց ժամանակ եկեղեցին պայծառ մնացած էր․ բայց երբ նոցա ձեռքէն իշխանութիւնը 1187ին դարձեալ Մահմետականաց անցաւ, կրկին խանգարեցաւ Ս. Համբարձման եկեղեցին, որուն աւերակ հետքերը դեռ կ'երեւին բակին մէջ։

Արդի մատուռը յայտնի չէ թէ որ դարուն մէջ շինուած է, որ աւելի Մահմետական ձեւով է քան թէ Քրիստոնէական. ութանկիւնի է 6էն մինչեւ 7 մեդր տրամագծով և վրան գմբէթով. Այն Եկեղեցիս Հայոց սեփականուած է, բայց որ դարէն 'ի վեր՝ յայտնի չէ. Նախ անգամ մի Հռոմանագիր տուած են Հայք, որ կ'արգիլէ Գիւղացւոց Հայոց վանքին մօտ տուն շինելու. Ժամանակէ յետոյ դարձեալ Հայ Միաբանութիւնն անկէ դուրս ընդ.կելով՝ Ֆերլաներ վանքը կ'աւրեն, ւ իրենք պարտաքին կից մզկիթ մի ու շինեն հանգերձ մինարէով։ Երկրորդ անգամ Սուլթան Ահմէտ Աբ

որով Հրամանագիր Ստացած են Հայք Հիճրէթի ١٠٢٢ին , որով արտօնութիւն կը տրուի Հայոց պարիսպը շինելու և քակը քարայատակին՝ եւ գըլ քէթը նորոգելու համար․ այս Հրովարտակիս մէջ կը յիշուի որ ուրիշ Քրիստոնեայ ազգերն ալ իրաւունք ունին ուխտ և պաշտօն կատարելու։ Երրորդ անգամ Հրամանագիր կ'ընդունին Հայք , որով կ'արգիլուի Ֆէլլահներուն՝ պարսպին մէջ մեռեալ թաղելու ։

Քրիստոսի ծնընդեան գմբէթը 1833 Թուականին երկրաշարժէ մի վնասուելով , Լատին միաբանք ուզեցին որ նորոգեն․ Հայք և Յոյնք խմանալով ասք ելան, սակայն ժամանակին դատաւորը և ոչ մէկ ազգի կողմ տալ ուզեց մինչեւ որ հաստատուի որ ազգին վերաբերութիւնը։ Հայոց միաբանութիւնը , որ գիտէր իւր քօհին Հրովարտակ գտնուիլը , յիշեց երեք Հրովարտակները տարաւ դատաւորին և ժողովին ներկայացուց.

որ վաւերական գտնելով զանոնք՝ խումբ տուաւ, և սոյն խմբին վրայ Բ. Դուռն ١٢٥٠, ٥١, ٥٢ Թուականներուն Հրովարտակներ շնորհեց Հայոց նորոգութիւն ընելու եւ սենեակներ շինելու համար, ուստի անմիջապէս սկսան Հայք բակին աջակողմը, կէս մի բակին մէջ եւ կէս մի բակէն դուրս իրենց սեփական երկրի վրայ սենեակներ շինել կըկնայարկ, և ուրիշ նորոգութիւններ ընել, և մինչեւ տանատեղւոյն գմբէթայարկին դրանը կից արտաքին դռնէն սկսելով վրան գեղեցիկ տախտակաշէն ծածք յօրինել, առանց դպչելու այլոց ազգաց իրաւանցը, և Մատրան մէջ Սեղան մը կառուցին, ուր գրեթէ ամէն օր Պատարագ կը մատուցանէին Հայերը.

Լատինք և Յոյնք չկարենալով տա-
« 'ղ Հայոց ձեռօք եղած շինութեա-
» ն, քանի մի անգամ 'ի Պոլիս եւ
Եգիպտոս մարդ խրկեցին, և Գաղ-
'իոյ ու Ռուսիոյ Դեսպանին ձեռօք

Ռաֆըէլ տուփին Տէրութեան, գանգատելով՝ որպէս թէ Հայք կ'արգիլեն իւրեանց որ Հոգեւոր պաշտօննին կատարեն. առոր վրայ հրաման կ'ելնէ որ քննութիւն ըլլայ Երուսաղէմի Դատական ժողովոյն մէջ: Լատինք այս նպատակին համար առնուած թուղթը, որ Ճանթըրզատէ Արիֆի անուն երեւելի անձի մը հետ խօսուած էր քննելու պաշտօնով՝ այնպէս ներկայացուցին, որպէս թէ Հայոց յիշեալ շինութիւնը աւրելու համար տրուած ըլլայ այն Հրամանագիրը, եւ յիշեալ Ճաթըրզատէն եւս Դեսպանին կողմէն շահուած ըլլալով, ուզածին պէս քննութեան կ'առնու Սուրբ Համբարձման տեղը եւ Հայոց նոր շինութիւնները. այս քննութենէն յետոյ՝ Դեսպանաց կրկին թախանձանքներով Բ. Դուռը վերջապէս յակամայս զիջաւ իւր առջի հրովարտակը ետ առնուլ եւ բակին մէջ շինուած սենեակները աւրելու հրաման տալ:

Այն հրամանիս վրայ Հայ միաբա-
նութեան սիրտը կարեւվէր խոցուե-
լով չուզեց պաշտպանել եւ չթո-
ղուլ որ բանկէն դուրս իր սեփա-
կան գետնոյն վրայ շինած սենեակ-
ներն ալ փրցընեն. վասն որոյ Լատին
եւ Յոյն միաբանութիւնք իրենց հա-
սարակ ժողովրդոց հետ միկտեղ
1839 Յունիս 10 ին Զինթենեաց լե-
ռը երթալով՝ հանդերձ պատրաս-
տութեամբ, վերջին հրամանագիրը
կարդացուելէն զկնի՝ սկսան մէկէն
՚ի մէկ սենեակներն ու բոլոր ինչ
որ Հայոց միաբանութիւնը շինել
տուած էր թէ՛ մէջն եւ թէ՛ դուր-
սը, վար առնել, որպէս թէ կանգ-
նածներն կռատուն եղած ըլլար.
Թէպէտեւ արդէն Լատին եւ Յոյն
միաբանութիւնք դատ վարած ժա-
մանակնին ըսած էին թէ Համբարձ-
ման տեղւոյն վրայ եղած շէնքը ոչ
Քրիստոնէից է, այլ Մահմետա-
կանաց մզկիթ է եւ մենք այնպէս
առնեմք.

Այն վիճակիս մէջ կը մնայ դեռ մինչեւ ցայսօր յիշեալ Արքազան Տեղը, որու բանալին գիւղացւոց ձեռքն է եւ Նորոգութեան ծախքը Տէրութեան գանձէն կը լինի։ Տարին անգամ մի մեծ պահոց մէջ, երկրորդ անգամ Քրիստոսի համբարձման օրը Պատարագ կը մատուցանեն Հայք, իսկ ուրիշ ազգերը միայն Համբարձման օրը։ Հայոցմէ միաբանք առջի երեկոյին երթալով՝ գիշերը գմբէթին տակը՝ Ոտնատեղւոյն վրայ, իսկ առաւօտուն բակին մէջ հիւսիսային արեւելեան անկիւնը պատարագ կը մատուցանեն։ Յոյնք հարաւային արեւելեան անկիւնը, Ղպտիք եւ Ասորիք երկու անկեան մէջտեղը վրաննին կը լարեն և պաշտօն կը մատուցանեն։

Այս տեղեկութիւններէն յետոյ սկսինք մեր այցելութիւնն ընել։

Երեք ճանապարհ կայ վեր ելնե-
լու, առաջինն է Փրկչաղանէն դու
ելնելով եւ Աբիսողոմայ արձան

քով հասած ժամանակնիս՝ Հրէից գերեզմանատան մէջ ոլորուն նեղ շաւիղ մի կ'երեւի, որ այս ճանապարհն Համբարձման լերան ձախակողմէ կը հանէ։ Միւս երկու ճանապարհներն են, քաղաքիս Պապ-Էլ-Սպաթ (Ս. Աստուածածնի) դռնէն ելնելով և նորա Գեթսեմանի եկեղեցւոյն առջեւէն անցնելէն յետոյ արեւելեան ճանապարհը բռնել որ Լատինաց պարտիզէն քովէն է։ Այս ճանապարհներէն մէկը խորդուբորդ է, այն՝ ուր տեղ Քրիստոս յաւանակաւ եկած ժամանակ քաղաքը տեսնելով լացաւ անոր վրայ։ Իսկ միւսն՝ լերան հիւսիսային կողմէն վրայ է որ աւելի հանգիստ, և սովորականն է, և այս պատճառաւ մենք ևս բարեպաշտ ուխտաւորաց պէտք առաջնորդենք այս վերջին ճանապարհէն։

Գեթսեմանիի պարտիզին քովէն մեղր դէպ 'ի արեւելք քալելով, ձեռքի վրայ ուրիշ պարտիզի մի կողմը ճերմակ ժայռ մի կը տես-

նուի, ուր աւանդութեամբ կ'ըսուի թէ՝ Տէրն մեր Յիսուս Քրիստոս Ծաղկազարդի օրն Ձիթենեաց լեռնէն գալուն՝ աստ էջէն իջնալով աւանակին վրայ նստաւ, եւ այս ժամուն՝ այս տեղը՝ մերձեցան Յիսուսի քով Հայոց Աբգար Թագաւորի դեսպանները՝ Անանէ և իւր ընկերքը, և Առաքելոց հետ խօսակցութիւն ըրին. Յովհ. ԺԲ. 20—23։ Յոյներն՝ այլ եւս աւանդութիւն մը կը պատմեն այս տեղւոյն համար թէ՝ Թումաս առաքեալ ամենօրհնեալ Տիրամօր գերեզմանը տեսնելու գնացած ժամանակ՝ տեսաւ նորա երկինք վերափոխումը; եւ այս քարիս վրայ վար ձգեց Տիրամայր իւր գօտին։

Այս տեղէն սակաւ մինչ հեռի դէպ 'ի հիւսիս՝ վէմ մի եւս կայ դետինը թաղուած որուն համար կ'ըսուի թէ՝ Ս. Ստեփաննոսի քարկոծման ժամանակը՝ Ս. Կոյսն կ'աղօթէ այս վէմին վրայ. 1860 Թուականի Յոյները այս վէմին շուրջը քարը պարսպեցին։

Լերան գլուխը հասնելու մօտ Ճանապարհը երկուքի կը բաժնուի, աջ կողմինը Համբարձման տեղը կը տանի, որ Չէյլուն կոչուած փոքրիկ գիւղի մի արեւմտակողմն է, ձախ դիու Ճանապարհը Գալիլէա կը տանի, որ Ձիթենեաց լերան մէկ մասն է։ Այս երկու եւ ուրիշ երրորդ Ճանապարհի մի մէջտեղը եռանկիւնաձեւ տեղ մի կայ, ուր երեք ձիթենի կը տեսնուին գրեթէ իրարու կցուած. այս տեղս յառաջագոյն եկեղեցի էր, եւ այն վայրն էր՝ ուր Գաբրիէլ հրեշտակապետ Աստուածամօր մահուան լուրը՝ տուաւ իրեն, զոր Հաննէ Բրաբիոնին փերը կ'անուանէ։ Այս տեղս անշուշտ 70 վանուց մին էր Հայոց ձեռքը, և ինչպէս կը յիշատակուի Վանօրէից գրքին մէջ, վեց վանք ունէին Հայք Գալիլիայ
րան կողմը, որք են Պալունեաց, Նձեւացեաց, Պաղակունեաց, սուրբ սռասնից, Քաջբերունեաց և Սա-
տռունեաց վանք։

Քրիստոսի Համբարձման տեղը չգացած մեր ճանապարհը դէպ 'ի ձախ կողմը յառաջ տանելով 200 մեդր, Գալիլէա կը հասնինք, որուն Մահմետականք Քարմ-էլ-Սաէփ կ'ըսեն։ Աւանդութիւն կայ թէ կանա—Գալիլեացիք այս տեղ իջեւան կամ հիւրանոց մի ունէին ազգային, ուր կը բնակէին Զատկի տօնին Երուսաղէմ եկած ժամանակնին, եւ անկէ մնացած է տեղւոյն անունը Գալիլիա կոչել։

Անոր համար Տէրն մեր Յիսուս Քրիստոս ալ՝ իբր 'ի Նազարեթէ Գալիլեացւոց համարուած լինելուն, երբ Երուսաղէմ կուգար՝ գիշերները կ'ելնէր այս Ձիթենեաց լեռը կ'ագանէր (1)։ Այս տեղս ալ վանք մի

---

(1) Եւ 'ի տուէ 'ի տաճարին ուսուցանէր. և զգիշերս ելեալ ագանէր 'ի լերինն՝ որ կոչիւր Ձիթենեաց. Ղուկ. ԻԱ. 37։

Եւ ելեալ գնաց (Յիսուս) ըստ սովորութեան 'ի լեառն Ձիթենեաց. Ղուկ. ԻԲ. 39։

Իսկ Յիսուս գնաց 'ի լեառն Ձիթենեաց։ ընդ առաւօտն դարձեալ եկն 'ի Տաճարն և [illegible] տեալ ուսուցանէր. Յովհ. Ը. 1, 2։

և եկեղեցի կար, և անշուշտ վերոյիշեալ եկեղեցիներէն մէկն էր։ Հին աւերակներու մնացածներ դեռ կան, և շատ տարի չէ որ Յոյնք առին այս տեղս ։

Ես դառնալով անկէ դէպ 'ի հարաւ 400 մեդրի չափ, Զէյթունի գիւղին մէջ մինարէի մի քով կը հանդիպինք, որ կից է այն բակին որուն մէջ եղած գմբէթին տակ Քրիստոսի համբարձման օր Թողուցած Ոտնատեղւոյն նշանը կ'երեւի ժայռի մի վրայ դրոշմուած, և ինչպէս կը կարծուի՝ ձախ ոտքին (1) նշանն է. եւ ժայռին մէկ մասը բաց Թողլով բարեպաշտից համբուրելու համար, միւս բոլորտիքը քարայատակ ըրած են որչափ տեղ որ յարկի տակ առնուած է, եւ ինչպէս ըսինք սուալ՝ վրան չին-

(1) Միւս ոտնատեղւոյն համար Մահմետաք Օմարայ մզկիթին (Էլ-Աքսա) մէջ է կ'ըսեն. ց այդ հաւանական չէ, ըստ որում երկուքն ալ ա զատ ժայռեր են. և եթէ քովէ քով դրուելինին, երկու քայլին մէջտեղը բնականէն աւ տարածութիւն մի կը գտնենք ։

ուած գմբէթաւոր մատուռը Մահ-մէտականն ձեւով է ։

Բակի դռնէն դուրս ելնելնուս Հարաւայքն կողմը Տէրվիշի բնակարան է . տեղւոյն Շէյխին քանի մի փող տալով կը թողու վեր Մինարէն ելնելու , ուր մարդոյս աչքին գեղեցիկ տեսարան մի կը ներկայանայ , արեւմտեան կողմէն Գեթսեմանի ձորը , բոլոր Երուսաղէմը և 'ի մասնաւորի Օմարայ մզկիթը , Սուրբ Յակոբայ վանուց գմբէթը , և քաղաքին միւս ետեւի կողմը Ռուսաց վանքը , և այլն . արեւելեան կողմէն կը տեսնուի Յուդայի երկրին անապատը մինչեւ Յորդանան ու Մեռեալ ծովը և լեռներու շղթայ մի՝ որու հարաւայքն ծայրն է Մովաբայ լեռները ։

Մինարէէն վար իջնելով և դէպ 'ի արեւմտեան հարաւակողմն երթալով շէնքերուն անկիւնը դուռ մի կ տեսնուի երեսը դէպ 'ի արեւմուտք ուսկէ կը մտնուի Սրբո—Հ—ոյն Պեղ

ջեայ այրը։ Այս սրբուհին Անտիոքա-
ցի էր Մարգարիտ անուն և գուսա-
նութիւն կ'ընէր, յետոյ Եղեսիոյ
Նոննոս եպիսկոպոսի ձեռօք դարձի
գալով հինգերորդ դարուն Պեղե-
քեայ անունը կրեց, եւ եկաւ այս
այրին մէջ ապաշխարելու, և հոս
մեռաւ ու թաղուեցաւ։ Այս տեղ
ալ հին ժամանակ վանք մի կար, եւ
դեռ կը տեսնուի սորին խուց մի
կամ գերեզման մի ուր 16 ոտք աստի-
ճաններով կ'իջնուի։ Մահմէտականք
պատուով կը բռնեն այս տեղս եւ
միշտ գոց կը պահեն։

Եօթանասուն և հինգ մեդր դէպ
'ի հարաւ և քիչ մի Մինարէին դէպ
'ի արեւմտակողմը եղած տեղն՝ Տէրն
մեր Յիսուս Քրիստոսի իւր աշակեր-
տաց Տէրունական աղօթքը ուսուցած
տեղն է։ Այս տեղն 1869 ին Լա
Դուր տ'Օվէռնի իշխանուհին գնե-
վ պարսպով պատեց և ապա ըն-
դարձակ շէնք մի շինեց, որուն մէջ
սև Մայրապետանոց մը ու պայծառ

Եկեղեցի մը, չէնքին ներքին կողմի պատերուն վրայ այժմ գրած են Հայր Տէրը գրեթէ 30 տեսակ լեզուներով. 1880ին նոյն չէնքին հարաւային կողմն եղած փոքրիկ արտն ալ առնելով չոր-ջապատեցին կցելով նոյն տեղւոյն։

Յիշեալ տեղւոյն հիւսիսային ա-րեւմտեան դին իբր 30 մեդր հեռու է Առաքելոց Հանգանակին յօրինոյ տեղը. ուր հին ժամանակ եկեղեցի կար, և հոն 12 խորշերու մէջ Երկոտասան Առաքելոց արձանները գտնուած էն։ Մահմետականք այս տեղի քա-րերը Հրէից ծախած են տապանա-քար ընելու համար։

Այն տեղւոյս հիւսիսակողմը և անոր կից՝ դաշտակի մի մէջ գետնին երեսը Գերեզման մի կայ ժայռին. մէջ փորուած, և կայ մէջը 9 խորշ մի-սուրի նման։ Այս տեղն 1868 Թը-ւականին Ռուսք գնեցին, և 1871ին հիմնարկութեան համար փորել ս ւած ժամանակնին՝ կարգաւ նոյն գ երեզմաններին յայտնուեցան, որոց

րան առջեւ յատակին վրայ քառա-
կուսի ձեւով Հայերէն հետեւեալ
արձանագրութիւնը կայ միւսին
քարերով շինուած ,

ԲԱՐԵԽԱՒՍ ՈՒՆԵԼՈՎ ԱՌ ԱՍՏ-
ՒԱԾ ԶՍՈՒՐԲ ԷՍԱՅԻ ԵՒ ԶԵՐԱՆԵԼՒ
ՀԱՐՍՑ ԵՍ ՎԱՂԱՆ ԱՐԱՐԻ ՎԱՍՆ
ԹՈՂՈՒԹԵԱՆ ՄԵՂԱՑ ԶՅԻՇԱՏԱԿԱ-
ՐԱՆՍ ԶԱՅՍ

Այս հնութեան յիշատակարանը պահպանելու համար , Ներկայ Տ. Եսայի Ս. Պատրիարքն բազում աշխատութեամբ՝ համահաւասար չափով ու գոյնով՝ ճիշդ մէկ օրինակին խճանկարով հանել տալով փայտեայ ոսկեզօծ շրջանակի մէջ անցուց եւ Պատրիարքարանի սրահը կախել տուաւ :

Յիշեալ դամբարաններու վերի կողմը ընդարձակ սրահի մը յատա-
ին, վրայ կը տեսնուի դարձեալ միւ-
ն (մօզայիք) քարերով յօրինուած
ռակուսիի մը մէջ՝ զանազան գե-
ցիկ նկարներ որք են՝ ձուկ , թռչա-

ղաղ, սագ և այլն՝ եւ քառակուսին եզերքն ալ Հայերէն յիշատակարանի հետեւեալ մնացորդը, որովհետեւ սրահի յատակին մէկ կողմը յիշատակարանի մնացորդով միատեղ քանդուած է.

ԱՅՍ Է ԴԻՐ ԵՐԱՆԵԼՈՅՆ ՇՈՒՇԱՆԿԱ ՄԱՒՐՆ ԱՐՏԱՒԱՆԱՑ. ՀՈՌԻ ԺԶ

Այս գետնոյն մէկ ուրիշ կողմն ալ յիշատակարանի մը հետեւեալ մնացորդը կայ՝

ՎԱՍՆ ԹՈՂՈՒԹԵԱՆ ՄԵՂԱՑ ԹԵՒԱՑ, ԱԲԱՍՈՒ ԵՒ ՄԱՒՐԿԱՆ

Այս գետնին մէջ Ռուսերը 1883ին սկիզբները՝ հին Եկեղեցւոյ մը փլատակներ եւ գտնելով, անոր վրայ կառուցին այս տարի հոյակապ Եկեղեցի մը փառաւոր կաթուղիկէիւ ։ Ռուսք այդ գտնուած Հայերէն յիշատակարաններն ամենայն զգուշութեամբ կը պահպանեն ։

Հանգանակ շինուած տեղւոյ դէպ ՚ի հարաւային արեւակողմ 400 մետրաչափ հեռու, Չիթեննեայ

լերան ոտքը , Բեթանիայի ճանա-
պարհին վրայ , այն տեղ ուր ձորի
մի բերանը գոցելու համար կարծես
թէ յատուկ շինուած է , Բէթփագէ
ըսուած տեղն է , ուր երբ մօտեցաւ
Յիսուս , իւր Աշակերտներէն եր-
կուսը դիմացը եղած գիւղ մի խրը-
կեց որ հոն կապուած էշն ու յա-
ւանակը իրեն բերեն , որոնց վրայ
հեծնալով հանդէսով Երուսաղէմ
մտաւ ։

Այն Բէթփաժէ ըսուած տեղն 1881
թուականին Լատինք ծախու առին
ամենայն դժուարութեամբ , և գե-
տինն փորելով սիւներու կտորներ
և մեծամեծ քարեր գտան , բաց ա-
սոնցմէ ուրիշ քար մը գտան սեղա-
նաձեւ՝ որուն բոլորտիքը նկարուած
է Քրիստոսի եւ իւր Աշակերտաց
պատկերներն ու կապուած իշու մը
նկարն ։

Անկէ գնալով դէպ ՚ի արեւելք
Բեթանիա գիւղը՝ Ղազարոսի գե-
րեզմանը կը հանէ , որ հիւսիսային

կողմը բացուած դռնէ մի ներս մըտ-
նելով 27 ոտք աստիճան սանդուղնե-
րով վար կ'իջնուի. բնական դուռը
այս չէ, վասն զի Մահմետականք
առջի դրան վրայ Ճէամի չինելով ար-
գիլեցին Քրիստոնէից ներս մտնելու։
Ուխտաւորք հոս եկած ժամանակ
պէտք է որ հետերնին մոմ ունենան,
վասն զի խիստ մութ ու ստորերկրեայ
է գերեզմանը, և կարգաւ մտնեն
ու ելնեն, որ շնչառութեան կողմէ
չնեղուին. Ղազարոսի գերեզմանին
վրայ եօթներորդ դարուն եկեղեցի
կար, եւ Արաբացիք տիրած ժա-
մանակնին կործանած պիտի ըլլին,
ինչ ժամանակ Հայոց 70 Եկեղեցեաց
եւս մէկ մասին տիրեցին և մէկ մա-
սը աւերեցին։

Այս տեղէս 80 մեդր դէպ 'ի ա-
րեւելք եկեղեցւոյ մի աւերակ մա-
սեր և միւսիոնով չինուած յատակի
մի կտոր դեռ կը տեսնուի։ 40 մե-
Ղազարու գերեզմանէն հեռու դէ
'ի հարաւ Մարիամ Մագդաղենայոյ կա

Մարթայի տանը տեղն է ։ Այս տեղն 1870ին Մատամ–տը–Նիգոլայ ա-նուամբ հարուստ տիկին մի գնեց ։

Եւ 180 մեթր դարձեալ Ղազա-րու գերեզմանէն հեռու դէպ ՚ի յարեւմուտս Սիմոն Բորոտի տանը տեղն է, ուր Մարիամ Մագդաղենացին եկաւ և Փրկչին մերոյ գլուխը անոյշ իւղով օծեց ։ Այս տեղս ալ յառաջ եկեղեցի էր, բայց հիմակ եւ ոչ ա-ւերակները կ'երեւին ։ Գիւղացիք տուն ըրած են ու վարուցան կ'ընեն ։

Ղազարու գերեզմանէն դէպ ՚ի արեւելք 10 քայլի չափ քալելով փոքրուկ ժայռ մի կայ գետնին երե-սը. այս տեղ հանդիպեցաւ Մարթա Յիսուսին՝ իւր եղբայրը մեռնելէն յետոյ, ու ըսաւ իրեն. «Տէր եթէ աստ եղած ըլլայիր, իմ եղբայրս չէր մեռներ. Յովհ. ԺԱ. 21 ։

Այս տեղւոյն քովերը Յունաց միա-բաններէն Սպիրիտոն անուն հա-ւատ Յոյն եպիսկոպոսը՝ 1880ին ծախ-ու առնելով փոքրիկ վանք մը շինեց

սրբատաշ քարերով, որուն շինու-թեան համար կ'ըսուի թէ տասն և երկու հազար ոսկիի չափ ծախք գը-նաց. յիշեալ Եպիսկոպոսն նոյն տե-ղըն հանդերձ շէնքով՝ առանց փո-խարինութեան իրենց վանքին նը-ւիրած է ։

Ետ դառնալով Ղազարու գե-րեզմանէն, եւ քանի մի քայլ դէպ 'ի յարեւմուտք երթալով, ձախ դին առջի Ճանապարհը կ'ելնենք և տասն րոպէին Երուսաղէմ դիմացնիս կ'ե-րեւի. հոս Ճանապարհը դէպ 'ի աջ դին կը խոտորի, ուրկէ տասն և եր-կու րոպէ գնալով՝ ձախ կողմերնիս պզտիկ արտի մի ցանկը կայ, յորում Ցիսուս Քրիստոս անիծեց Թզենին ։ Ըսած տեղս ժայռի մէջ փորուած խոռոչ մի կ'երեւի. եւ այն ժամա-նակուան պէս հիմակ ալ ուրիշ թը-զենիի մի ծառ կայ ։

Այս տեղէն 6 րոպէ եւս քալե-լով դէպ 'ի աջ կողմը, որ է հիւսիս ձախ դինիս թողլով Գայթակղու

Թեան լեռը եւ Սելովամայ գիւղը , ու վար Գէթսեմանի ձորին (1) եզերքը ճանապարհին վրայ իջնելով , ձախ կողմի ճանապարհը դէպ ՚ի Փրկչադրու կ՚առաջնորդէ , եւ աջ կողմինը դէպ ՚ի Ս. Աստուածածնի Գերեզմանը եւ անկէ քաղաքին Ս. Աստուածածնի բռուած դուռը կը տանի ։

Այս ճանապարհները արդէն բարեպաշտ ուխտաւորք սորված կը լինին , և հարկ չէ մեզ կրկին առաջնորդել իրենց մինչեւ ՚ի Սուրբ Յակոբ ։

---

(1) Այս Գեթսեմանի ձորին նաև Ջոհէց ձոր կոչուիլն կը յիշէ՝ Մեծն Վարդան Վարդապետ , ՚ի մեկնութեան Անթառամ ծաղկի Մեծացուցէին , ասելով այսպէս "Մարմին լուսանշոյլ և Աստուածամօր (Տիրակիր Ս. Աստուածածնին) ՚ի գերեզման եդեալ ՚ի Գեթսեմանի ջահիւք և լապտերօք ՚ի Ձորն Ջոհէց կոչեցելոյ ». յերես 23 ։

# ԵՕԹՆԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## Ի ԲԵԹՂԵՀԷՄ ԵՒ Ի ՇՐՋԱԿԱՅՍ ՆՈՐԻՆ

Բեթղեհէմը, որ Ս. Գրոց մէջ երկիր Յուդայ եւ տուն Եփրաթայ կը կոչուի, Միջերկրական ծովէն 846 մեդր բարձր է, և Երուսաղէմի հարաւային կողմը 12 հազարամեդր հեռի լերան մի վրայ շինուած է և չորս կողմը ձորերով պատած։ Հիմնարկութեան սկիզբը երբ ըլլալը յայտնի չէ, միայն գիտեմք որ Քրիստոսէ 1740 տարի յառաջ կար։ Աստ ծնած է Եսեբօն, որ եօթը տարի դատաւորութեան պաշտօն վարեց Իսրայէլի ժողովրդոց, և աստ մեռնելով թաղուեցաւ. Դատ. ԺԲ. 8։ Նոյնպէս և Ղեւտացի խեղճ կնորուն մարմինը չարաչար մեռնել յետոյ 12 կտոր ըլլալով Իսրայ 12 ցեղին ղրկուեցաւ. Դատ. ԺԹ.

Եղիմելէք եւ Նոյեմին ; որու որդին Մաալոն՝ Մովաբացի Հռութն առաւ, եւ յետոյ այրի մնալով կինը, իւր կեսրոջը հետ Բեթլեհէմ եկաւ եւ Բոոս զինքը իրեն կին առաւ, որ նոյնպէս Բեթլեհէմցի էր, եւ անկէ զաւակ մի ունեցաւ Ովէդ անուն, որ եղաւ հայր Յեսսէի, ուսկէ ծը-նաւ Դաւիթ. Մատթ. Ա. 5. Քրիս-տոսէ 1087 տարի առաջ:

Բեթլեհէմի մէջ Սամուէլ մար-գարէ Աստուծոյ հրամանաւն օծեց զԴաւիթ թագաւոր Իսրայէլի, երբ նա տակաւին մանուկ էր: Եւ ու-րիշ շատ երեւելի ու նշանաւոր ան-ձինք ծնած են այն քաղքիս մէջ, ինչպէս Յովաբ, Ասայէլ, եւ այլն: Ռոբովամ Սողոմոնի որդին ընդար-ձակեց Բեթլեհէմը. եւ Բաբելոնի գերութենէն յետոյ 123 անձինք մի-
ն Բեթլեհէմցիներէն ետ դարձան
նակելու:

Մատթան և իւր որդին Յակոբը՝ վսէփ Աստուածահօր հայրը, Բեթ-

լեհէմի մէջ ծնան. Մատթ. Ա. 15։ Նմանապէս եւ ամենօրհնեալ Կուսին մայրը Աննան եւս կը կարծուի որ աստ ծնած ըլլայ։ Վերջապէս Բեթղեհէմի մէջ ծնաւ յամենասուրբ Կուսէն աշխարհիս Ազատարարը, Տէրն մեր Յիսուս Քրիստոս, անարգ այրի մի մէջ, որ իբրեւ ախոռ և օտար գիւղացիներու իբր բնակարան կը ծառայէր անշուշտ, որոնք իրենց անասուններն ալ ներս քաշելով իրենց բնակակից կ'ընէին. վասն որոյ մանուկն Յիսուս ծնանելէն յետոյ՝ խանձարրով փաթթուելով մսուրի մէջ դրուեցաւ։ Աստ թլփատեցաւ դարձեալ ութ օրէն յետոյ ըստ սովորութեան Հրէից, ինչպէս կը հաւաստայ սուրբն Եպիփան։ Սոյն Մսուրին մէջ գտան երեք մոգերը, Մելքոն, Գասպար և Պաղտասար, երբ յարեւելքէն եկան աստղի մի առաջնորդութեամբ, երկրպագութիւն ընելու Նորածի Թագաւորին։

Արգարու կինը Հեղինէ բարե-
պաշտ Թագուհին նոյն տեղս մաք-
րել տուաւ և պատել մի շրջապա-
տելով երկրպագութեան տեղ որո-
շեց . քիչ տարիներէ յետոյ ուրիշ
Քրիստոնէայք Աղօթարան մի շինե-
ցին վրան , զոր 135 ին Ադրիանոս
կայսրն եկաւ քակեց և տեղը ան-
տառով մի շրջապատելով Նուիրեց
Ադոնիս չաստուածոյն և Մարքին վրայ
Ափրոդիտեայ արձանը կանգնեց եր-
կրպագութեան համար , ինչպէս կը
վկայէ Ս. Հերոնիմոս առ Սրբուհին
Պաւլինոս գրած նամակին մէջ ։

Ըստ աւանդութեան՝ Մեծին Կոս-
տանդիանոսի մայրը Հեղինէն կամ
նոյն ինքն Կոստանդիանոս կրկին
մաքրել տալով Արքայան տեղը , շի-
նութեան ձեռք զարկաւ , կամ ինչ-
պէս ազգային աւանդութիւն մը կը
պատմէ՝ Տրդատ Թագաւորը լրա-
ցուց շէնքը փառաւոր ու հոյակապ
տաճար մի կանգնելով ։ Ըստ ազգային
ամէջայց եօթներորդ դարու՝ Եկե-

ղեցւոյն երկայնութիւնը 2000, իսկ լայնութիւնը 1000 կանգուն էր եւ 90 մարմարեայ սեանց վրայ քարուկիր կամարներով հաստատուած։ Սակայն նոյն ժամանակէն յետոյ Եկեղեցին զանազան վտանգներու և դէպքերու առթիւ իւր մեծութիւնը եւ շքեղութիւնը կորսնցուց։

Օմար Խալիֆայն երբ Երուսաղէմը տիրեց, Բեթլեհէմ եկաւ և Ծննդեան եկեղեցին մտնելով՝ աղօթքի կեցաւ այրին մէջ, բայց եւ այնպէս նոյն օրը հրամանագիր հանելով արգիլեց Իսլամաց որ երեք հոգիէն աւելի միատեղ չգան աստ աղօթելու համար։

Հաքէմ 1029ին իւր կողմէն մարդիկներ ղրկեց որ Ս. Ծննդեան եկեղեցին կործանեն. Երբ ասոնք հասան այրին մօտ, Ճառագայթաւոր լոյս մի երեւելով իրենց, գետինը զարնուեցան ու հոգիներն փչեցին, և ս հրաշքով եկեղեցին ազատ մնաց։

Սալահէտտին 1187ին Բեթլեհէմ

ալ տիրեց, եւ հինգ տարի յետոյ Սալզպուրի եպիսկոպոսը խիստ դըժուարութեամբ հրաման ընդունեց յիշեալ Սուլթանէն որ Բեթլեհէմի վանքին մէջ երկու Լատին քահանայ միայն մնան քանի մի սարկաւագներով իրենց աստուածային պաշտօնը կատարելու, ինչպէս որ Հայք շատ դարուց 'ի վեր կը կատարէին. բայց Լատինք շատ տարի չքշեց կրկին վռնտուեցան Բեթլեհէմէն։

Ըստ Լատին Պատմչաց՝ Խաչակրաց Ս. Երկրէն հեռանալէն յետոյ՝ Եկեղեցին անտէրունջ մնալով քայքայեցաւ. և Արաբացիք տանիսի կապարներով՝ հրացանի գնտակներ կը շինէին։ Սակայն զանազան Յիշատակարանք՝ հակառակ Լատին Պատմչաց՝ կը հաստատեն որ Հայ Եկեղեցականք միշտ պահած ու պահպանած զԵկեղեցին, ինչպէս 1227ին Տէր րահամ և Տէր Առաքել անուամբ յ եկեղեցականք իբրեւ տէր եւ սող Տաճարին՝ ներքին դուռը շի-

՚նել կուսան տախտակեայ պատուական քանդակագործութեամբ զարդարուած , հետեւեալ Ցիշատակարանաւ , որ մինչեւ ցայսօր անեղծ կը մնայ Հայերէն և Արաբերէն լեզուաւ .

ԹՎԻՆ . ՈՀԶ . ԿԱԶՄԵՑԱՒ ԴՈՒՌՍ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՍ ՁԵՌԱՄԲ ՏԷՐ ԱԲՐԱՀԱՄՈՒ ԵՒ ՏԷՐ ԱՌԱՔԵԼՈՑ Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՍ ՀԱՅՈՑ ՀԵԹՄՈՅ ՈՐԴԻՈՑ ԿՈՍՏԱՆԴԷԻ . ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԱՇԽԱՏԱՒՈՐԱՑ

Իսկ Արաբերէն Ցիշատակարանին բնագիրն ու թարգմանութիւնն է հետեւեալն .

كمل هذا الباب بعون الله تعالى في ايام
مولانا السلطان الملك المعظم في تاريخ الهجرة
سنة اربعة وعشرين وستماية

Կատարեցաւ դուռս օգնականութեամբ Բարձրելոյն Աստուծոյ յաւուրս Տէրութեան Մեծափառ արքային Մերոյ 'ի թուին Հիճրէ թի ٦٢٤ .

Ցոյնք 1842 ին , Եկեղեցւոյ ամբողջ նորոգութեան ատեն , աշխա

տեցան այս դռուռն եւս նորոգու-
թեան պատճառաւ ոչնչացնել, բայց
բարեյիշատակ Տ. Զաքարիա Պատ-
րիարքը՝ դրան վրայի Յիշատակարան-
ները հանդերձ բողոքագրով մը Բ.
Դուռը գրկեց եւ երկու պահապան
կեցոյց դրան քով, որով պահպա-
նուեցաւ դռներն իւր հնութեամբ-
քը Յունաց նենգութենէն.

Ս. Ծննդեան արդի Եկեղեցին՝
սիւնազարդ գաւթէն որմով բաժ-
նուած է, եւ երեք դասէ կը բաղ-
կանայ, հարաւային կողմը եւ միջին
Աւագ-Սեղանը՝ որոյ տակն է Սուրբ
Ծննդեան Այրը, Յունաց սեփական
են, իսկ հիւսիսային դասը Հայոց
սեփականեալ 1813էն. ըստ որում
նոյն թուականին Հայոց եւ Յունաց
միջեւ տեղի ունեցած մեծ վէճէն
և դատէն յետոյ բարեյիշատակ Սուլ-
թան Մահմուտ մեծ կայսեր տուած
հրովարտակաւ (١٢٢٨) Հայք Սուրբ
Ծննդեան եկեղեցւոյն վրայ եւս
նոց հաւասար իրաւունք ունե-

ցան, ըստ որում՝ բաւական տարիէ-
՚ի վեր մինչեւ 1813 Թուականը ար-
գիլուած էին Հայք սուրբ Պատա-
րագ մատուցանելու Ս. Այրին մէջ.
և բաւական իրաւունքներ կորուսած
էին նոյն եկեղեցւոյն մէջ Յունաց
միաբանութեան կրօնաւոր և Թշնա-
մական վարմունքով, որ միշտ կը
ջանան բոլոր սրբազան տեղերը ի-
րենց սեփականել։ Ուստի վերջի-
շեալ Թուականին բարձրագոյն Հրա-
վարտակաւ եւ Նորին գործադրու-
Թեանը Համար եկող Նուրի Էֆէն-
տի արդարասէր գործակալին ջան-
քովը կարողացան Հայք Հանապազո-
րեայ Պատարագ մատուցանել Ս.
Այրի սեղանին վրայ, և Յունաց ու
Լատինաց ունեցածներուն Համե-
մատ կանԹեղներ կախել եւ պատ-
կերներ Հաստատել։ Այսու ամե-
նայնիւ տակաւին շատ իրաւունքներ—
ունին Հայք կորուսած Թէ Լա-
տաց եւ Թէ Յունաց բռնուԹենէ
ինչպէս է, օրինակի Համար, Հիւ

սային դասուն մէջի եղած դրան բռնութեամբ բացուիլը Լատինաց կողմէ , որոնք իրենց անցուդարձով ոտնակոխ կ՚ընեն Հայոց միաբանութիւնը ժամերգութեան միջոցին · դարձեալ 1869 ին Ս · Այրին մէջէն Լատինաց ձեռօք պատկերներուն գողցուիլը ։

Սուրբ Ծննդեան եկեղեցին հինգ կարգ սրահ ունի ատեանէն ու երկու դասերէն դուրս , որոնք պատով զատուած են ժողովրդոց կայնելու սրահներէն , եւ այս հինգ սրահները չորս կարգ կարծրաքար միակտուր սիւներով զատուած են , որք ընդամենը 50 հատ են ։

Բեթլեհէմի մէջ 5000 բնակիչք կան , Հայ , Յոյն , Լատին եւ Մահմետականք · Յոյնք եւ Լատինք քան զմիւս ազգերը շատուոր են , Հայք 00 հոգւոյ չափ կը հաշուին , որոնք թէպէտև քիչուոր , բայց քան զՅոյնս զԼատինս ազդեցութիւն ունին ։

Բեթլեհէմի հին և Նոր պատ-

մութեան վրայ այսչափ համառօտ տեղեկութիւն տալէ զկնի՝ ճամբայ ելնենք մեր այցելութիւնն ընելու ։

Այն ճանապարհորդութիւնը սովորաբար ձիով կ'ըլլայ , թէպէտեւ շատ քարեպաշտ անձինք եւ խնայասէրք ոտքով ալ կ'ընեն, ըստ որում հանգիստ երթալով՝ երկու ժամի ճանապարհ է Երուսաղէմէն մինչեւ Բեթլեհէմ։

Յոպպէի կամ Հայր Աբրահամու բռուած դռնէն դուրս ելնելով, առաջին անգամ ձախ դին հանդիպած զառ 'ի վայր ճանապարհը կ'իջնուի , եւ անկէ Գեհէնի ձորն անցնելով՝ Հրէից աղքատանոցի պատին տակէն ուղղակի ճանապարհ է Բեթլեհէմ գնալու ։

Հրէից աղքատանոցէն 200 մեդր անդին՝ ճանապարհին վրայ՝ ձախ կողմը՝ Ձըլլրայի անուամբ խարխլած տուն մը կար , որուն փոխարէն արժէքն Սուլթանը տալով ծախու առաւ, եւ նուիրեց Սուրբ Յովհաննու կարգէ

Անգղիական խաչակիր ասպետնե-րուն, որոնք անցեալ 1883 Թուա-կանին նոյն շէնքը գրեթէ 'ի հի-մանէ նորոգելով հիւանդանոց ըրին։

Այս ճանապարհին աջ կողմը կ'իյ-նայ Անօրէն կամ Չար խորհրդոյ լեռը, զոր Երրորդ այցելութեան մէջ ցոյց տուինք, եր. 120։ Յառաջ գնալով ճանապարհին ձախ կողմը քիչ մի ներ-սով եւ հարթ դաշտի մի մէջ աւե-րակ մի Թողլով, աջ կողմը կը սկսի երեւալ Տէփանանց կամ Մէհայէլ ըսած հովիւները, ուր Դաւիթ Աստուծոյ հրամանաւը Այլազգաց դէմ ելնե-լով՝ կռուեցաւ ու յաղթեց անոնց, և կուռքերնին այրեց. Ա. Մնաց. ԺԴ. 11—14. և Բ. Թագ. Ե. 22։

Այս հովտին հիւսիսային արեւ-մտեան կողմը Գերմանական գաղ-թականութիւն մը հաստատուած է, այժմ 40 տուներէ բաղկացեալ քեթէ գիւղ մ'է Գօլճի անուամբ. ուր կը բնակի Հօֆման անուն հռ-չակաւոր Աստուածաբանը որ իւր

անուամբ աղանդ մ՚ ունի որ կըկոչուի Հօֆմաննեան աղանդ, և յիշեալ դաղթական բնակիչներն ամբողջովին այս աղանդէն են, գիւղին մէջ ունին կանոնաւոր վարժարան մը ուր կ՚ընդունին գիշերօթիկ և երթեւեկ աշակերտներ առանց խտրութեան կրօնի և ազգի, ունին նաեւ ժողովարան մը՝ ուր ամէն շաբաթ ժողովելով կ՚աղօթեն և կ՚աստենաբանեն։

Բաւական երթալով և ձախ կողմն եղած բլրակի մի ստորոտէն քալելով. աջ կողմը Ցունաց նորատունկ Ձիթենեաց պարտիզի առաջը Ճանապարհի վրայ Մոգէրոան հորը կայ, որուն տեղացիք իրենց լեզուաւ Պիր-Էլ-Նէձիմ կ՚ըսեն, որ Աստղին հորը ըսել է։ Աւանդութիւն կայ որ երեք Մոգերը Երուսաղէմ մտնելնուն՝ իրենց աչքին դիմացէն աներեւոյթ եղաւ առաջնորդող աստղը. Հերովդէս՝ մօտ տեսութեան երթալէն յետոյ երբ նորէն Ճանապարհ ելան Բեթլէհէմ գնալու, այս հորին քով հա-

սած ժամանակնին կրկին անգամ սաստը երևեցաւ իրենց, և առաջնորդելով բերաւ մինչև Սուրբին տեղը, որուն մէջ էր դրուած Մանուկին Յիսուս։

Ասկէ 5 րոպէ մը քալելով Զիթենեաց երկու կարգ գեղեցիկ պարտէզներու մէջ տեղէ, կը հասնինք Սուրբ Եղիայի վանքը, որու դուռը ձախ կողմի անել փողոցին մէջն է։ Այս վանքը, նախ Վրաց ազգին էր, այժմ Յունաց ձեռքն է։ Ասոր հիմնարկութիւնը Հերակլ կայսեր կը տրուի։ Եկեղեցին բաւական գեղեցիկ է, որու մէջ թաղուած է 1345ին Եղիա անուանով եպիսկոպոս մը Յոյն կամ Վրացի։

Փողոցին դիմացը ճանապարհին վրայ բարձր սէթ մը կայ և ժայռ քար մը կ՚երևի գետնին երեսը. աւանդութեամբ կ՚ըսուի թէ Եղիա մարգարէ Եզաբէլի բարկութենէն փախչելու ժամանակ այս տեղս հասնելով՝ բեւեկնի ծառի մը տակ պառ-

կեցաւ, ուր Տիրոջն Հրեշտակը երկու
զինքը արթնցուց երկու անգամ,
որ հաց ուտէ և ջուր խմէ որ գըլ-
խին վերերը պատրաստ կը կենար ։
Ելաւ Եղիա երկու անգամ ալ կե-
րաւ ու խմեց, եւ ուժ առնելէն
յետոյ ճանապարհ ինկաւ երթալու,
Գ. Թագ. ԺԹ. 1-8. քնացած քարին
վրայ իւր մարմնոյն նշանը թողլով,
ինչպէս կը հաւատան Լատինք եւ
Յոյնք ։ Այս տեղէս կ'երեւի մէկ
կողմէն Բեթլեհէմը և միւս կողմէն
Երուսաղէմը ։

Յիշեալ ժայռին հիւսիսային արե-
ւելակողմը բլրին դէպ 'ի ստորոտը
ճանապարհէն շատ հեռու չէ՝ գե-
ղեցիկ եկեղեցի մի կայ հին ժամա-
նակ, Ամբակում Մարգարէին տեղւոյն վրայ,
ուր Հրեշտակ մի հանդիպեցաւ իրեն
կերակուր տարած ժամանակ եւ ը-
սաւ. « Այդ կերակուրը Բաբելոն
Դանիէլին տար, որ առիւծուց գու-
բին մէջն է »։ Եւ երբ Ամբակում
դժուարութիւն ցոյց կուտար ճա

Ճանապարհը չգիտնալուն, Հրեշտակը նորա գագաթէն ու վարսերէն բըռնելով վերուց օդին մէջ ու անմիջապէս Բաբելոն տարաւ, եւ գուբին վրայ դըրաւ զինքը. հոն առաւ Ամբակում զԴանիէլ և կերակուրը նորա տուաւ. Դանիէլ ԺԴ. 32—38:

Սուրբ Եղիայի վանքէն ելնելով դէպ 'ի Ճախակողմի Ճանապարհը առաջ երթալով, և յետոյ դէպ 'ի աջ շեղելով իջնենք բլրի մի ստորոտը գնալու. աջակողմը բլրին վրայ նոր շէնք մի կը տեսնուի, ուր առաջ միայն աշտարակ մի կար. այս տեղւոյս համար աւանդութիւնը կ'ըսէ, թէ Յակոբ նահապետ իւր վրանները հաստատեց և Ռաքէլը Բենիամինին որդին ծնելու ժամանակ մեռաւ: Այս տեղս ալ յառաջագոյն եկեղեցի կար:

Այժմեան նոր շէնքն որ Թանթուր կոչուի 1870ին հաստատուած է, Յովհաննու կարգի Հռովմէական խաչակիր ասպետներու ծախիւքն,

որուն մէջ այժմ կայ փոքրիկ մատուռ մը, հիւանդանոց ու դեղարան, Երուսաղէմի Աւստրիական նախկին Հիւպատոս Գօնթ Կապոտոկոյէ մարմինն աստ թաղուած է որ նոյն չէնքի հաստատութեան համար մեծ ջանք և աշխատութիւն տուած էր՝ իւր կենդանութեան ժամանակ։

Անկէ ալ առաջ երթալով նոր ճանապարհով և պարտիզի մը մէջ նոր շինուած տան մը պատին տակէն անցնելով կ'երեւի Ռաքէլ Գերեզմանը աջ կողմը, որու մօտերը նոր գերեզմաններ եւս կան Բեթլեհեմցի Արաբաց և Թամարացւոց։ Ծնընդոց գրքին ԼԵ Գլուխ 19 համարին մէջ կը յիշատակուի թէ Յակոբ նահապետ Միջագետքէն դառնալուն, իւր կինը Ռաքէլ Եփրաթայ (Բեթլեհէմի) ճանապարհին վրայ վախճանեցաւ եւ հոն թաղելով՝ վրան շի-րիմ մի կանգնեց, այս տեղւոյն վր է աւասիկ այսօրուան տեսնու-չէնքը։ Ա. Թագաւորութեանց գրք

Ժ. Գլ. 2 համարին մէջ եւս կը յիշուի Ռաքէլ գերեզմանը ։ Յովսեպոս Փլաւիանոս որ քրիստոնէութեան առաջին դարուն մէջ ծաղկեցաւ, յիշատակութիւնը կ'ընէ. Հնախօսութիւն Ա. 18 ։ Յետ այնորիկ դարձեալ ուրիշ պատմագրաց եւ ուխտաւորաց գրքերուն մէջ յիշուած կայ սոյն գերեզմանն ։ Վրան գմբէթ մի ունի, զոր 1870ին Մօնթէֆիօրէ երեւելի Հրէայն Եւրոպայէն եկած ժամանակ նորոգել տուաւ ։ Գերեզմանը քառակուսի շէնք մ'է, որուն մէջը տապան մի կայ մարդաչափ բարձրութեամբ. Մահմէտականք կը յարգեն սոյն տեղն՝ մանաւանդ Հրէից մեծ ուխտատեղի է, և առաւել կանայք կը յաճախեն՝ անոնք որ զուրկ են ծննդականութենէ ։

Սոյն գերեզմանին արեւմտեան ղմը գիւղ մի կ'երեւի նոր շէնքեով, որ է Պէյթ—Ճալա, ուր Յոյնք և Լատինք եկեղեցի ունին ։ Նաեւ [illegible] այգի և պարտէզ ըսածը, որ

Հայոց է, ուր տեղ ունին բաւական ձիթենիք. այս այգիին մէջ թէեւ բաւական հնութեանց հետքերը կը նշմարուին, սակայն 'ի վեր հանելու համար մեծաքանակ ծախուց կարօտութիւն կայ:

Ռաքէլի գերեզմանին քովէն անցնելով և քառորդ ժամ քալելով կը հասնինք Բեթլեհէմին մօտ, և ձախ ձեռքերնուս վրայ ճանապարհ է, և չոր քարերէ հիւսուած երկու ցանկապատի մէջ՝ ճանապարհէն 100 մեդրաչափ ներս, Դու—Բէ հոր ըսուած սառնիճը կայ: Այս հորին ջրէն ցանկացաւ Դաւիթ խմելու, երբ իր բանակաւ Ողոզոմայ այրին քովը կը կենար, ու ըսաւ. «Ո՛հ, ո՞վ էր թէ Բեթլեհէմի դրան քով եղած հորէն ջուր մի խմցնէր ինձ մէկը»: Անմիջապէս իւր զօրաց մէջէն երեք կտրիճներ Այլազգաց բանակը ճեղքելով գնացին և իւր փափագած հորէն ջուր քաշեցին բերին, բայց Դաւիթ փոխանակ այն ջուրը խմե-

լու՝ Աստուծոյ նուիրեց ըսելով .
և Քաւ լիցի ինձ որ այդ երեք մար-
դոց արիւնը արժող ջուրը խմեմ ,
որ իրենց մահը աչուըննին առնելով
գնացին բերին . Ա . Մնաց . ԺԱ . 17—19 :
Յիշեալ հորին քով ուրիշ երկու
սառնիճներ եւս կան , եւ հին շի-
նութեան մնացորդներ եւ միւսաիքով
շինուած յատակներ ալ կ'երեւին :
Շատ հաւանական է որ Վանօրէից
գրքին մէջ յիշատակուած Ս . Անա-
նիայի անուամբ Հայոց Եկեղեցին
այս տեղ եղած ըլլայ , որու համար
կ'ըսէ թէ բեթլէհէմի մօտ է :

Եւ դառնալով սոյն տեղէն եւ
կրկին մեր Ճանապարհը ձեռք առ-
նելով , յառաջ երթանք ձախակող-
մեան շաւղին մէջ որ քանի մի ոլո-
րուն Ճանապարհներէ անցնելով քա-
ղաքին մէջ կը հանէ , եւ այսպէս
յառաջանալով քաղաքին մէջէն կը
տեսնենք զմեզ Սուրբ Ծննդեան Ե-
կեղեցւոյ մեծ հրապարակին մէջ ,
ուր աջ կողմը կ'երեւի Հայոց վանքը ,

դիմացը Տաճարի երկաթեայ պզտիկ դուռը, և անոր հիւսիսային կողմը Յունաց գերեզմաննոցը եւ Լատինաց վանքը ։

Այս տեղ ուխտաւորք վար իջնելով իրենց ձիերէն, և երկաթեայ փոքրիկ դռնէն ներս մտած ժամանակնին երեք դուռ եւս կը տեսնեն պզտիկ բակի մի վրայ . դիմացինն է տախտակեայ դուռը, որոյ համար Հեթում թագաւորի ժամանակ շինուած է ըսինք, երես 211 . ձախ կողմինը պահարանի կամ յարդանոցի դուռ է Յունաց ձեռքը, որ նախ Հայոց ջաղացքն էր, ետքը Յոյնք յափշտակած են . իսկ աջ կողմինն է Հայոց վանքին դուռը, ուսկէ ներս մտնելով և պզտիկ դահլճի մի մէջէն անցնելով՝ աջ կողմը դրան կից եղած աստիճանները զմեզ վանքին վերնայարկը կը հանեն ։ Աստ պէտք է քի մի հանգիստ առնուլ սուրճ մի խ մելով ։ Հին ժամանակէն 'ի վեր ս վորութիւն է աստ եւս Դարպաս

կան տուրք մը տալ, 'ի պայծառու-
թիւն և 'ի շինութիւն Ս. Տեղւոյս,
որ անձ գլուխ 33 ղուրուշ է։

Բեթլեհեմի Հայոց վանքն ունի
յատուկ Տեսուչ վարդապետ մի, և
երկու ժամարարք, ժամարարներն
երկու ամիսն անգամ մի կը փոխուին,
ունի և տասնի չափ հասարակ միա-
բանք։

Վանքին մէջ կայ առանձին եկե-
ղեցի մը յանուն Ս. Աստուածածնի
զոր հիմնեց Գրիգոր Պարոն Տէր
Պատրիարքն 1621—1622 թուակա-
նին, նոյնպէս սորին յարկին մէջ
եղած խուց որուն դուռը դէպ 'ի
հիւսիս հրապարակին վրայ կը բա-
ցուի, և վանքին մէջ ուրիշ քանի
մը սենեակներ աւելցուց եւ նորո-
գութիւններ ըրաւ։

Գրիգոր Շղթայակիր Պատրիարքն
ուրիշ եկեղեցին 1727 թուա-
կանին նորոգելէն 'ի զատ ուրիշ ե-
կք սեղաններ եւս աւելցուց, եր-
կքն Եկեղեցւոյ մէջ յանուն սուրբ

Յովհաննու Կարապետին եւ սուրբ Աստուածածնի Նախավկային, և միւսն ՚ի յաւանդատուն յանուն Յովակիմայ եւ Աննայի։ Նմանապէս հիմակուան սորին յարկին վրայ եղած սեղանատան մէջ դուռ մը կար որ գետնափոր ճամբով մինչեւ Սուրբ Ծննդեան եկեղեցւոյն տակն եղած ստորերկրեայ մատուռները կը տանէր, այս դուռը մեծ աշխատութեամբ հիւսել տուաւ եւ տեղը մաքրելով յանուն Սուրբ Երրորդութեան Եկեղեցի մը շինեց, որ այժմ նոյն եկեղեցւոյ տեղն ինչպէս վերը ըսինք սեղանատուն է, ուր Ս. Ծննդեան խթման երեկոյին և առաւօտուն եկեղեցական հանդէսներն սուրբ Ծննդեան Տաճարին մէջ կատարուելէն վերի, Արքազան Պատրիարքն հանդերձ Միաբաններով և Ուխտաւորօք այս տեղ կուգան ընթրելու, որովհետեւ այդ երկու օրն բոլոր ուխտաւորք Սուրբ Աթոռոյս ծախքովը կը կերակրուին

Առնելմէ զատ նոյն երջանկայիշատակ Գրիգոր Շղթայակիր Պատրիարքին վերնայարկին վրայ հինգ մեծ սենեակներ շինել տալով, ներքին գաւիթը և արտաքին մեծ հրապարակը քարայատակել տուաւ, այն է սուրբ Ծննդեան Տաճարին արտաքին փոքր երկաթեայ դռնէն մինչեւ մեր վանուց արեւմտեան անկիւնածայրը։

Նոյն տարիները՝ 1732ին՝ Բեթլեհէմի մօտ եղած Ճանապարհի անցքը խիստ նեղ լինելուն, Կեսարացի Տալաս գիւղէն Մելիտոն իշխանը՝ որ Ս. Յակովբայ Եկեղեցւոյն մէջ ալ բաւական Յիշատակներ ունի, նոյն Ճանապարհն իւր ծախուք ընդարձակել տուաւ՝ որպէս զի Ուխտաւորք հանգիստ անցնին։

Վանքը ունի Պատրիարքարան մի մէկ մանր խցերով, մեծ Հոգետուն ի եւ Ուխտաւորաց եւ Միաբանից համար 16 սենեակ մանր և խոշոր։ Եկեղեցին է իւր տանիքը որ քաղաքի

հրապարակին վրայ կը նայի . հիւսի-
սային կողմէն կ՚երեւի Ցունաց սուրբ
Եղիայի վանքը և հարաւային կողմէն
Եփրատայ ձորերը և այլն ։

Այս համառօտ տեղեկութիւն-
ները առնելէն յետոյ իջնանք վար
Ս. Ծննդեան այրը մեր ուխտն և եր-
կրպագութիւնն կատարելու համար ։

Հոս Ուխտաւորաց առաջնորդողն
կը լինի կամ վանքին Տեսուչը եւ
կամ ժամարարաց մին հանդերձ սար-
կաւագաւ և դպրօք, և նախ կ՚իջնան
Տաճարին Մէ-նաւարր որանը՝ Հայոց
տախտակեայ մեծ դռնէն մտնելով .
անդ մէյմէկ վառուած մոմ տալով
իւրաքանչիւր ուխտաւորաց ձեռքը,
եւ « Խորհուրդ մեծ » Շարականը
երգելով՝ հիւսիսային փոքր դռնէն
եւ Հայոց դասին մէջէն անցնելով
կ՚իջնան Սուրբ Այրը. եւ հոն Աւե-
տարան կարդալէն՝ և « փառք 'ի բ
ձունս » ըսելէն յետոյ , համառ
ծանուցումով մը կը տեղեկացնէ

ռաջնորդող վարդապետը իւրաքան-
չիւր սուրբ Տեղիքը և անոնց վրայ
եղած խորհուրդները ։

Յիշեալ Այրը երկու դուռ ու-
նի, մին Յունաց հարաւային դասին
կողմէն 13 աստիճանով, եւ միւսը
Հայոց հիւսիսային կողմէ 16 աստի-
ճանով. և Այրը վերին Աւագ խո-
րանին ճիշտ տակը կ'իյնայ, որ Ա-
տեանին հետ մէկտեղ երկու կողմ-
նակի դասերէն 70 հարիւրորդամեդր
բարձր է ։ Հայոց դռնէն վար իջած
ժամանակնիս՝ վարի աստիճանին կից
ձախ կողմի Սեղանն է, Յիսուսի Քրիս-
տոսի Ծննդեան փեղը, որ Սեղանին
տակն է մարմարեայ յատակով եւ
կիսաբոլորակ ձեւով, որուն մէջտեղը
փոսիկ մի կայ արծաթեայ ճաճանչ մի
ագուցած, և բոլորտիքը Լատինե-
րէն այսպէս գրուած..

ԱՍՏ ԾՆԱՒ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ
Ի ՄԱՐԻԱՄԱՅ ԿՈՒՍԷՆ

Այս տեղ 16 կանթեղ կան մըշ-
տակա, 6ը Հայոց, 6ը Յունաց,

եւ կը Լատինաց ։ Այս սեղանին
վրայ միայն Հայք եւ Յոյնք կը Պա-
տարագեն՝ իւրաքանչիւրը իւր շար-
ժական Պատկերը դնելով ։ Ս. Պա-
տարագէն զկնի՝ նոյն Պատկերները
կրկին կը վերցնեն ։

Այս սեղանէն 3 մեթր դէպ ի
հարաւային արեւմտակողմը երեք
աստիճանով վար Մսուրը կ'իջնուի ։
որ ժայռին մէջ փորուած եւ մարմա-
րեայ քարերով մէջը զարդարուած է ,
ունի 2 1/2 մեթր երկայնութիւն եւ 2
մեթր եւ 30 հարիւրորդամեթր լայնու-
թիւն ։ Հիւսիսային արեւելեան ծայ-
րի սիւնով մսուրի մասարը երկուսի
կը բաժնուի , ուր տեղ եւ երեք ազգ
մէյ մէկ աշտանակ ունին մշտավառ
մոմերով ։ Այս սեղանոյս յարեւելեան
կողմը սեղան մի կայ Լատինաց յա-
նուն Երից Մոգուց , ուր ամէն օր Լա-
տինք աստ կը Պատարագեն եւ ու-
ըստ աւանդութեան՝ կանգնած էին
Մոգերը իրենց ընծայները մանուկ
Յիսուսին նուիրած ժամանակնին

Այն յանուն Երից Մոգուց եղած սեղանը Հին ատեններէ Հայոց սեփական էր (1)։ Նոյն տեղւոյն յարեւմտակողմը ժայռին մէջ փորուած ցածագոյն փոր մի կայ Մսուրի ձեւով, որու մէջ դրաւ ամենօրհնեալ Կոյսն Մարիամ իւր Աստուածային Որդին. այժմ տեղն մարմարներով զարդարուած է, ուր տեղ 6 մշտավառ կանթեղ ունին Լատինք. եւ պատին երեսները կերպասով պատած է եւ սակայն տակը կ'երեւի բուն ժայռը։

Ծննդեան Սուրբ Այրը 10 մեդր եւ 55 հարիւրորդամեդր երկայնութիւն եւ 3էն մինչեւ 4 մեդր լայնութիւն ունի. թէ գետինը և թէ պատին երեսները ճերմակ մարմարեայ խոշոր քարերով ծածկուած են. առաստաղը կամարով մի աղբա-

---

(1) Հանդէս. Պատմ. Ս. Երուսաղէմի. յէ. 285. եւ Բովանդակութիւն Ազգ. Սեփականութեանց երես 107—109. տպեալ յԵրուսաղ 1880։

ցուցած է որպէս զի կարենայ վերի
եկեղեցւոյն ծանրութեան դիմանալ,
բաց որում այրին բուն ժայռը կարծր
քարէ չէ ։ Առաստաղէն կախուած
11 կանթեղ ունին Հայք, 11 Յոյնք,
եւ 9 Լատինք ։ Դարձեալ 11 Պատ-
կեր ունին Հայք, որոնցմէ Լատին
միաբանք 7 հատը գողցան 1869ին.
Եւ անկէ յառաջ առաստաղին կեր-
պասեալ ծածկոցն այրելով՝ կանթե-
ղաց չուաններն ալ այրեցան ու
կանթեղներն ալ իյնալով խորտակե-
ցան. այրած ծածկոցը հնացեալ
ըլլալով, Լատինք կ'ուզէին որ իւր-
եանք նորոգեն առանձին, իսկ Հայք
եւ Յոյնք չէին թողուր, այս պատ-
ճառաւ փորձ փորձեցին ծածկոցը
այրելու, եւ յետոյ Հայոց պատկեր-
ներն ալ գողցան ։ Սուրբ Աթոռոյն
կողմէն Բ. Դուռը եղած բողոքոյն
վրայ Տէրութիւնը զիջանելով երկու
պատկերաց կրկին դրուելուն հր-
ման եղաւ եւ այն ատեն դրուեցաւ
մնացեալ Ե պատկերներէն Դ հա

ալ վերջերը դրուեցան, իսկ միայն տեղը Լատինք յափշտակեցին իրենց պատկերը կախելով։ Այժմ թէ Հայոց և թէ Յունաց պատկերները Լատինաց վարագուրին վրայ կախուած են, ըստ որում առաջ Այրին պատերը մերկ էին, բայց Լատինք յաջողեցան ամբողջ ծածկել 1874ին յատկապէս յԵւրոպա պատրաստել տուած պատկերազարդ վարագուրաւ։

Այրին յարեւմտակողմը դուռ մի կայ, ուսկէ անցնելով և փորուածոյ նեղ անցքի մի մէջէ գնալով Հայր. Յովսէփայ անուամբ մատուռիկ մի կը տեսնուի Լատինաց։ Ասկէ ստորերկրեայ ճանապարհ. կայ Լատինաց եկեղեցին ելնելու։

Յիշեալ Լատինաց եկեղեցին Սրբ-Բոնահոյն Կապուչիններէ անուամբ կառուցեալ է. ունի Աւագ խորան մի և երկու կողմնակի սեղաններ(1)։ Ներս

---

(1) Այն եկեղեցին 1880–1881 Թուականին

մնացած ժամանակներս այլ թեւի վրայ երկաթեայ վանդակով պատած առանձնաններ կը տեսնուին, ուսկէ կ՚իջնուի ՍՏՈՐԵՐԿՐԵԱՅ մատուռ մ՚ը : Հոս կը տեսնուին առանձին խորաններ ; որոնք են մատուռ մի յանուն Ս. Հերոնիմոսի, որ ժամանակ մի Բեթլէհէմի մէջ առանձնանալով քարի փորք մի ունեցած է, և աստ թաղուած կը համարի, որու գերեզմանին վրայ քիչ մի հեռու ուրիշ սեղան մի կանգնած է : Այլ եւ կը տեսնուին հոս սրբահօրն ԵՒՍԵԲԵԱՅ Գերեզմանը առանձին խորանով : Աւելի առաջ երթալով Ս. Հերոնիմոսի աշակերտող ԵՒՍԵԲԻՈՍ ԿՐԵՄՈՆԱՑՒՈՅՆ Գերեզմանը կայ խորանով մի . և ուրիշ ներքագոյն խորան մի յանուն ԲԵԹՂԵՀԵՄմանկանց, զոր Հերովդէս Մեծն կոտորել տուաւ : Վերջին սեղանն է

---

՚ի հիմանէ նորոգեցին . Աւստրօ—Հունգարի ՖՐԱՆՍՈՒԱ ԺՕԶԷՖ Ա. կայսեր հրամանաւ, որու ամբողջ ծախքն՝ ինքն կայսերական գանձէն շնորհեց :

Հայր Յովսէփայ անուամբ եղածը, զոր վերը տեսանք այն դրան քով. ուսկէ Սուրբ Այրին մէջ կը մտանուի:

Սուրբ Այրին հարաւային դռնէն դուրս Յունաց կողմը կ'ելնենք, որ է Եկեղեցւոյն Ձախակողմեան դասը, ուր հարաւային կողմը երկուցած աստիճաններով դռնէն իրենց վանքը կ'երթուի: Աւագ խորանին առեանը ելնելնուս՝ միջին դրան կից՝ հարաւային սիւնին վրայ Հայերէն հին գրեր կը տեսնուէին, զոր Յոյնք ասկէ իբր 40 տարի յառաջ յատակի մարմարները շինել տուած եւ ծեփած ժամանակնին նոյն գրերն ալ ծեփել տուին, անհետ ընելու համար: Իսկ հիւսիսային աջակողմեան դասուն մէջ, որ Հայոց սեփական է, երկու սեղան կայ, մին դասին Աւետմանն
այ, եւ միւսը ներսի կողմը անկիւ-
ցեալ մասին վրայ՝ որ կից է Աւագ
րանին. բարեպաշտութեան Հայոց՝
սուր թէ՝ Յիսուս Քրիստոս այս

տեղ թլփատուեցաւ։ Այս սեղանոյս վրայ տարին անգամ մի թոյլտուութիւն կ'ըլլայ Ղպտւոց և Ասորւոց իրենց Ծննդեան օրը Պատարագ ընելու ։

Սոյն հիւսիսային դասուն մէջի մարմարեայ սիւնին վրայ եղած հին պատին վրայ դեռ կը տեսնուին միւսիոնէ նկարուած քանի մի պատկերներ, որոնց մին կը ներկայացընէ զՔրիստոս, որ իւր Աստուածային կողը բանալով Թովմայ առաքելոյն շօշափել կուտայ. սոյն նկարներէն մնացորդներ կ'երեւին նաեւ դրսի սիւնազարդ սրահին կամարապատերուն վրայ երկու կողմը տեղ տեղ, մնացեալ մասերը նոր ծեփուած են. Եկեղեցւոյն առաստաղը փայտաշէն է եւ դրսի կողմէն արճճապատ ։ Յիշեալ արտաքին սրահին մէջ արեւմտեան երկու ծայրերը դիմաց՝ դիմաց երկու դուռ կը տեսնուին որոնց մին՝ Յունաց վանքը և միւս Լատինաց վանքը կը հանէ ։

Բեթղեհէմին մերձակայ եղած այլ Ուխտատեղիքն հետեւեալներն են .

Ա . Քառասնից Այրը ։ Այրաքին երկաթեայ դռնէն դուրս Հայոց վանքին անկիւնը անցնելով , դէպ 'ի Հարաւակողմը՝ ձախ դին եկած առջի փողոցին մէջ որու ուղղութիւնը դէպ յարեւելք է՝ յառաջ երթալով , գիւղին ծայրը աջ թեւի վրայ կ'իյնայ Քառասնից Այրը , զոր Լատինք Կաթին այրը կ'անուանեն , հետեւեալ պատմութիւնը մէջ բերելով ։ Մարիամ սուրբ Կոյսը Հերովդէսի սպառնալիքէն փախչելու համար Հայր Յովսէփայ հետ այս այրին մէջ կուգայ կը պահուըտի քանի մի օր , որ անկէ ըստ պատուիրելոյ Հրեշտակին՝ Եգիպտոս փախչի իւր Նորածին մանկանը հետ ։ Նոյն Այրին ուջ Ս . Կոյսը զՔրիստոս դիեցուցած սմանակ քանի մի կուսական կաէն կաթիլներ կը թափին գետնին այ , որոնք զօրութիւն կուտան

հողոյն՝ կաթ չունեցող ծծմար կա-
նանց կաթը առատացընելու, եւ
յիրաւի մինչեւ ցայսօր շատ կանայք
փափաքանօք կ՚առնուն յիշեալ Այ-
րին հողէն, որ փխրուն ճերմակ
քար մ՚ է։ Այս տեղւոյն Լատինք
քան զամէն ազգերը մեծ կարե-
ւորութիւն և յարգ ցոյց կուտան,
զոր թէպէտեւ ՚ի հին դարուց հե-
տէ ընդհանուր Քրիստոնէից ազ-
գաց սեփականուած է, որու ապա-
ցոյց է դուռը առանց նգի միշտ բաց
մնալը, այսու ամենայնիւ Լատինք
երբեմն երբեմն ոտք ելնելով իրենց
իւրացընելու համար ջանքեր ըրած
են, ինչպէս եւ 1865 ին գիշերանց
գաղտուկ արտաքին փոքրիկ բակին
պատերը նորոգելով՝ Այրին ալ կրգ-
պանք դրին, ասոր վրայ Հայք եւ
Յոյնք ոտք ելնելով եւ իրենց քով
եղած հաստատութեան թղթերն
ու հրամանագրերը ցոյց տալով
Բ. Դրան առջեւ իրենց համատ
ցական իրաւունքն վաւերացուցի

տարր վրայ հրամանն եկաւ որ նոր չէնքերը փլցուի և կղպանքը քակուի , այսու ամենայնիւ Լատինք միայն կղպանքը քակելով՝ Թէ դրսի եւ Թէ ներսի նոր շինուԹիւնները անեղծ պահելու համար դիմադրեցին , և մինչեւ ցայսօր դեռ այնպէս կը մնայ , և Բ. Դրան հրամաններուն գործադրուԹիւնը կախ կը կենայ , և սակայն այժմ ամբողջովին գրեԹէ իւրացուցած և դրան քով ալ պահապաններ դրած են , և ամէն շաբաԹ ալ կը Պատարագեն ։

Քառասնից սյրին մէջ քարափոր աստիճաններով կ'իջնուի ։ Յառաջագոյն , այսինքն 18—20 տարի առաջ , միայն անշուք սեղան մի կար մէկ կանԹեղով , և դուռը բաց մնալով՝ գիւղացիք Թէ Քրիստոնէայ և Թէ Մահմէտական , ձէԹ և մոմ կը տանին վառելու , այժմ այս սեղանը Լատինք ոչ միայն զարդարեցին , և ուրիշ քանի մի տեղեր և անձններն եւս խորաններ հաստա-

տեցին, պատկերներ և կանթեղներ կախեցին ։

Բ. Հայր Յովսէփայ տան տեղը ։ Քառասնից այրէն ելնելուն՝ դէպ 'ի աջ կողմի արեւելեան ճանապարհը ձեռք առնելով, 7 րոպէին կը հասնինք Հայր Յովսէփայ տանը տեղը, որ փոքր արտի մի մէջ և ճանապարհէն իբր 30 մեղրաչափ ներս՝ աջ դին է ։ Կիսաքոլորակ խորանի մի մնացորդէն յայտնի է յիշեալ տեղն, որ ժայռի մէջ փորուած է ։ Այս տեղն ալ ժամանակաւ եկեղեցի կար, որու քարափոր հիմերը դեռ կը տեսնուին ։ Աւանդութիւն կայ թէ Հայր Յովսէփ ամուսնութենէն առաջ այս տանը մէջ բնակած է, և ժամանակէ յետոյ երբ ամենասուրբ Կուսին հետ եկաւ, մէջին եղող տանտէրը կամ վարձակալը զինքը չընդունեց, եւ ստիպուեցաւ երթալ այրին մէջ բնակելու ։

Գ. Պէյթ-Սահուր ։ 100 մեղրաչափ աւելի դէպ յարեւելք լերանը ստ

րոպէ կը հասնինք, հոս իջնելէն յետոյ, դէպ յարեւելք և ետքը քիչ մի դէպ 'ի հարաւ շեղելով՝ 4 րոպէին Պէյթ-Սահուր (Հովուաց գիւղը) կը հասնինք, ուր կը բնակէին, ինչպէս կը կարծուի, այն հովիւները, որոց Տիրոջն Հրեշտակը՝ Յիսուսի Քրիստոսի Ծննդեան աւետիսը տըւաւ։

Դ. Բոոսի դաշտը։ Գիւղէն դուրս փոքրիկ դաշտ մի դիմացնիս կ'ելնէ, որ է Բոոսի դաշտը։ Այս տեղ եկաւ Հռութ հասկ քաղելու, որ Բոոսի հետ ճանչուորուելով՝ ամուսնացաւ հետը, եւ Դաւիթ մարգարէի մեծ հայրը Ովբէթը ծնաւ։

Ե. Հովուաց այրը։ Յետոյ դէպ յարեւելք ծռուելով, 12 րոպէին կը հասնինք Հովուաց այրը, քառակուսի գետնի մի վրայ, ուր կան ձիթենի-
ր՝ քարէ չոր պատով մի շրջապա-
ած։ Ըստ աւանդութեան՝ այս է
եշտակին հովուաց աւետիս տը-
ած տեղը, ուր Հեղինէ եկեղեցի

մի չինեց , և հիմակուան տեսնուա-
ծը անոր ստորերկրեայ յատակն է ,
եւ հին եկեղեցին անհետացած է ։
Այրին մէջ 21 ոտք աստիճաններով
կ'իջնուի ։

Հովուաց այրէն . 250 մեթր ետ
դառնալով եւ Պէյթ-Սահուր գիւղի
ճամբան թողլով, հիւսիսային արեւ-
մտեան ճանապարհը բռնելու է , և
յիշեալ գիւղին առջեւէն 9 րոպէի
չափ քալել անցնելէն յետոյ , 4 րո-
պէ մի եւս աւելի առաջ երթալով՝
ու ձախ ու աջ դին եղած ճանապարհ-
ները թողլով՝ ուղղակի գնալու է
դարուվեր , եւ մէկ քառորդին կը
հասնուի վանքին և սուրբ Այրի ե-
կեղեցւոյ առջեւի հրապարակը ։

Բեթլեհէմի մէջ և անոր մերձա-
կայքն եղած ուխտատեղիք ասոնք
են զոր ստորագրեցինք , ասոնցմէ
դուրս կան նաեւ մի քանի այցելու-
թեան արժանաւոր պատմական տ-
ղեր , ուր շատերը կը ցանկան ե
թալ տեսնել , որոց փափաքը լե-

նելու համար և մեք աշխատութիւն յանձն կ'առնումք իւրեանց առաջնորդելու ։ Նոյն տեղերն են հետևեալները՝ Ս. Գէորգայ վանքը, Կրնքեալ աղբիւրը և Հին ամրոցը, Սողոմոնի աւազանները, Նաեմայ բլուրը, Պարտէզ փակեալը, Ջրանցքը և Եփրատը ։

Ա. Ս. Գէորգայ վանքը ։ Բեթլեհէմի հարաւային կողմէն դուրս ելնելով եւ դէպ 'ի արեւմուտք չեղելով, 13 րոպէին քաղաքին ծայրը և Ռաաֆ — Սահէլին բռուած ձորին մէջ իջնելու ճանապարհը ձախ դին ձգելով՝ 2 րոպէին դէպ 'ի հարաւային արեւմուտք երթալիք ճամբան ձեռք կ'առնենք ։ Այս տեղ հասնելնուս Պէյթ-Ճալա գիւղը կը տեսնուի, և 5 րոպէ քալելով՝ ձախ թեւին վրայ նեղ ճամբայ մի կը հանդիպի . ասկէ անն՝ մը ճանապարհը քարուտ ու խուսարակոխ է ։

Առաջ երթալով, 22 րոպէ մի ևս Օ կողմը նեղ ճամբայ մի կ'ելնէ,

գայն թողլով դէպ 'ի յարեւմուտք երթալու եմք, եւ 12 բոպէ յետոյ հեռուանց աջ կողմի վրայ ձորի մէջ կը տեսնուի Ս. Գէորգայ Ցուլայ վանքը: Այս վանքին եկեղեցւոյն մէջ շղթայ մի կայ, ուր խելագար մարդիկ տանելով կը կապեն, և կը հաւատատեն որ շատերը շղթային զօրութեամբը զգաստացած են:

Բ. Հին ամրոցը եւ Կնձիւալ աղբիւրը: Աջ թեւին վրայ ուրիշ ճամբայ մի եւս թողլով, մեծ ճանապարհին մէջ յառաջ երթալու է, որ այս տեղ հասնելնէս յետոյ՝ դէպ 'ի հարաւային արեւմուտք կը ծռի և Ե բոպէլին Քալաաթ-էլ-Պուրաք կը հասնուի, որ աւազաններու բերդ ըսել է: Կը կարծուի որ այս ամրոցը Քէլաւուն շինած ըլլայ, որ Ջրանցքին ալ ինքը նորոգած է երեքտասաներորդ դարուն մէջ. նա է որ թրծած հողէ շինուած ապուգաններ գործածեց ջրանցքին համար:

Իսկ յիշեալ բերդը քառակու-

սի է՝ միջին դարու ձեւով, պարըս-պին ծայրերը աշտարակներ եւ ակ-ռաններ ունի. երկու երեք անկանոն զօրք կը հսկեն այս տեղ թէ Քէֆրոնէ Ճանապարհը եւ թէ ջուրերը պահ-պաններու համար։ Այս տեղ Իպրա-հիմ փաշայի Ֆէլլահներու դէմ պա-տերազմ մի կորսնցուց։

Բերդին արեւմտեան կողմը 100 մեդրաչափ հեռու կ'երեւի պզտիկ շէնք մի, որու տակն է Աղէխ-ր նըխէ-ալը։ Ցած դուռ մի ունի և 26 ոտք աստի-ճանով ստորերկրեայ խուցի մի մէջ կ'իջնուի, տեղը մութ ըլլալուն, պէտք է մոմ ունենալ ու վառել։ Խուցը կամարաշէն է և պատերուն մէկ մասը ժայռին մէջ փորուած են։ Խուցին երկայնութիւնն է 12—13 մեդր և լայնութիւնը 3—4։ Գետնին մէջտեղը պզտիկ աւազան մի կայ,
-ր մէկ կողմէն ջուրը կու գայ կը
-ցուի և միւս կողմէն դուրս կ'ել-
է։ Արեւմտեան կողմը դուռ մի
-այ, ուսկէ երկրորդ խցի մէջ կը

մինուկ՝ նոյնպէս վիմափոր քառամասին չև կամարակապ. Հոս Հարաւային պատին երեսը Միհրապի պէս տեղ մի կայ և մէկ մ' ալ արեւմըտեան կողմը, ուսկէ ջուրը խիստ պայծառ ու փայլուն դուրս կը բղխէ, և ագուգայով մի աւազանի մէջ կը ժողուի, և անկէ ելնելով առաջին խցին աւազանին մէջ կը հոսէ։ Տեղացիք Աղբիւր Կնքեալին Ռաս-էլ-Այն կ'ըսեն, որ աղբիւրակին գլուխն ըսել է։ Ասոր յիշատակութիւնը Ս. Գրոց մէջ կայ. Երգ. Դ. 12։

Բերդին Հարաւային արեւմտակողմը պզտիկ աւազան մը կայ վրան շէնքով ծածկած, ուր Կնքեալ աղբիւրէն ջուր գալով, յետոյ կամ Սողոմոնեան երեք մեծ աւազաններուն մէկուն մէջ կը թափի, և կամ ջրմուղով Բեթլեհեմ կուգայ եւ անկէ յԵրուսաղէմ։

Գ. Սողոմոնեան աւազանները։ Աւըսած տեղէս 30 մեդրաչափ անդին է Սողոմոնեան աւազաններուն առաջին

տոյն աւազաններին այսպէս Սողոմոնի անուամբ կը կոչուին , բստ որում կը կարծուի թէ՝ Սողոմոն ինքն շինած ըլլայ փակեալ պարտէզները ջրելու համար ։

Սոյն առաջին աւազանին եզերքովը , որ 116 մեդր երկայնութիւն , 70 լայնութիւն և 7—8 մեդր խորութիւն ունի՝ դէպ 'ի արեւելք գնալով՝ երկրորդ աւազանն է , ասիկայ ունի 129 մեդր երկայնութիւն , 70 լայնութիւն, 12 խորութիւն ։ Ասկէ ալ 49 մեդր հեռու երրորդ աւազանն է , որ ամէնէն մեծ է , ունի 177 մեդր երկայնութիւն , 64 լայնութիւն , և 15 խորութիւն ։ Այս աւազաններուն ջուրը անձրեւէն է , առջի երկուսին ջուրը երրորդին մէջը կը հոսի , և անկէ թողլով պարտէզները կը ջրեն ։

Գ ․ Եղեմայ Բլուրը ։ Ճանապարհը սրտունակելով դէպ 'ի արեւելք , մուղը աջ դին թողլով , 6 րոպէ ալելէն յետոյ , ձորին միւս կողմը

աջ թեւին վրայ բլուր մի կ'երեւի աւերակներով լեցուն, որ կը կարծուի թէ հին Եռեմ ըսած տեղն է, ուր Սամփսոն Այլազգիներուն հունձքերը այրելով, փախաւ եկաւ հոս այրին մէջ պահուեցաւ. Դատ. ԺԵ. 8։ Իսրայէլի թագաւորութիւնն երկուսի բաժնուելէն յետոյ, Ռոբովամ այն բլուրին վրայ քաղաք մի շինեց, եւ Եթամ կամ Եթան անունը դրաւ անոր. Բ. Մնաց. ԺԱ. 6։

Այս բլուրին ստորոտէն կը սկսին Սողոմոնի Փակեալ Պարտէզ ըսածները։

Ե. Եփրաթ Գիւղը։ Եօթը րոպէ մի քալելով պզտիկ գիւղ մի կը հասնինք Արտաս անուն, զոր Հայք Եփրաթայ Գիւղ կ'անուանեն, որ լերանը զառ 'ի վայր կողմը շինուած է՝ աջ դին, եւ ունի 600ի չափ բնակիչ։ Իպրահիմ փաշայն 1831 թուականին կործանել տուաւ բոլոր գիւղը, այն պատճառաւ որովհետեւ Գիւղացիք յանձնառու չ'եղան տուրք վճարելու, և ետքէն նոր սկսան շինել։ Այս տե-

ղէն բոլոր պարտէզները մէկ տեսութեամբ մարդոյս աչացը կ'երեւին Եփրատայ յորձին մէջ, ուր արեւուն ճառագայթներուն տաքութիւնը մէջը ամփոփուելով, և ջուրին ալ պառատ լինելովը՝ խիստ բարեբեր ըրած են հողը ։

Պարտէզները գիւղացւոց են, բայց մեծ մասը Մէրդին անուն քաղաքական Հրէայի մի կալուածք եղած է, որ շատ տեսակ ընդեղէններ և բանջարեղէններ առաջ կը բերէ ։ Ցիշեալ անձը 1860ին իւր պարտիզին արեւելեան կողմը փորել տուած ժամանակ մեւսինով չինուած գետնայատակ մի դտնուեցաւ՝ եւ կորնթեան ձեւով սիւներու եւ սիւնախոյակներու բեկորներ, շատ հաւանական է որ Սողոմօն հոս պալատ մը շինել տուած ըլլայ ։

Ճանապարհը շարունակելով ջրանցքին շաւղովը, կէս ժամէն Բեթհէմի դիմացը կը գտնենք զմեզ, դժուարին ճանապարհներու վրայ

կոխելով, կը հասնինք Հայոց վանքին պատին քով եւ անկէ դէպ ՚ի արեւելք դարձած ժամանակնիս Ս. Ծննդեան Տաճարին դուռը կ՚երեւի ։

Հոս կը լմննայ մեր Եօթներորդ այցելութիւնը, եւ բարեպաշտ ուխտաւորք կրնան այլ եւս միայնակ եւս դառնալ յԵրուսաղէմ այն ճանապարհաւ որ եկան ։



# ՈՒԹԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## Ի ՏԱՃԱՐՆ ՍՈՂՈՄՈՆԻ, ԿԱՄ ՄՋԿԻԹՆ ՕՄԱՐԱՑ

ՄՈՐԻԱ ԼԵՌԸ։ Այս հռչակաւոր լեռը՝ Սիօն և Ակրայ լերանց (որոնք հին Երուսաղէմը կը կազմէին) արեւելեան կողմը կ'իյնայ։ Աւանդութիւն մի կ'ըսէ թէ, Հայր Աբրահամ այս տեղս ուզեց զոհել իւր որդին Իսահակը։ Դաւիթ իւր ժողովուրդը աշխարհագիր ընելուն համար զԱստուած բարկացընելով, և 'ի պատիժ իւր այս յանցանացը մահ խնդրելով՝ երեք աւուր մէջ 70,000 մարդիկ մեռան։ Եւ աղաչեց զԱստուած որ այս սոսկալի պատուհասէն զինքը ազատէ, ուստի Գադ րգարէն Աստուծոյ կողմէն եկաւ քով և հրամայեց որ Ոռնայի բուսացւոյ կալին մէջ տեղ՝ ուր ոիա լերան վրայ էր սեղան մի

կանգնէ, և հօն Տիրոջը զոհ մատուցանէ։ Դաւիթ հնազանդեցաւ, և 600 սիկղ(1) ոսկւոյ հատուցանելով գնեց յիշեալ կալին տեղը, և զոհը մատուցած ժամանակ երկնից հուր իջնելով լափեց զայն։ Ընդունեց Աստուած և կոտորածը դադրեցաւ. Ա. Մնաց. ԻԱ. 1-28։ Աստ վրայ Դաւիթ 'ի նշան երախտագիտութեան իւրոյ ուզեց նոյն տեղւոյն վրայ տաճար մի կանգնել՝ Ճշմարիտ Աստուծոյն, բայց Աստուած իմացուց իրեն որ ըսած Տաճարն իւր որդւոյն ձեռօքը պիտի շինուի, այն է Սողոմոնի, որ իւր թագաւորութեան չորրորդ տարին Տաճարին հիմերը դրաւ, եօթն տարուան մէջ լրացաւ, եւ անոր մէջ դրաւ Տապանակ ուխտին։

Տաճարն իբր 34 տարի փառաւոր և պայծառ մնաց, յետոյ Եգիպտոսի

(1) Մէկ սիկղ կը կշռէ $4\frac{86}{100}$ տրամ, հետեւաբար՝ մէկ սիկղ արծաթին արժէքն է 13 ղրուշ, և մէկ սիկղ ոսկւոյն արժէքն է 208 ղրուշ։

Սիսակ թագաւորն գալով կողոպտեց զայն , այնուհետեւ քանի մ’անգամ եւս այլ և այլ թշնամիներու ձեռքով աւարի առնուելով ՚ի վերջոյ այս շէնքն 476 տարի յետոյ կամ 588 տարի նախ քան զՔրիստոս , Բաբելացւոց Նաբուգոդոնոսոր թագաւորին ձեռօք այրեցաւ . Դ . Թագ . ԻԵ . 9 : Բ . Մնաց . ԼԶ . 17—20 : Կիւրոս Պարսից թագաւորը Քրիստոսէ 536 տարի առաջ հրաման տուաւ կրկին շինութեան :

Սակայն երկրորդ Տաճարը Զօրաբաբելի ձեռօք շինուեցաւ՝ առջինէն շատ նուաղ փառօք . Անգ . Բ . 3 . յետոյ Անտիոքոս Եպիփանէս Քրիստոսէ 168 տարի առաջ անհամար մարդիկ սպաննելէն յետոյ՝ Տաճարին մէջ գտնուած ինչ որ թանկագին բան կար , յափշտակելով Ողիմպեան — ամազդայ պատկերն ալ հոն կանգնելով Տաճարը պղծեց . Ա . Մակ . Ա . : Երկու տարի յետոյ Յուդա Մաբէ մաքրեց Տաճարը եւ Ճշմարիտ

Աստուծոյ պաշտօնը կրկին հաստատուեց:

Գոմկէոս բուռն զօրութեամբ տիրեց քաղաքին, մտաւ Տաճարին մէջ, բայց ձեռք չդպցուց, այլ ընդհակառակը յարգութեամբ վարուեցաւ:

Յիսուս Քրիստոսէ 17 տարի առաջ Մեծն Հերովդէս Տաճարը վերանորոգեց, Յովսէփ. Ա. 5. 10,000 գործաւոր, 1000 կառք և 1000 ալ քահանայ աշխատցընելով, որոնք միայն կրնային ներս մտնել. այս շինութիւնը 46 տարի տևեց կ'ըսէ Յովսեպոս Պատմագիր. և սակայն այս շինութեան վրայ տարբեր կարծիքներ և պատմութիւններ կան:

Այն Տաճարին մէջ երևցաւ Տիրոջն հրեշտակը՝ Զաքարիա Քահանային, Նորա որդւոյն Յովհաննու ծննդեանը աւետիսը տալու: Աս տեղ եկաւ Մարիամ, ամենասուրբ Կոյսն իւր անդրանիկ որդին Տիրոջ ընծայելու, ուր Ծերունին Սիմէ

փառք տուաւ Աստուծոյ որ արժանի ըրաւ զինքը աշխարհիս Փրկիչը տեսնելու ։ Յիսուսի Քրիստոսի համբարձմանէն 37 տարի յետոյ Տիտոս գալով՝ ուզեց այս Տաճարը անվնաս պահել, բայց իւր ջանքերն 'ի դերեւ ելան եւ Տաճարն հրոյ ճարակ եղաւ, ըստ Յովսեպոսի՝ ճիշդ նոյն ամսուան մի եւ նոյն օրը՝ յորում առաջին Տաճարը այրած էր Նաբուգոդոնոսորի ձեռօք, այսինքն՝ Աբ (Յուլիս) ամսոյն 10 ին ։

Ադրիանոս 134 Թուականին կործին չինեց քաղաքը եւ Իլէա կոչեց, եւ յիշեալ Տաճարին տեղւոյն վրայ Արամազդայ անուանը մեհեան մի կանգնեց, եւ նոր քաղաքին տեսուչները Տաճարին մօտ 'ի պատիւ Ադրիանոսի արձան մի տնկեցին ։ Հրէայք դրամով Թոյլտուութիւն ըս-…ցան նոյն կայսրէն տարին ան-…մ մի Երուսաղէմ գալու եւ Տաճարին աւերակաց վրայ ողբալու ։

Հեղինէ Թագուհին եւ որդին

Կոստանդիանոս այս Տաճարին կործանեցին 327 ին, բայց արձանին չէրպան, որ ժամանակ մի եւս մնաց։

Յուլիանոս անօրէնն իւր ուրացութենէն յետոյ 361 ին արեւելք եկած ժամանակ՝ Յիսուսի խօսքերը ստելու համար՝ հրաման տուաւ Հրէից որ Տաճարին աւերակները փորեն և նորէն շինեն, բայց հիմերուն տակէն կրակ ելնելով և գործաւորները այրելով վերջ տուաւ գործին։ Ասկէ յետոյ քաղաքին բնակիչները, ինչպէս աւանդութիւն է, ամայի տեղ մի նկատելով զայն, աղբանոց ըրին։

Քրիստոսի 636 թուին՝ Օմար Խալիֆայն իպն Խաթթապ, որ Մէհմէտ Ա. օրէնսդրին երրորդ յաջորդն էր Երուսաղէմին տիրելով, ուզեց որ գտնէ այն տեղը ուր Յակոբ նահապետ քուն եղած տեղը տեսիլք" մէջ տեսաւ գետնէն մինչեւ երկ
քը բարձրացած սանդուղը։ Խա
ֆային առաջնորդողը այս տեղս ց

տուաւ իրեն , եւ նա հաւատալով
որ իւր փնտռած տեղն է , մաքրել
տուաւ գետինը , նուիրական ժայ-
ռը դուրս ելաւ եւ Օմար ճիշդ նոյն
տեղւոյն վրայ շինեց գեղեցիկ մզկիթ
մը , ուր շինուած էր յառաջագոյն
Սողոմոնի ձեռօք Աստուծոյ Տաճա-
րը , եւ զոր 50 տարի յետոյ Մրուա-
նայ որդի Աբդ—էլ—Մէլէք ամիրապե-
տը աւրել տալով զայն՝ նորէն կանգ-
նեց աւելի փառաւոր . եւ հետզհե-
տէ ուրիշ ամիրապետներ եւս գե-
ղեցիկ սիւներով , միւսիոններով եւ
շքեղ վանդակներով ճոխացուցին ։
Բայց ութերորդ դարուն երկրաշար-
ժէ մը իյնալով , յետոյ դարձեալ
որքան որ նորոգուեցաւ , սակայն
առջի շքեղութիւնը չունեցաւ ։ Այն
Տաճարն՝ կամ լաւ եւս է Օմարայ
Մզկիթն , սովորութիւն եղած է
* սարբակաց՝ Սողոմոնի Տաճար ա-
-ւանք կանչել , վասն որոյ մենք
ս շատ տեղ Պատմութեանս մէջ
ն անունը գործածեցինք ։

Խաչակիրք 1099 ին տիրեցին Տաճարին՝ տասն հազար Մահմէտական սպաննելով մէջը, և եկեղեցւոյ փոխարկելով՝ Ապառաժին վրայ սեղան մի կանգնեցին ։ Իսկ 1187 ին Սալաէտտին կրկին առաւ և նախ Քրիստոնէից տրեամբ լուանալէն զկնի, դարձեալ ջրով՝ և ապա վարդեջրով լուացին ու Մզկիթ ըրին, որ մնաց մինչեւ ցայսօր . և Սալահէտտին գըրով սահման ու արգելք դրաւ, որ Քրիստոնեայ մէկը չի մտնայ հոն, և՛ մտնողը մահով պատժուի և կամ հաւատքը ուրանայ, վասն որոյ արգիլեալ էին մինչեւ մօտ տարիներս որ և իցէ ուրիշ կրօնքէ եղող անձինք ներս մտնել, և մտնողը իբր սրբապիղծ՝ մահուամբ կը պատժուէր ։ Խրիմու պատերազմէն յետոյ Եւրոպական Դեսպանաց միջնորդութեամբ սոյն արգելքը քիչ քի վերցաւ, և հիմակ Եւրոպացիք ի րենց Հիւպատոսաց ձեռօքը և ա րեւելեան Քրիստոնէայք՝ Հայք և

Ցոյնք իրենց վանուց Թարգմանչե-րուն ձեռօքը կրնան հրաման ըն-դունիլ կառավարութենէն, քովերը-նին զօրական մը կը տրուի և վան-քերու պահակներն առաջնորդելով իրենց կրնան խումբ խումբ պտտե-լու երթալ, ուր տեղը Շէյխերէն մէկը իրենց կ'առաջնորդէ ցոյց տա-լով ամէն մասերը, թէ Տաճարին մէջ և թէ դուրսը, որու փոխարէն կը պարտաւորին ուրաքանչիւր ոք 4—5 դահեկան տալ իբրև պար-գեւ։ Ուրբաթ օրերն արգիլեալ է պտտել, ինչպէս և Ռամազան ամսոյն մէջ։

Արդի Տաճարը ուր պիտի այցե-լենք՝ շինուած է ընդարձակ դաշտի մը կեդրոնը, դաշտին տարածու-թիւնն է 150 հազար քառակուսի մետր 500 մետր երկարութեամբ ՚ի հիւսիսէ ՚ի հարաւ, եւ 300 մետր լայնութեամբ արեւելքէ յարեւ-մուտք. և ունի տասն և չորս մեծ դռներ՝ որք են հետեւեալներն։

Արեւելեան կողմէն երեք դուռ ունի՝ առաջինն եւ երկրորդն զոյգ-դռներ են քով քովի باب التوبة Պապ-էլ-Թէօվպէ, այսինքն դուռ զղջ-ման, باب الرحمة Պապ-էլ-Րահմէ, այն է դուռ ողորմութեան, որ քարուկիրով հիւսուած են և զոր արդէն տեսանք դրսի կողմէն մեր երկրորդ այցելութեան ժամանակ երես 82. և որոց դիրքին ձեւին և շինուածոց վրայ քիչ մը վերջ եւս պիտի խօսինք. և երրորդն՝ باب البراق Պապ-էլ-Պըրագ, որ Մահմէտականաց քով շատ յարգի էր, այս դռնէն մտած ժամանակնին ամենայն ջեր-մեռանդութեամբ երկու կողմի շէ-մերն համբուրելով կը մտնէին, ո-րովհետեւ ըստ իւրեանց աւանդու-թեանց Մէհէմմէտ Տաճարը մտած ժամանակը այս դռնէն մտնելով իւր ձին ալ այս դրան կապած է, և աս դէն Պըրագ Մէհէմմէտի ձիուն նուն է, այս դուռն ալ այժմ գոց

Հիւսիսային կողմէն եւս եր

դուռ ունի՝ առաջինն է՝ باب الاسباط Պապ—էլ—Էսպաթ, այսինքն՝ Ցեղերու դուռ, կամ Պապ-էլ-Սիթթի Մէրիէմ՝ այսինքն դուռ Աստուածածնի (1), երկրորդն է՝ باب الحطة Պապ-էլ-Հըթթա, երրորդն է՝ باب شريف الانبيا Պապ-Շէրիֆ-էլ-Էնպիյա, կամ باب الدويدارية Պապ—էլ—Տուվէյտարիյէ, կամ باب العتم Պապ—էլ—Ըթմ, այսինքն՝ Մութ դուռ:

Արեւմտեան կողմէն ութ դուռ ունի՝ առաջինն է՝ باب الغوانمة Պապ—էլ—Ղավանիմէ, երկրորդն է باب النظر Պապ-էլ-Նազըր, կամ باب علادين البصيرى Պապը Ալաէտտին—էլ—Պըսայրի, երրորդըն է՝ باب الحديد Պապ-էլ-Հատիտ, այսինքն երկաթի դուռ, չորրորդն է՝ باب سوق القطانين Պապ-Սուգ-էլ-Գաթթանին, այսինքն՝ Դուռ բամբակի շուկայի, հինգերորդն է՝ باب المتوضا Պապ-էլ-Մէթավազզա, այսինքն՝ Լուացանի, կամ Ապտէստի դուռ, վեցե-

(1) Այս դուռն երբեմն Հօսէյն դուռ ալ կը-ւէր:

բորդն է՝ باب السكينة Պապ-էլ-Սէքինէ , կամ باب الطقرة Պապ-էլ-Թագանէ , այսինքն Սուտանցւոց դուռ , եօթներորդն է՝ باب السلسلة Պապ-էլ-Սիլսիլէ , այսինքն՝ Շղթայի դուռ , ութերորդըն է՝ باب المغاربة Պապ-էլ-Մէղարբէ , այսինքն՝ Մաւրիտանացւոց դուռ , ընդ ամենը տասն և չորս դուռ ։ Կան և այլ քանի մը մանաւոր փոքրիկ դուներ՝ որոց մին դատարանի մէջէն է , և որք յիշատակութեան արժանի կարեւորութիւն մը չունին և մանաւանդ անուն այլ չունին ։

Ուխտաւորք հասարակօրէն Պապ-էլ-Ղավանիմէ կոչուած դունէն կը մտնեն , որ հիւսիսային արեւմտեան անկիւնը հին Սէրայէն մօտ է , եւ Հարէմ-էլ-Շէրիֆի մեծ հրապարակը կը հանէ ։ Ձախ դին կ'երեւի այն ժայռին երեսը , որու վրայ շինուած էր Անտոնիեան աշտարակը , զոր Շիմւոն Մակաբէի որդին Հիւրկանո մեծ քահանայապետը շինեց Քրիստոսէ 120 տարի յառաջ ։

Այլ կողմէն Քրդէ բնակած բոլո-
րակ և գմբէթաւոր աղօթարանի մի
քովէ կ'անցնուի , այս տեղ պահ-
ուած կը կենայ նուիրական ժայռին
(Էշ—Սախրա) մէկ մասը , որու վրայ
ըստ Մահմէտականաց՝ Յակոբը նա-
հապետ պառկեցաւ և սանդուխքին
տեսիլքը տեսաւ ։ Յետոյ գեղեցիկ
բայց ցամաք աղբիւրի մի կը հանդի-
պինք , ուսկէ դէպ 'ի հարաւ շեղե-
լով կ'անցնինք Սրահ Հեթանոսաց բնակած
տեղւոյն մէջէն մինչեւ վեց ոտք աս-
տիճաններուն քով և վեր կ'ելնենք
քառահատակ գեղեցիկ բակին վրայ
որ Յովսեփոսին Սրահ Իսրայէլացւոց
կամ Տաճար ըսածն է , որ պատով մի
շրջապատուած էր յառաջ։ Այս տեղ
Յիսուս Քրիստոս շատ հրաշագոր-
ծութիւններ ըրած է , այս տեղ գը-
տան զինքը իւր ծնողքը՝ երբ նա
ուսուցիչներուն հետ հարցմունքներ
ընէր , եւ ասկէ դուրս հալածեց
վաճառականներն ու սեղանաւոր-
րը , այս տեղ Մարգարէացաւ Տա-

Ճարքին աւերուածը, զոր Տիտոս 37 տարի յետոյ եկաւ կատարեց։ Աստ հեթանոսաց արգիլեալ էր մտնել։

Օմարայ Մզկիթին արեւելակողմը, որ սոյն քալլին վրայ է, տասնանկիւնի շէնք մը կ'երեւի վրանաձեւ՝ 17 սիւնով, ասիկայ Ողջակիզաց սեղանին տեղւոյն վրայ է, այս տեղանին եւ Տաճարին մէջտեղը քարկոծուեցաւ Զաքարիա (Ազարիա) որդին Բարաքեայ. Բ. Մնաց. ԻԴ. 20, 21։ Մահմէտականք այս տեղւոյն Մահքէմէի-Տաուտ, կ'ըսեն, այսինքն՝ Դաւթի դատարանը։

Գանք հիմայ արդէ Մզկիթին որ Օմարայ անուամբը կը յիշուի, այս ալ Քուպպէթ-էլ-Սախրա կը կոչուի, որ ժայռին գմբէթն ըսել է, ութանկիւնի է, ամէն մէկ անկիւնին երկանըրը՝ որ մարմարով եւ ճինիով զարդարուած է՝ 20 մեթր է, եօթը պատուհան ունի գունաւոր ապակիներով, եւ վրան պղնձապատ գմբէթ։ Չորս դուռ ունի, արեւելեանը՝ Գ

—էլ—Տաւոփ, հիւսիսային դուռը Պաղ—էլ—Չէննի, այն է՝ արքայութեան դուռ, արեւմտեանը՝ Պաղ—էլ—Նասր, հարաւայինը՝ Պաղ—էլ—Նըդլէ, կը կոչուին:

Ուխտաւորք արեւելեան դռնէն ներս կը մտնեն, բայց պէտք է որ ներս չը մտած ոտից ամաններն հանեն, ներքին կողմը քիչ մը մութ է. կեդրոնական մասը երկու ութանկիւնի շրջապատով բոլորած է, առաջինը արտաքին որմով, երկրորդը ութ մոյթերով և 16 ընտիր մարմարեայ ընտիր սիւներով, որոնց բունը միակտուր է: Մզկիթին վերի կողմերը բոլոր միւսիններով և ոսկեզօծով ծածկուած են. և գրեթէ բոլոր ներքին կողմի պատերուն վրայ տեղ տեղ Ղուրանէն հատուածներ կան ոսկէգրով դրոշմուած: Բուն դրոնը չորս մոյթով և 12 սիւնով ցուած և անոնց միջոցները եր-թեայ գեղեցիկ վանդակներով պատած են, յետոյ դարձեալ ուրիշ

վանդակ մի կայ տախտակեայ և ար-հեստաշէն , որով շրջապատած է Սախրան այսինքն Մուստաֆա Աղայ բնակած ժայռը ։ Ժայռին երեսը բաց է եւ անհարթ ու բոլորակ ծակ մի ունի մէջտեղը ուղղահայեաց , եւ հիւսիսային ու արեւմտեան մասերը տափկացած են , ատենօք ատոր վրան՝ մարդաչափ բարձրութեամբ կանանչ ու կարմիր կերպասէ շինուած խէմէ կախուած էր , որ տեսակ մը վրան մ'է , բայց այժմ սոյն վրանը վերցուած է . Մահմետականք այս խէմէն տեսնելով՝ ըստ իւրեանց աւանդութեան կը յիշէին Աստուծոյ Ադամին տուած վրանը , երբ Մեքքէի քով լերան մի վրայ Եւան գըտաւ կ'ըսեն հարիւր տարի որոնելէն յետոյ ։

Այս ժայռը Ուռնային կալն է , զոր Դաւիթ Յեբուսացիներէն գընեց , որու վրայ շինուեցաւ յետոյ Սողոմոնեան տաճարը եւ Տապանա ուխտին հոն դրուեցաւ , և կոչեցա

Արքունիքին. Արքայ, ուր տարին մի անգամ միայն մեծ քահանայապետը կը մտնէր ։

Ժայռին արեւմտեան կողմը ձեռաքի նշան մի կայ, որ Գաբրիէլ հրեշտակապետինն է կ'ըսեն Մահմէտականք, եւ ինչպէս Թուրքը պատմութեամբ մի եւս կը հաստատեն, զոր մէջ բերելու հարկ չկայ հոս ։

Հարաւային արեւմտեան անկեան դիմացը տախտակեայ շրջանակի մէջ՝ բարակ, փայլուն, եւ մութ կապոյտ գունով քար մի ցոյց կուտային առաջնները 80 հարիւրորդամեդր լայնութեամբ ու երկարութեամբ, եւ որուն ետեւի կողմը Վահան մի կախուած էր, այս Վահանին համար Համզային է կըսէին որ Մէհէմմէտի հաւատարիմ ընկերն ու հօրեղբայրն էր ։ Վահանին վրայ անորոշ նկարներ կ'երեւէին եւ միայն սիրամարգ մի յայտնի կը տեսնուէր զոր վերջին տարիներու նորոգութեան ժամանակ կառավարութիւնը վերցուց յիշեալ Վահանն ։

Սախրայի Հարաւային արեւմտա-
կողմը տեսակ մի վանդակ կայ եր-
կաթի, և միշտ փակ կը մնայ և մէջ
տեղը ծակ մի ունի, որու մէջէն ձեռ-
քերնին խոթելով Մէհէմմէտի մէկ
ոտքին Նիւթը կը շօշափեն Մահմէտա-
կանք և կը յարգեն, Կմախքը մարմա-
րեայ քարի մի վրայ է, հոս է կ՚ըսեն
նաեւ Մէհէմմէտի գլխուն մազէն
քանի մը հատը ։

Հարաւակողմը կ՚երեւի մարգա-
րէին (Մէհէմմէտին) դրօշը որ իւր
նիզակին վրայ պլլուած է, և Օմարայ
Նշանը (Սանճագ) արձակ թողուած ։
Այն տեղը կ՚երեւի նաեւ Էպ—Պէքրա-
գի թամբերը, ինչպէս քիչ մ՚առաջ
ըսինք, Պուրագ Մէհէմմէտի ձիուն
կամ ուղտին անունն է ։

Տաճարին հիւսիսային կողմը
Պապ—էլ—Ջէննէ ըսած դրան առա-
ջը շրջաբոլոր տեղւոյն մէջ յա-
տկս (Նէգմ) քարէ տախտակ մի կայ
որու վրայ Մէհէմմէտ 19 հատ ո
կի գամեր գամած է, և ասոնք ա

խարհիս տեւողութեան ժամանակը ցոյց կուտան , և իւրաքանչիւր դար վերջանալուն գամբրէն մին կը քակուի , աներեւոյթ կը լինի կ'ըսեն Մահմէտականք ։ Նաեւ կը յաւելուն , թէ օր մի սատանան վերջիչեալ դռնէն ներս մտնելով՝ սկսաւ այս գամբրը քակելով հանել որ շուտով աշխարհիս վախճանը տեսնէ , բայց Գաբրիէլ հրեշտակապետ վրայ հասնելով հալածեց զինքը սրբավայրէն , այժմ այն գամբրէն չորս հատ միայն մնացած է , վերջին ժամանակներս կառավարութիւնն այն տեղի շէյխերուն պատուիրեց որպէս զի նոյն պատմութիւնն ուրիշ անգամ այլ եւս չի պատմեն ։

Հարաւային արեւելեան կողմը 15 ոտք սանդուղք մի կայ , որ ստորին յարկը կ'իջեցընէ , որուն առաստաղն է Սախրան , որ ըստ աւանդութեան Արա-
ցւոց՝ օդին մէջ կախեալ կը կեռանց նեցուկ մի ունենալու , ժայռին երեսը կտաւով մի

ծածկած է ։ Ուխտատեղիները պարա-
ցընող տաճարները որ մէջը Տաճա-
րին լուսարարը կը լինի, շատ բաներ
կը խօսի յիշեալ յարկին զանազան
տեղերքուն վրայ, որոնք նշանաւոր
եղած են մէյմէկ դէպքերով, ա-
ղօղը կրնայ մտիկ ընել տաճարգին ։
Այն տեղ յիշեալ լուսարարը ասոր
գետնին զարկած ժամանակ ձայն մը
կ'ելնէ, և կ'ըսէ թէ այս տեղս հա-
գիներուն հօրն է (Պէր-էլ-Արպաւ),
ուր շաբաթը երկու օր հաւատա-
ցեալներուն հոգիները ժողվելով
կ'աղօթեն Աստուծոյ ։

Հիւսիսային դռնէն դուրս ելնե-
լով եւ սխտին տակուցը երթալով,
որ ձախ դին կուգայ, աջակողմը եր-
կու Քրդէն կը տեսնուի գմբէթաւոր
եւ ձերմակ մարմարեայ սիւներով,
պղտիկը Մէհէմմէտին աղջկանը Ֆա-
Բինէի անուամբ է, միւսը կը կ
ուի Քօրպէր-էլ-Մէրամ, որ ըսել
Մէհէմմէտի համբարձման գմբէթ
Հարաւային դրան քով երկուք ե

մետր բարձրութեամբ պատին երե-
ւը մարմարեայ քար մի կը տեսնուի,
որուն երակին գլխերը երկու թռ-
չուն կը ձեւացնեն, անոնց վրայօք
ալ պատմութիւն մի կայ, որ կ՚ըսեն
թէ՝ երկու սիրամարգ են, որոնք ի-
րենց գոռոզութեան համար պատ-
ժուած են Սողոմոնի կողմէն։

Հարաւային դրան դիմացը կա-
մարակապ սրահ մի կը տեսնուի, և
անոր չորս կամարներէն կախուած է
կշիռը, որու մէջ վերջին դատաստա-
նին օր պխտի կշռուին կ՚ըսեն՝ վարձ-
քերն ու մեղքերը իւրաքանչիւր
ոգւոց։ Այս սրահին մօտ՝ արեւմը-
տակողմը՝ մարմարեայ գեղեցիկ ամ-
պիոն (Մինպէր) մի կ՚երեւի, որ կ՚ը-
սուի Պուրհան-էտտին-Ղադի, ուր Ռա-
մազան ամսոյն մէջ ամէն ուրբաթ
օրերը քարոզ կը տրուի։

Դէպ ՚ի Հարաւակողմը առաջ
-թալով, և ջրի աւազանի մի քովէ
ցնելով, 30 մետրաչափ աւելի ան-
ն 18 աստիճաններէ վար ստորերկրեայ

տեղ մի կ՚իջնուի , ուղղութիւնն է հիւսիսէն դէպ ՚ի հարաւ , երկու մասէ կամ սրահէ կը բաղկանայ՝ գմբէթայարկ և մոյթերու վրայ յենած ։ Ծայրը չհասած՝ 8 ոտք աստիճան կան , ուսկէ վար իջնելով միակտուր սիւն մի կը տեսնուի խիստ մեծութեամբ և վերին խոյակը արմաւենիի նման տերեւով զարդարուած է ։ Այս ստորերկրեայ յարկին ծայրը երկու դռներ կան որմով հիւսուած , որոնց վերի չեմերը կը կենան ։ Այս դռներուն եւ երկու սրահներուն համար մեծ գիտնականք կ՚ըսեն թէ Սողոմոնի Տաճարին դուռն են եւ նորա շինածները , սակայն երբեմն երբեմն նորոգութիւն տեսած են ։ Այս ստորերկրեայ տեղէն դուրս ելնելով՝ Էլ-Ա*** ըսած մզկիթը կ՚երթուի , որուն մէկ մասը սոյն ստորերկրին վրայ է ։

ԷԼ-ԱՔՍԱ ։ Օմար՝ Ուռնայի կս
մաքրել տալէն յետոյ, զոր ինքը Դւ
թի Տաճար կ՚անուանէ , գնաց ա

վրայ շինուած Սուրբ Աստուածածնի
եկեղեցւոյն մէջ աղօթելու , և պա-
տուիրեց որ այն տեղն յատուկ ա-
ղօթարան ըլլայ Մահմէտականաց ,
ուստի Մզկիթի փոխելով՝ անունը
դրին Էլ—Աքսա , այն է՝ ծայր կամ
եզր ։ Եօթներորդ դարուն վերջերը
Աբդ—էլ—Մէլէք անուն Տասներորդ
Խալիֆայն յիշեալ Մզկիթին դունե-
րը ոսկւով եւ արծաթով պատել
տուաւ ։ Նոյն խալիֆայն և իւր որ-
դւոյն Ո—ալիտի օրովը արեւելեան
կողմի մէկ մասն փլչելով ինկաւ , և
հաստատ հիմ չունենալուն բոլոր
կործանեցաւ ։ Քառասուն տարի յե-
տոյ Աբու—Ջաֆար—Էլ—Մանսուրի ժա-
մանակ արեւելեան և արեւմտեան
կողմերը սաստիկ երկրաշարժէ մի
վնասուեցան , եւ դրանը վրայ պա-
տած ոսկին ու արծաթը քակել տա-
լով ու դրամ կտրելով՝ անով նո-
րոգեցան , ուրիշ անգամ մի եւս
— Մահտիի Խալիֆայութենէն
մէջ ( որ նստաւ 775—785 ) , բո-

ըմբռնելին կործանեցաւ երկրաշարժէ, անոր համար Սուրբ Աստուածամօր անուամբ Եկեղեցի եղած ժամանակին Նիւթաւոր հնութիւններէն գըրեթէ բան մը մնացած չէ այժմ, Էլ—Մուհարրէք կրկին շինել տուաւ Էլ—Աքսան, բայց չափակցութիւն չըկրնալով տալ, երկայնութիւնը պակսելով՝ լայնութիւնը ընդարձակեցաւ:

Խաչակրաց օրով 1099 Թագաւորանին պալատի փոխուեցաւ, և Սողոմոնի պալատ կը կոչուէր, այս տեղ կը նստէին Տաճարականք ըսուած զինուորաց կարգը. եւ 1187ին Սալաէտտին մաքրել տալով այս տեղն, անոր մէջ հաստատեց այն հոյակապ ամպիոնը, որու վրայ յետոյ պիտի խօսինք:

Էլ—Աքսայի մզկիթը արտաքին սրահէ մը կը մտնուի եօթը կամարով, որոնք Մզկիթին ներքին եօ սրահներուն կը համապատասխանեն: Այս ընդարձակ շէնքէն,

80 մեղր երկայնութիւն ունի, ներս մտնելու ժամանակ միջին սրահին մէջ փոքրիկ տեղ մի կայ վանդակով շրջապատուած և մէջը ուղղանկիւնի քար մի, յատակին մէջ անկած, ըստ պատմերոյ Մահմէտականաց, այս տեղն Ահարոնի որդւոցը գերեզմանն է, Նաբաթայ, Աբիուդի, Եղիազարայ և Իթամարայ. Ղեւտական Գլ. Ժ։ Թէպէտ և ասոնք խոստացեալ երկիրը չմտած անապատին մէջ մեռան։ Նոյն քարին արեւելակողմը հոր մի կը տեսնուի, որուն Տէրէւի հոր. կը կոչեն, ըստ որում՝ մարդուն մէկը այս հորին Ճանապարհաւը Արքայութիւն մտեր և յերկրոյ կրկին նոյն Ճանապարհաւ ետ դառնալուն՝ ականջին եաեւը կանանչ տերեւ մի ունեցեր է, և ասկէ մնացեր է հորին՝ անունը Տէրեւի հոր կոչել։ Այսպէս կը պատմեն Մահմէտականք։

Միջին սրահը՝ որ ամենէն լայն , սիւներու վրայ հեծած է, եւ ոսկէ աղւոր. գմբէթ մի կայ միւ-

սիւններով զարդարուած եւ չորս-մոյթերու վրայ բարձրացած, որոնք ամէն մէկը երկերկու մարմարեայ սիւներ ունին առ ՚ի զարդ ։ Աստ հարաւային ծայրն է Միհրապը եւ անոր արեւելակողմը Մինպէր մի կայ․ այսինքն սիրուն ու գեղեցիկ ամպիոն մի որ խիստ մեծ արհեստով բանուած է Հալէպի մէջ Նուրէտտին Սուլթանին հրամանաւը, որ 1145ին նստաւ աթոռը ։

Արեւմտեան կողմը՝ ամպիոնին և մզկիթի հարաւային պատին մէջտեղը երկու Միհրապով մատուռիկ մի կայ, ամպիոնին մօտ եղածը՝ Մովսէսի և միւսը Իսայի. ( Յիսուսի ) անուանը նուիրուած է, վերջին Միհրապին մէջ ոտքի նշան կայ քարի վրայ, զոր Իսլամք Յիսուսի Քրիստոսի ոտից տեղն է ըսելով մեծ յարգ կ՚ընծայեն ։

Գմբէթին տակովը և անոր արեւմտակողմը երկու սիւներ կան, որոնք Փորձի սիւներ կը կոչուին, եւ որովհետեւ խիստ կից են իրարու

այնպէս որ հաղիւ թէ մարդ մի կարէ անոնց մէջէն անցնիլ, ուստի եթէ կ'ուզէ մէկը փորձել զինքը թէ մեղաւոր է արդեօք՝ թէ անմեղ, երկու սիւնին մէջէն փորձ կ'ընէ անցնելու, եթէ անցաւ, որդի արքայութեան է, թէ որ քիչ մի մնեղ ըլլալով չկրցաւ անցնիլ, թող ինքը մտածէ թէ ո՛ւր պիտի երթայ, Մահմէտականք այսպիսի փորձեր ըրած ժամանակնին շատ անգամ վնասս հանդիպած են, որուն համար վերջին ժամանակներս՝ Քաղաքիս արդի կառավարիչ Վսեմ. Բէուֆ փաշայն այդ երկու սիւներու մէջ տեղ երկաթներ շինել տուաւ որպէս զի այլ եւս այդպիսի անոտի փորձերը չըլլան և վնաս մի չի ծագի։

Ըստ աւանդութեան՝ Մարիամ ամենասուրբ Կոյսը, Աննա մարգարէուհին, և ուրիշ կուսանքներ այս ղ կը բնակէին, և այս տեղ մարգարէացած պիտի ըլլայ Սիմէոն Ծենին. Ղուկ. Բ. 34, 35։

Իսկ աստ դիմացի արեւելակողմը , մզկիթին հարաւային պատին դէմ կը տեսնուի Օմարայ աղօթած տեղը · որոյ նշան Մէհրապ մի կայ՝ եւ անոր երկու կողմը երկու հատ իրարու պլլուած ոլորուն սիւներ կան վերնախոյակնին դէպ 'ի վար ։

Դէպ 'ի դուռը՝ ուսկէ որ մտանք, դառնալու ժամանակ աջ դին Մէհրապ մի կայ գեղեցիկ սիւնակներով զարդարուն ։ Այս տեղւոյն համար կ'ըսեն Մահմէտականք , թէ Զաքարիա Քահանայ և իւր որդին Յովհաննէս Մկրտիչ աղօթելու եկան ։

Այս մզկիթէն դուրս արտաքին մեծ հրապարակին հարաւային արեւելեան անկիւնը նորոգուած դուռ մի կայ որ կը տանի Սօրբէրկէրեայ յարկը , ուր 32 ոտք աստիճաններէ կ'իջնուի · այս տեղ կը տեսնուի Յիսուսի Քրիստոսի Որրան ըսուածը ։ Անիկա հասարակ քարի մէջ փորուած փոս մի է , որուն վերի կողմը քանդակածոյ է , և հորիզոնական դիրքով է

տեղուած է հովանոցի մի ներքեւ , որ չորս մարմարեայ սիւնակներու վրայ բարձրացած է ։ Աւանդութեամբ կը կարծուի որ Սիմէօն Ծերունին այս տեղ բնակեցաւ եւ ամենասրբուհի Կոյսն ալ իւր անդրանիկ Որդին Տիրոջը ընծայելէն յետոյ քանի մի օր Ծերունիին քով մնաց ։ Արաբացիք Սայիտնա-Ա-Իսա կը կոչեն այս տեղւոյն ։

Յիշեալ տեղէն 50 մեդրի չափ դէպ 'ի արեւմուտք , պարսպի հարաւային պատին դիմաց ծակ մի կայ բացուած , ուսկէ կ'երեւի մեծ ստորերկրեայ տեղ մի կամարակապ եւ 96 մոյթերու վրայ յենած , ներս մտանելը դժուար է , որովհետեւ ստորճան չունի ։ Այս շէնքն հաւանաբար Սողոմոնի ժամանակէն է , եւ ուրիշ թագաւորաց օրովը նորոգութիւններ տեսած պիտի ըլլի ։ Ներս կողմը մութ է եւ խոնաւ եւ արէն աւելի ներքին կողմերը երթալու համար եղած ծակն ալ գոցած

են, մի միայն հետաքրքրութեան համար տեսնել և դուրս ելնելու է։

Գաւթի հրապարակի արեւելեան պատին տակովը դէպ 'ի հիւսիս երթալով՝ Միրզայի բռնած կամուրջը կը հասնինք, ուր տեղ Միհրան մի և գետինը պառկած սիւն մի կայ, որուն ծայրը պատին մէջէն դուրս ելած է, այնպէս որ դրսէն տեսնողը թնթանօթի բերան կը կարծէ դէպ 'ի Համբարձման լեռը ուղղուած ։ Այս Միրզայի բռնած կամուրջը յիշեալ սիւնին ծայրէն մինչեւ Համբարձման լեռը ձգուած է ածելիի բերնին բարակութեամբը, ուստի և անուանելի է ըստ հաւատոյ Մահմէտականնաց, և այս կամուրջին վրայէն պիտի անցնին հաւատացելոց հոգիները, որ եթէ արդար են, իրենց հրեշտակին պաշտպանութեամբը երկիւղ չունին, իսկ մեղաւորք իրենց հաւասարակշռութիւնը կորսնցընելով՝ Յովսափատու ձորին մէջ և ան
կէ դժոխքին յատակը պիտի գահ

վէժին ։ Այսպէս կը մեկնէ Օմարայ մզկիթին առաջնորդ լուսարարը Սէ-րաֆեայ կամրջին խորհուրդը ։

Նոյն ուղղութեամբ առաջ եր-թալով ադամաթզենիի անտառի մէ կը հասնինք , ուր տեղ կ'երեւի աշ-տարակի նման բարձրացած Զղջման և Ողորմութեան դռները , զոր Երկրորդ-այցելութեան ժամանակ Գէթսեմա-նիի ձորին կողմէն տեսանք և քիչ մը առաջ վերն ալ յիշեցինք ։ Կրկին դուռ են , արեւելեան կողմէն պատով հիւսուած , ներսի կողմէն երկու մեծկակ միակտուր քարեայ սիւնե-րով երկու մասի բաժնուած է , եր-կու մասն ալ մոյթերով զարդար-ուած և ծայրերնին հարուստ քան-դակագործութեամբ յօրինուած է , երկու գմբէթ ունին , որոնց պա-տուհաններէն լոյս կ'առնու ներքին դմը ։ Դրան վրայ ելնելու համար սանդուխներ կան , ուսկէ խիստ գե-ցիկ տեսարան կ'ընծայէ մարդոյս աց Յովսափատայ ձորը և բովան-

դակ Հարէմ-էլ-Շէրիֆի տարածութիւնը :

Քիչ մի աւելի հեռուն դէպ 'ի հիւսիս աջ ձեռքի վրայ պզտիկ Մէճիտ մի կը պատահի, երկաթի վանդակասիւներէ ներս նայած ժամանակ Բէ-րողէ մի կ'երեւի, որոյ համար լուսարար առաջնորդը Սողոմոնի աթոռը կ'անուանէ, իսկ արդեամբ ուրիշ բան չէ՝ եթէ ոչ դատարկ չէրիմ մի որ բոլոր Մէսճիտը բռնած ու վրան կանանչ չուխայով ծածկուած է : Ասկէ քանի մի քայլ անդին է Հարէմ-էլ-Շէրիֆի հիւսիսային՝ այն է Ս. Աստուածածնի դուռը, ուսկէ դուրս կ'ելնեն Ուխտաւորք իրենց այցելութիւնը և հետաքրքրութիւնը լեցնելով :

Սողոմոնեան Ցաճարին վերոյիշեալ հիւսիսային դռնէն դուրս ելնելով և Պրոպաթիկէ աւազանին եզերքով դէպ 'ի ձախ դին դառնալու եւ Ցովակիմայ եւ Աննայի եկեղեցւոյ առջեւէն անցնելով՝ աջ ձեռ

քիդ վրայ եկած աղջի փողոցը մէջ աջ թեւի վրայ եղած վերջին տունն է Սիմօն Փարիսեցւոյն տանը տեղը, ուր Մարիամ Մագթաղենացի Յիսուսի ոտքերը արտասուքովը թըրջելով անոյշ իւղով օծեց. Ղուկ. է. 37, 38: Այս տեղ Ասորիք փոքրիկ եկեղեցի մի ունէին, որ հիմակ Արաբացւոց ձեռքն է, անարգ վիճակի մէջ.



սիւններով զարդարուած եւ չորս մոյթերու վրայ բարձրացած, որոնք ամէն մէկը երկերկու մարմարեայ սիւներ ունին առ 'ի զարդ։ Այս հարաւային ծայրն է Միհրապը եւ առնոր արեւելակողմը Մէմպէր մի կայ, այսինքն սիրուն ու գեղեցիկ ամպիոն մի որ խիստ մեծ արհեստով բանուած է Հալէպի մէջ Նուրէտտին Սուլթանին հրամանաւը, որ 1145ին նստաւ աթոռը։

Արեւմտեան կողմը՝ ամպիոնին և մզկիթի հարաւային պատին մէջտեղը երկու Միհրապով մատուռիկ մի կայ, ամպիոնին մօտ եղածը՝ Մովսէսի և միւսը Իսայի (Յիսուսի) անուամբ նուիրուած է, վերջի Միհրապին մէջ ոտքի նշան կայ քարի վրայ, զոր խալամք Յիսուսի Քրիստոսի ոտից տեղն է ըսելով մեծ յարգ կ՚ընծայեն։

Գմբէթին տակովը և անոր արեւմտակողմը երկու սիւներ կան, րոնք Փորձի սիւներ կը կոչուին, եւ րովհետեւ խիստ կից են իրարու

այնպէս որ հազիւ թէ մարդ մի կա-րէ անոնց մէջէն անցնիլ , ուստի եթէ կ'ուզէ մէկը փորձել զինքը թէ մեղաւո՞ր է արդեօք՝ թէ անմեղ , երկու սիւնին մէջէն փորձ կ'ընէ անցնելու , եթէ անցաւ , որդի ար-քայութեան է , թէ որ քիչ մի մեղ ըլլալով չկրցաւ անցնիլ , թող ինքը մնածէ թէ ո՞ւր պիտի երթայ , Մահ-մէտականք այսպիսի փորձեր ըրած ժամանակնին շատ անգամ վնասի հանդիպած են , որուն համար վեր-ջին ժամանակներս՝ Քաղաքիս արդի Կառավարիչ Վսեմ. Բէուֆ Փաշայն այդ երկու սիւներու մէջ տեղ եր-կաթներ չինել տուաւ որպէս զի այլ եւս այդպիսի անօտի փորձերը չըլլան և վնաս մի չի ծագի։

Ըստ աւանդութեան՝ Մարիամ ամենասուրբ Կոյսը , Աննա մարգա--Լուհին , և ուրիշ կուսանքներ այս ՞ղ կը բնակէին , և այս տեղ մար-որէացած պիտի ըլլայ Սիմէօն Ծե-ունին . Ղուկ. Բ. 34 , 35։

Իսկ ասոր դիմացի արեւելակողմը , մզկիթին հարաւային պատին դէմ կը տեսնուի Օմարայ աղօթած տեղը , որոյ նշան Միհրապ մի կայ՝ եւ անոր երկու կողմը երկու հատ իրարու պլլուած ոլորուն սիւներ կան վերնախոյակնին դէպ 'ի վար :

Դէպ 'ի դուռը՝ ուսկէ որ մտանք, դառնալու ժամանակ աջ դին Միհրապ մի կայ գեղեցիկ սիւնակներով զարդարուն : Այս տեղւոյն համար կ'ըսեն Մահմէտականք , թէ Զաքարիա Քահանայ եւ իւր որդին Յովհաննէս Մկրտիչ աղօթելու եկան :

Այս մզկիթէն դուրս արտաքին մեծ հրապարակին հարաւային արեւելեան անկիւնը նորոգուած դուռ մի կայ որ կը տանի Ստորերկրեայ յարկը , ուր 32 ոտք աստիճաններէ կ'իջնուի . այս տեղ կը տեսնուի Յիսուսի Քրիստոսի Որրան ըսուածը : Ասիկա հասարակ քարի մէջ փորուած փոս մի է , որուն վերի կողմը քանդակուածոյ է , և հորիզոնական դիրքով գ

տեղուած է հովանոցի մի ներքեւ, որ չորս մարմարեայ սիւնակներու վրայ բարձրացած է։ Աւանդութեամբ կը կարծուի որ Միմէօն Ծերունին այս տեղ բնակեցաւ եւ ամենասրբուհի Կոյսն ալ իւր անդրանիկ Որդին Տիրոջը ընծայելէն յետոյ քանի մի օր Ծերունիին քով մնաց։ Արաբացիք Սայիտնա-Ա-Իսա կը կոչեն այս տեղւոյն։

Ցիշեալ տեղէն 50 մեդրի չափ դէպ ՚ի արեւմուտք, պարսպի հարաւային պատին դիմաց ծակ մի կայ բացուած, ուսկէ կ'երեւի ծծ ստորերկրեայ տեղ մի կամարակապ եւ 96 մոյթերու վրայ յենած, ներս մտանելը դժուար է, որովհետեւ սաստիկ ճահ չուռի։ Այս շէնքն հաւանաբար Սողոմոնի ժամանակէն է, եւ ուրիշ թագաւորաց օրովը նորոգուածինները տեսած պիտի լինի։ Ներքի կողմը մութ է եւ խոնաւ եւ արեւէն աւելի ներքին կողմերը երթալու համար եղած ծակն ալ գոցած

են , մի միայն հետաքրքրութեան համար տեսնել և դուրս ելնելու է ։

Գաւթի հրապարակի արեւելեան պատին տակովը դէպ 'ի հիւսիս երթալով՝ Սիրաթ ըսուած կամուրջը կը հանդիպիք , ուր տեղ Միհրապ մի և գետինը պառկած սիւն մի կայ , որուն ծայրը պատին մէջէն դուրս ելած է , այնպէս որ դրսէն տեսնողը թնթանօթի բերան կը կարծէ դէպ 'ի Համբարձման լեռը ուղղուած ։ Այս Սիրաթ ըսուած կամուրջը յիշեալ սիւնին ծայրէն մինչեւ Համբարձման լեռը ձգուած է ածելիի բերնին բարակութեամբը , ուստի և անտեսանելի է ըստ հաւատոյ Մահմէտականաց , և այս կամուրջին վրայէն պիտի անցնին հաւատացելոց հոգիները , որ եթէ արդար են , իրենց հրեշտակին պահպանութեամբը երկիւղ չունին , իսկ մեղաւորք իրենհաւասարակշռութիւնը կորսնցընելով՝ Յովսափատու ձորին մէջ և ակէ դժոխքին յատակը պիտի գահա

վեժին ։ Այսպէս կը մեկնէ Օմարայ մզկիթին առաջնորդ լուսարարը Սէրաֆեայ կամրջին խորհուրդը ։

Նոյն ուղղութեամբ առաջ երթալով ադամանթզենիի անտառի մը կը հասնինք , ուր տեղ կ'երեւի աշտարակի նման բարձրացած Զղջման և Ողորմութեան դուները , զոր Երկրորդ այցելութեան ժամանակ Գէթսեմանիի ձորին կողմէն տեսանք և քիչ մը առաջ վերն ալ յիշեցինք ։ Կրկին դուռ են , արևելեան կողմէն պատով հիւսուած , ներսի կողմէն երկու մեծկակ միակտուր քարերայ սիւներով երկու մասի բաժնուած է , երկու մասն ալ մոյթերով զարդարուած և ծայրերնին հարուստ քանդակագործութեամբ յօրինուած է , երկու գմբէթ ունին , որոնց պատուհաններէն լոյս կ'առնու ներքին կողմը ։ Դրան վրայ ելնելու համար սանդուխներ կան , ուսկէ խիստ գեցիկ տեսարան կ'ընծայէ մարդոյս այս Յովսափատայ ձորը և բովան-

դակ Հարէմ—էլ—Շէրիֆի տարածու-թիւնը :

Քիչ մի աւելի հեռուն դէպ 'ի հիւսիս աջ ձեռքի վրայ պզտիկ Մէ-ճիտ մի կը պատահի, երկաթի վան-դակափիւներէ ներս նայած ժամա-նակ Բի—րըղէ մի կ'երեւի, որոյ համար լուսարար առաջնորդը Սողոմոնի աթո-ռը կ'անուանէ, իսկ արդեամբ ու-րիշ բան չէ՝ եթէ ոչ դատարկ շի-րիմ մի որ բոլոր Մէ.ճիտը բռնած ու վրան կանանչ չուխայով ծածկուած է : Ասկէ քանի մի քայլ անդին է Հա-րէմ—էլ—Շէրիֆի հիւսիսային՝ այն է Ս. Աստուածածնի դուռը, ուսկէ դուրս կ'ելնեն Ուխտաւորք իրենց այցելութիւնը և հետաքրքրութիւ-նը լեցնելով :

Սողոմոնեան Տաճարին վերոյիշ-եալ հիւսիսային դռնէն դուրս ել-նելով և Պրոբատիկէ աւազանին եզեր-քով դէպ 'ի ձախ դին դառնալը եւ Յովակիմայ եւ Աննայի եկեղե-ւոյ առջեւէն անցնելով՝ աջ ձե

*քիղ վրայ եկած առջի փողոցը մէջ ալ Թեւի վրայ եղած վերջին տունն է Սիմոն Փարիսեցւոյն տանը տե֊ղը, ուր Մարիամ Մագթաղենացի Յիսուսի ոտքերը արտասուքովը Թըր֊ջելով անոյշ իւղով օծեց. Ղուկ. Է. 37, 38: Այս տեղ Ասորիք փոքրիկ եկեղեցի մի ունէին, որ հիմակ Ա֊րաբացւոց ձեռքն է, անարգ վիճա֊կի մէջ.*



# ԻՆՆԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## Ի ԳԵՐԵԶՄԱՆՍ ԹԱԳԱՒՈՐԱՑ, ԴԱՏԱՒՈՐԱՑ, ԵՒ ԱՅԼՆ

Մեր իններորդ այցելութիւնը Ս. Երուսաղէմի հիւսիսային կողմերը պիտի ըլլայ, և ըստ որում քանի մի ստորերկրեայ տեղուանք կան, պէտք է ուխտաւորք հետերնին մոմ և լուցկիք ունենան 'ի պատրաստի։

Սոյն այցելութիւնն կըսկսի Սուրբ Աստուածածնի դռնէն, ուսկէ դուրս ելնելով ձախ կողմի ճամբան կըբռնենք, և 60 մեդր երթալով խրամին երկայնութեամբը, ձախ դին կը հանդիպի Պէրքէթ—Սըրրը—Մէրէմ (Աւազան Ս. Աստուածածնի) ըսուած աւազանը, ասոր վրայօք հին յիշատակութիւն մի չկայ։

Անկէ երեք կամ չորս րոպէ քաղաքին հիւսիսային արեւելե անկիւնը կը հասնինք, ուր դէ

յարեւելք, որ Ցովսափատու ձո-
րին արեւմտեան եզերքն է, հին շէն-
քի մի մնացորդներ կ'երեւին, ըստ
ոմանց կը կարծուի թէ՝ այս տեղս է
Աբգարու կնոջ Հեղինէ Թագուհ-
ւոյն գերեզմանը զոր Ցովսեպոս Փլա-
բիանոս և Պաւսանիոս Ցոյն մատե-
նագիրք կը յիշեն ։ Ճանապարհը շա-
րունակելով՝ առանց քաղաքին պա-
րիսպը Թողլոյ, դէպ 'ի յարևմտեան
ուղղութեամբ և անկէ 'ի հարաւ սա-
կաւ մինչ շեղելով, 6 րոպէին կը հաս-
նինք քաղաքին մէկ դուռը, որ Հէ-
րովդէսի դուռը կը կոչուի, իսկ տեղա-
ցիք Պապ-էլ-Զահէրէ (ծաղկանց դուռ)
կ'անուանեն ։ Ասկէ 160 մեթր ան-
դին, աջ կողմը նեղ ճանապարհ մի
կայ և անոր ծայրը դուռ մի կ'երե-
ւի, այն է Երեմիայի այրը, զոր մերա-
յինք Աէլ-Ջէլէտի քարանձաւը կամ Ագրէ-
յէ ագարան կը կոչեն, անոր համար
։, ինչպէս կը գրէ Հաննէ պատմա-
իր երես 295, Երեմիայ մարգարէի
շակերտը Աբիմելէք, Բաբելոնի

գերութեանը ժամանակ հիւանդաց համար թուզ բերելու խրկուելով հոն Երեմիայի հրամանաւը, սոյն այրին մէջ 68 տարի քնացաւ, և արթնցած ժամանակ իւր քաղած թուզը դեռ դալար քովը կեցած գտաւ. Յայսմ. Մայիսի 1։ Իսկ Երեմիայի այրը կը կոչուի, որովհետեւ աւանդութեամբ կը կարծուի, թէ Երեմիա մարգարէն իւր Ողբերը այս տեղս յօրինեց։ Սոյն այրը Տէրվէշի մի ձեռքն է, վասն որոյ ներս մանելու համար քանի մի դահեկան պարգեւ տալու է իրեն։ Ներս մտած ժամանակնիս աջ ձեռքի վրայ Տէրվիշներու քանի մի գերեզմաններ կը տեսնուին, որոց Մահմէտականք մեծ յարգ կ'ընծայեն։ Անկէ փոքր բակի մի մէջ սանիճ մի կայ, որուն համար Երեմիայէ բանտն է կ'ըսուի. Երեմ. ԼԸ. 6։ Այրին բնական կամարին տակ մտնելով, ձախ դին պզտիկ պատի շէնք մի միւս կողմը վիմափոր խորշ մի կ'երեւի, ուր ձեռքի սանդուղով կ'ի

նուլի, այս տեղւոյն համար աւանդու-
թեամբ կ'ըսուի թէ Երեմիա պառ-
կեցաւ գուբը նետած ժամանակ-
նին, Սեդեկիայի օրովը. Երեմ. ԼԲ. 2։
ԼԷ. 20։ ԼԸ. 13 և 28։

Երեմիայի այրին վրայի բլուրը Թէոփիլոս բռնած լերանը հիւսիսային ծայրն է, զոր Հերովդէս Ագրիպպաս հարաւային մասէն զատեց, որու վրայ շինուած էր Նոր քաղաքը, և քաղաքին երրորդ պարսպին գիծը անկէ անցուց։ Այն բլուրը այժմ Մահմէտականաց գերեզմանատուն է։

Ճանապարհը դէպ յարեւմուտք 87 մեդր առաջ գնալով՝ դէպ 'ի հարաւ՝ պատին երեսը՝ գետնին հաւասար ծակ մի կ'երեւի, ուսկէ կ'իջնուի Թագաւորական այրերը, զոր Յովսեպոս Հրէայ պատմագիրը կը յիշատակէ աղաքի երրորդ շրջապատին վրայ օսեցած ժամանակ. Պատմ. պատեր. . 13։ Այս տեղէն կ'երեւի թէ նութեան համար քար կտրած են

հին ժամանակները, և տեղը Թագաւորական ըլլալուն՝ անունն ալ Թագաւորական այրեր մնացած է։ Այս տեղ ջրի կաթիլներ կը կաթեն, որ կ'երեւի թէ վրան եղած սառնիճի մի ջուրն է՝ որ քամուելով այրին մէջ կը կաթէ։

Դէպ յարեւմուտք 90 մեդրաչափ, որ յիշեալ այրերուն հարաւակողմը կ'իյնայ, քաղաքին Դամասկոսի կոչուած դուռն է, զոր տեղացիք՝ ինչպէս առաջ ալ ըսինք Պապ-էլ-Ամուտ կըկոչեն, այսինքն՝ Դուռ սիւնի, և այս դուռն Քաղաքին Աւագ դուռն է։

Սոյն դրան դէպ 'ի հիւսիսային արեւմուտք 250 մեդր յառաջ գնալով՝ տափակ ժայռ մի կը տեսնուի, Լատինք այս տեղւոյն համար կը կարծեն թէ Թէոդոս Բ. կայսեր կին Եւդոքսիա տիկնոջ Ս. Ստեփաննոսի անուամբ շինել տուած եկեղեցւոյն տեղն է ուր երեք գերեզման կայ, որոնց մէ յիշեալ Եւդոքսիայինն է կ'ըսեն ըստ որում իւր շինել տուած և

կեղեցւոյն մէջ Թաղուեցաւ ։

Վերջին տարիներս այն է 1881 Թուականին՝ նոյն տեղն Յունաց աղ-դէն անհատ մի ծախու առնելով, տուն շինելու համար տեղն մաքրել տուած ժամանակն, հին եկեղեցին ամբողջապէս յայտնուեցաւ որ ա-ւելի Յունական ձեւն ունէր քան թէ Լատինական, եւ սակայն Լա-տինք յիշեալ Յոյնին բաւական դրու-մար տալով նոյն տեղն գնեցին ։

Յետոյ դէպ 'ի հիւսիս շեղելով մեծ ճանապարհին վրայ, 8 րոպէին սառնիճի մի քով կը հանդիպինք, որ ճամբուն աջակողմեան եզերքին վր-րայ է, այս սառնիճէն 20 մետր դէպ 'ի հիւսիսային արեւելակողմ՝ կը տես-նուի Թագաւորաց Գերեզմանները (1) ։

(1) Որքան որ Թագաւորաց Գերեզմանք կը կո-չին, մենք սուրբ Գրոցմէ գիտենք, որ Յու-դի 23 թագաւորներէն 17ը սուրբ քաղաքին ջ թաղուեցան, այսինքն Սիօն լերան վրայ, մէ-Գոբաա փոխադրուեցաւ, միւսներուն համար րը Գիրքը տեղ մի չցուցըներ, և յայտնի գի-

Բոլոր չէնքը ժայռի մէջ փորուած, քարէ դռներ եւս ունէր բնական ծխնիներով, ինչպէս մինչեւ ցայսօր կը տեսնուի մէկ քանին, 22 ոտք աստիճաններէ վար իջնելով, որոնց լայնութիւնն է 9 ու կէս մեդր, բոլորը միաժայռ, դուռ մի կը հանդիպի պատին երեսը, որ վերէն 'ի վայր ժայռին մէջ կտրուած է հասարակ շինուած պատի նման։ Այս դռնէն ներս քառակուսի բակ մի կայ 27 մեդրաչափ դէպ 'ի լայնքն ու երկայնքը, և ասոր պատերը նոյն ժայռէն յօրինուած են միակտուր, եւ բարձրութիւնն է 7 էն մինչեւ 8 մեդր։

Արեւմտեան երեսը լայն գաւիթ մի կայ իբր անցք, որ յառաջուց երկու սիւնով ամրացած էր նոյն ժայռէն կտրած՝ և երկու ալ մոյթեր պա-

---

տեսնք ալ որ Մնացեալ Ցը պատուով Թաղուած չունեցան։ Կարծինք այս այրը Աբգարու կնոջ Հեղինէի հրաշակերտ գերեզմանը կը համարին, ո- կարծիքը մեզ եւս ընդունելի է, բայց որուն չ- քը Թագաւորական է։

տին կից։ Այս երկու սիւներուն մէկ կտորը դեռ առաստաղէն վար իբր կախուած կը տեսնուի։ Գաւիթին և ժայռին երեսին վրայ փափուկ գրիչով եւ ընտիր ճաշակով քանդակուած երկար շրջանակ կամ ճուաք (փերվազ) մի կայ, որուն մէջ տեղը խաղողի կուղ մի կ'երեւի։ Աջ ու ձախ դին չափակցութեամբ քանդակուած կան երեքկին արմաւենի, մէկ պըսակ եւ ուրիշ ճարտարապետական զարդեր, մէջտեղերնին փոփոխակի ունելով բաժակի ձեւով զարդեր կամ վահաններ և կամ ինչպէս ոմանք կը կարծեն՝ հացի նկանակներ երեքական հատ (1)։ Ասոնց վերի

---

(1) Որովհետեւ սոյն քանդակեալ զարդերը ժամանակին երեսէն քիչ շատ մաշուած, և ըստ մեծի մասին անորոշ են, աւելի հաւանական է հացի քանդակներ եղած ըլլան, որով կը հաստատուի Աբգարու կնոջ Հեղինէի շէնքն ըլլալը, հացերը 'ի յիշատակ քանդակուած են այն մեծ սովուն, յորում իւր գանձերը բանալով և Եգիպտոսէն առատ ցորեն բերել տալով քաղաքին այն.

կողմը ձոխ կ'երեւի տերեւներէ ու պտուղներէ հիւսուած պսակ մը, որու ձախ կողմի մասը ժամանակէն մաշուած ու պըրուած է ։

Այրին մուտքը, որ գաւթին հարաւակողմն է, 90 հարիւրորդամետր բացուածք ունի, որ երբեմն երկանաքարի ձեւով հաստ քարով մը՝ կը փակի եղեր, ինչպէս որ դեռ քարը արեւելեան նեղ անցքի մը մէջ. պառկած կը կենայ ։ Դրան առաջը ուրիշ նեղ անցք մը կայ որ կ'երթայ մինչեւ գետնին երեսը ժայռին մէջ փորուած տաշտաձեւ աւազանը, այս աւազանիս ինչ բանի համար ըլլալը չգիտցուիր, միայն կը կարծուի թէ մեռեալներուն վերջին ծառայութիւնը հոս կը կատարէին ։

---

չափ բազմութիւնը հացով կերակրեց ։ Այլ և
կուզ մի խաղողն և հացի նկարները քրիստոնէու
թեան գլխաւոր խորհուրդներէն մին է., և աւ
ան կը յարմարի քրիստոնէայ թագուհիի մի՝ ք
թէ Իսրայելի թագաւորաց ։

Գերեզմանը ( գերեզման կը կո-
չենք բոլոր չէնքը մէկտեղ առնե-
լով) փակ եղած ժամանակ երկու
նեղ անցքերն ալ կը գոցէին, ինչ-
պէս յայտնի է անկիւնաւոր ձեւով
տաշուած տեղերէն, որոնց մէջ քա-
րէ տախտակները կը տեղաւորուէ-
ին, պատուհաններու փեղկերուն
նման ։

Գերեզմանին մէջ մտած ժամա-
նակնիս քառակուսի նախասենեակ
մի կը տեսնուի, ուր տեղ կան չի-
րիմներու մնացորդներ ( Շիրիմ ը-
սելով կ'իմանանք մարմինը պարու-
նակող արկղաձեւ քարը ) ։ Հիւսի-
սային արեւմտեան անկիւնը ոսկրա-
տան ( [illegible] ) նման խորշ կամ
խուց մի կ'երեւի. ներսի ծայրը ծա-
կած, եւ այս ծակերուն մէջ եւս
մէյ մէկ դի դնելու համար խորշեր
կան ։

Հարաւային պատերեսի երկու-
պյրերը մէյ մէկ դուռ կայ, արե-
ւելեան դռնէն քառակուսի սենեակ

մի կը մտնուի, որու հարաւային և արեւելեան պատերը իւրաքանչիւրը երեքական խուցեր կամ ոսկրատուններ ունի, որոնց երկուքը իրենց յատակներն ակօսի ձեւով ածուներ ունին մէյ մէկ դիակներու համար։ Յիշեալ սենեկին հիւսիսային արեւմտեան անկիւնը ուրիշ քառակուսի սենեակ մի կայ երեք ոտք ցած, և մէջը երեք դիակ պարունակելու խցիկներ նստարանի ձեւով, որոնց ամէն մէկը աղեղնաձեւ կամարներ ունին։

Գրեթէ տասն և հինգ տարի առաջ Պ. Մ—լ—ք գիտնական Եւրոպացին այս սենեակս գտաւ, որու մէջ կար չիրիմ մի՝ Թագուհւոյ մի ամբողջ ոսկրները պարունակող։

Երկրորդ սենեկին մէջ, որոյ դուռը նախասենեկին հարաւային պատին միւս ծայրն է, ուրիշ վեց ոսկրատուններ կան, որոնց շատերը ակօսաձեւ բաժնուած են։ Հիւսիսային արեւմտեան անկիւնը քան

մի ոտք վար կ'իջնուի սենեկի մի
մէջ, ուր միայն նստարանի ձեւով
երեք խցիկներ կան ։

Նախասենեակը դառնալնուս՝ ա-
րեւմտեան պատին երեսը բացուած
դուռ մի կ'երեւի, ուսկէ ուրիշ սե-
նեակ մի կ'երթուի, որուն հիւսի-
սային արեւելեան եւ արեւմտեան
կողմերէն բացուած դռներ կան,
որոց ամէն մէկէն դարձեալ ուրիշ
սենեակներ կը մտնուի, իւրաքան-
չիւրը երեքական հանգստարաննե-
րով կամ նստարաններով և վրանին
կամարներ դարձուցած ։ Հիւսիսա-
յին պատին կողմի սենեկէն նեղ
անցքով մի ուրիշ սենեակ մի կը
մտնուի, որ այն ալ իւր արեւմտ-
եան կողմը դարձեալ ուրիշ հան-
գստարան մի ունի նստարանի ձե-
ւով, և երկու հատ եւս հիւսիսային
ղմը ։ Այս երեք հանգստարան-
րը կամ մահանկողինները քան
Միւս ամէնքը երկար են դիրքով-
ն ։ Այս ծակերը կամ խորշերը,

ինչպէս յայտնի կ՚իմացուի , բոլորը մէկ ահագին ժայռի մէջ փորուած են ։

Գերեզմանէն դուրս ելնելով՝ եւ կը դառնամք մինչեւ աջ կողմն եղած առաջին ուղին դէպ 'ի յարեւմուտք, և կը շարունակեմք մինչեւ առաջին մեծ ճանապարհը՝ դարձեալ աջակողմը, որ Մոխրոց Բլուր ըսած տեղը կը կտրէ , որու վրայ յետոյ պիտի խօսիմք ։ 10 րոպէէն ձախ կողմերնիս ուղիի մի առջեւէ կ՚անցնինք , յետոյ 22 րոպէ քալելով՝ երկու կողմը խորշ խորշ բացուած ժայռեր կը տեսնուին , եւ աջ կողմը ճանապարհէն քանի մի քայլ ներսով Դատաւորաց Գերեզմանն է ։

Այս յիշատակարանի հին չէնքն ալ բոլոր մէկ ժայռէ է , որ իւր գեղեցիկ գաւիթով բոլորտիքն եղած գերեզմաններէն կ՚որոշուի ։ Խիստ սիրուն ճակատ մի ունի , որու եռանկիւնաձեւը փայլուն տերեւնեւրով , ծաղիկներով և պտուղներու

զարդարուած է, թէպէտեւ չա-
փակցութիւն չունի ։ Դրանք եւ ե-
ռանկիւնին բոլորտիքը գեղեցիկ շըր-
ջանակներ կան ։

Գաւթի ներքին կողմը և պատին մէջտեղը փոքրիկ գեղեցիկ դուռ մի կայ՝ խիստ նեղ ցպաձեւ շրջանակով մի պատած, և անոր վրայ արմաւենիով զարդ մի՝ վրան տերեւներով ։ Այս դռնէն ներս մտնելու ժամանակ դամբանական քառակուսի սըրահի մի մէջ կը գտնեմք զմեզ, որոյ ձախ կողմի պատին երեսը երկու կարգ իրարու վրայ գերեզմանական խորշեր կան, բայց այնքան նեղ՝ որ կ'երեւի թէ առանց շիրմի միայն պատանքովը կը դնէին մեռեալը անոնց մէջ, վերի կարգը վեց և վարի կարգը եօթը խորշ ունի ։ Հիւսիսային արեւմտեան անկիւնը մինակ մէկ խորշ կայ, և հիւսիսային արեւելեան անկիւնի գետինը ծակ մի կայ, ուսկէ 5 ոտք վար իջնելով փոքրիկ բակի սանդուղք) մի վրայ կ'ելնէ, որու ծայ-

րը պզտիկ ցած դուռ մի կը բացուի, որ բարձրկեկ դարեւանդով (չըգմա) մի երկրորդ փոքր բակ մի կը տանի, ուր կան երեք խորշ դամբաններ։

Սոյն երկրորդ փոքր բակին ներքին պատին երեսը դարձեալ դուռ մի կայ խիստ ցած, որ միւսին պէս դարեւանդով մի քառակուսի աղուոր սենեակ մի կը հանէ, որ իւր ներսի երեք երեսներուն վրայ կամարներ կան պատուհանի կամարներու պէս, որոնք Մէհրապի ձեւ ունենալով, տակի կողմերնին նստարաններ կը կազմեն, որոնց վրայ չորս մեռեալ դընելու դամբաններ կան աջ ու ձախ դին, և երեք հատ ալ ներքին երեսին վրայ, և ասոր ձախակողմը ուրիշ դամբան մի եւս կայ, որու ներսի կողմը քառակուսի սենեակ մի է, և աջ դին հասարակ դամբան մի։

Դրան առջեւն եղած սրահը եւ դառնալնուս, ներքին պատին երե սը մէջտեղը պարզ դուռ մի կը տե նուի, ուսկէ քառակուսի փոքր

որան մի կը մտնուի , հոս ալ երկու կարգ իրարու վրայ դամբանի խորշեր կան երեք պատին երեսը , վերի կարգերը չորսական , իսկ վարիններ-րը երեքական :

Աջակողմեան պատերեսին մէջտեղը դուռ մի կայ , ուսկէ ուրիշ քառակուսի սենեակ կը մտնուի , որու երեք պատին վրայ երեքական խորշեր կան , եւ երեք խորշերուն վրայ երկու կամար , որոնց ամէն մէկուն տակ դամբանի երկերկու խորշեր բացուած են :

Վերջապէս , հարաւային արեւմտեան անկիւնը գետնին երեսը ծակ մի բացուած կայ , ուսկէ սենեկի մի մէջ կը մտնուի , բայց այս սենեկին շէնքը անկատար թողուած է և գերեզմանական խորշեր չ'ունի :

Այն Պատաւորաց գերեզմանատունէն ելնելով՝ ետ կը դառնամք կրկին մինչեւ Մոխրոյ Բլուրը : Այս բլուրն ինչպէս որ իւր անուամբը կը յիշուի , մոխիրներու կոյտ մի է

բլրի չափ բարձրացած , ոմանք կը կարծեն որ Սողոմոնի Տաճարէն հանուած ու հոս թափուած են , իսկ տեղացւոց կարծիքը աւելի խելքի մօտ է , որոնք օճառի գործարաններէ հանուած կը կարծեն ։

Աջ կողմի շաւիղը բռնելով և 280 մեդրի չափ տեղ քալելէն յետոյ , ձախ դիուն վրայ Ճանապարհէն 30 մեդր ներսով կը ձգուի պատէ մի հէմեր , 40 մեդր երկարութեամբ և 3 մեդր լայնութեամբ ։ Կարծող կայ որ այս նոր շէնքին հիացողները Հերովդէս մեծին Երուսաղեմէ դուրս շինել տուած ամփիթէատրոնինն է . Յովսեփ . Հնախօս . ԺԵ . 2 ։ Թէպէտեւ սոցա ձեւը , ( որ ահագին քարերով՝ մինչեւ 2 մեդր երկայն ու լայն եղողները կան , ) բոլորակութիւն մի ցոյց չեն տար , ուստի ըստ այլոց՝ Մանասէ թագաւորին սուրբ քաղաքէն բաւական հեռու՝ արուաձաններու բոլորտիքը շինել տուա աշտարակի կամ ամրոցի հիացողը

ներ կը համարուին. Յովսեպ. Հնախօս. Ժ. 4։

Եօթը րոպէ յառաջ քալելով Ռուսաց վանքին պատին տակովը, որ աջ թեւին վրայ կ'իյնայ, քաղաքին պարիսպը կը հասնինք, որոյ հիւսիսային արեւմտեան անկիւնը Պսեփինեայ աշտարակին վրայ հիմնարկուած է, զոր Մեծն Հերովդէս շինել տուաւ՝ ութանկիւնի, եւ 70 կանգուն, այսինքն 35 մեդրաչափ բարձրութիւն ունէր. Յովսեպ. Հնախօս. Ե. 12։ Ասկէ դիւրին է այլ եւս վերադառնալ 'ի Ս. Յակոբ՝ որ արդէն ճանապարհը գիտեն բարեպաշտ ուխտաւորք։



# ՏԱՍՆԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԾՆՆԴԵԱՆ ԳԻՒՂԸ
## ԱՅՆ Է ԼԵՌՆԱԿՈՂՄԱՆ
## ՎԱՆՔԵՐԸ

*Երուսաղէմէն մինչեւ Յովհաննու Ծննդեան գիւղը, զոր տեղացիք Այն-Քէրիմ կը կոչեն, երկու ժամու հեռաւորութիւն կայ, ուստի սոյն այցելութիւնը ընել փափաքող բարեպաշտ ուխտաւորք եթէ կ'ուզեն հանգիստ երթալ գալ, պէտք է ձիով կամ յաւանակով ուղեւորին։*

*Յոպպէի դռնէն ելնելով ու Բեթլեհէմի ճամբան ձախ դին թողլով, 90 մեդր քալելէն յետոյ երկու ճանապարհ դիմաց կ'ելնէ, աջ դիու ղին որ Յոպպէինն է՝ թողլով, ձախակողմեան ուղին առաջ երթալու է, ուր 475 մեդրաչափ քալելէն յետոյ՝ աջ դին Պիրքէթ—էլ—Մամիլլա ըսուած աւազանը կը հանդիպի, որ ըստ սուրբ Գրոց Վերին աւազան*

կամ փերի Ճանապարհի Աւագան ը-
սուածն է . Դ. Թագ . ԺԸ . 17 . Ե-
Բ . Մնաց . ԼԲ . 30 : Զորս դին Մահ-
մէտականաց գերեզմաննոց է , Գե-
հոնի ձորին ծայրը կ՚իյնայ , ուր Սա-
դովկ մեծ քահանայապետը և Նա-
թան մարգարէ Դաւիթի հրամանաւ
իւր որդին Սողոմոնը թագաւոր օ-
ծեցին :

Այս աւազանին մօտ Եսայի մար-
գարէն Աքազ թագաւորի ժամա-
նակ մարգարէանալով ըսաւ այն
նշանաւոր խօսքը . " Ահա կոյսն յը-
ղասցի և ծնցի որդի և կոչեսցեն զա-
նուն նորա Էմմանուէլ ". Եսայ . Է .
3—14 :

Սոյն աւազանին հիւսիսային գետ-
նին վրայ բանակեցաւ Ռափսակ՝ Սե-
նեքերիմ թագաւորի մեծ սպարա-
պետը , երբ Երուսաղէմին տիրելու
եկաւ , և Հրէից պատգամ խրկեց որ
հնազանդին Ասորեստանեայց թա-
գաւորին , եւ Աստուծոյ դէմ եւս
արհամարհանօք խօսեցաւ : Իսքայե-

լացիք իրենց Եղեկիա Թագաւորին հետ աղօթքի և ապաշխարութեան զինեցին, և Եսայի՝ Աստուածախօս կողմանէ եկաւ Թագաւորին մօտ և քաջալերեց զինքը որ չվախնայ, եւ ըսաւ թէ՝ Ասորեստանցիք չպիտի մտնեն երբեք Երուսաղէմ: Հետագայ առաւօտուն Ռաբսակ ելաւ ու տեսաւ որ իւր բանակէն 185000 մարդիկ յանկարծամահ եղած են, ուստի մնացեալ զօրքերն ժողվելով անմիջապէս փախուստ տուաւ. Դ. Թագ. ԺԸ. 17—ԺԹ. 1—36. եւ Եսայ. ԼԶ. 2—ԼԷ. 1—37:

Այս աւազանէն շատ հեռու չէ Հերովդէս Ագրիպպասի Թաղուած տեղը, այն որ Յակոբոս առաքեալը սպաննել եւ Պետրոս առաքեալը բանտարկել տուաւ, և ինքը Պաղեստինի Կեսարիոյ մէջ մեռաւ երբ ժողովուրդն իրեն աստուածային պատուով կը գովաբանէր. Գործ. ԺԲ. 1-23
Աւազանէն 100 մեդր գետ'ի յարեւմուտք գերեզմանական գետնափ

մի կայ, ծայրի մէջ փորուած, որ միշտալ Հերովդէսին կը կարծուի: Այս տեղն 1861 ին փորել տուած ժա-մանակնին, պատի մի երեսը գրուած գտնուեցաւ Հայերէն գիրով Սարգիս վարդապետ, որ յայտնի ապացոյց մի է որ յառաջագոյն այն տեղը Հայոց ձեռքին էր: Նախանձոտ օտարազգիք գիշերանց երթալով եղծեցին գի-րերը: Դանիէլ Իգումենոս, ազգաւ Ռուս, երկոտասաներորդ դարուն սկիզբը ուխտաւորութեան եկած ժամանակ այս տեղուանքս վանք մի տեսած է, ինչպէս կը գրէ իւր Պատ-մութեան գրքին մէջ. նոյնպէս եւ միջին դարու մէջ կրօնաւորաց վանք մի ըլլալը Լատինք կը վկայեն իրենց վանուց Յիշատակարաններէն ձեռա-ներով, եւ որովհետեւ կրօնաւորաց Հռովմէական ըլլալը չիմացուիր, ինչ-պէս ուրիշ տեղերու եղածները կը յի-շատակէ, վասն որոյ ամենայն հա-ւանութեամբ կը կարծուի որ ըսած մենաւորքը Հայ էին:

Աւազանին արեւմտեան կողմն է Սրբուհւոյն Մամիլլայի անուամբ վանքը, ուր տեղ յիշեալ Սրբուհին շատ նահատակներու մարմինները թաղած է 614 թուոյն միջոցները։ Եւ այս Սրբուհւոյն անուամբը աւազանն ալ իւր անունը առած է, որ Պիրքէթ-էլ-Մամիլլա կը կոչուէր, և յետոյ միջին դարու մէջ Պատրիարքի լիճ եւս կոչուեցաւ։

Ճանապարհը շարունակելով 5 րոպէի չափ՝ կը հասնինք տեղ մի, ուր ճանապարհը երկուսի կը բաժնուի, աջ կողմինը բռնելով և 440 մեդր քալելով, դարձեալ ճանապարհը երկուսի կը բաժնուի։ Աջ կողմինը թողլով, որ Յովհաննու Ծնընդեան գիւղը կը տանի, ձախակողմեան ճանապարհը 10–12 րոպէ գընալով և զառ 'ի վայր իջնելով Խաչվանքը կը հասնինք։ Այս վանքը որ Վրաց էր, այժմ Յունաց ձեռքն է միջին դարու ամիրոցներու ձեւով շինուած է ձորի մի մէջ, որ վանքի

անունովը Խաչավանքէ յոր կը կոչուի , զոր տեղացիք Ռափէլ-Մալլուղէ կ'անուանեն ։ Եկեղեցին եօթներորդ-դարուն Հերակլիոս կայսր շինել տըւած է , այն տեղւոյն վրայ , ուր ըստ Յունաց աւանդութեան՝ Քրիստոսի խաչափայտին ծառն տնկուած էր ։ Որիշ աւելի հաւանական աւանդութիւն մի կայ թէ՝ Հերակլ կայսր կենաց փայտը ետ դարձուցած ժամանակ այս տեղ հանգիստ առած և խաչին վրայ լուսեղէն կամար մի ծագած տեսած է , եւ 'ի յիշատակ այն սքանչելեաց այս եկեղեցին կառուցած է (1) ։ Աւագ խորանին տակը տեղ մի ցոյց կուտան Յոյնք , որ տեղւոյն համար կ'ըսեն թէ՝ Սուրբ Ծառը հոս տնկուած էր ։ Եկեղեցւոյն շէնքը հին է , բոլոր յատակը զարդարուած է ծաղկանկար միւսիւններով , նոյնպէս և պատերուն եւ սիւներուն ծեփին վրայ բոլոր պատ-

---

(1) Հաննէ . Պատմ . Ս . Երուսաղէմի , եր . 291 ։

կերներ նկարուած են և պատմա-
կան հատուածներ ալ կան ։ Այն
վանքին մէջ Յոյնք 24 տարիէն 'ի վեր
է որ ծառանգաւորաց դպրոց հաս-
տատած են ։

Խաչավանքէն ելնելով 200 մեդ-
րաչափ դէպ 'ի հիւսիս կ'երթանք
Ճանապարհին վրայ ելնելու, որոյ
ուղղութիւնն է դէպ 'ի յարևմուտք՝
Խաչավանքի ձորն անցնելով, 20 րո-
պէին (վանքէն սկսելով) սարահար-
թի մի վրայ կ'ելնենք և յետոյ Ռուփ-
-էլ-Մաքինէ ըսուած ձորը կ'իջնենք ։
Քառորդ մի ժամ ասկէ բլրի մի վրայ
ելնելով դէշ Ճանապարհէ մի եւ
Ռուփ-էլ-Պափուլէ, Պետուքիններու
ըսուած ձորէն անցնելով, այն դին
կը հանդիպի Խէրպէդ-Նահլէի աւե-
րակները ։

Տասն րոպէ մի եւս յառաջ եր-
թալով Ռուփ-Տիապ ձորին ծայրէն
կ'անցնիք, և այն դին բլրին սարը
մը Խէրպէդ-այն-Ձառուէ ըսուած գիւ-
ղին աւերակները կը տեսնուին

Բլրին վրայ հասած ժամանակնիս յարեւմուտքէն Միջերկրական ծովը և յարեւելքէն Համբարձման լեռը Ս. Երուսաղէմին մէկ մասին հետ ՚ի միասին կը նշմարուին ։

Աջ կողմը ձոր մի թողլով, ուր իջնելու ճանապարհն ալ կ'երեւի, ձախ կողմէն՝ քառորդ մի ժամ քալելէն յետոյ, Պէյթ—Իքսէր ըսուած գիւղի մը աւերակներուն մօտէն կ'անցնինք ։

Հոս քարուտ ճանապարհէ մի դժուարաւոր իջնելէն յետոյ, 17 րոպէին Ցովհաննու Մկրտչին Գիւղը կը հասնինք ։ Միջին դարու Հայք Լեռնակողմ կ'անուանէին, իսկ տեղացիք՝ այն տեղ գտնուած աղբիւրին անունովն Այն-Քէրիմ կը կոչեն, գիւղի անունն՝ որ կլորակ բլրի մի վրայ շինուած է ։ Աստ Լատինք վանք մի եկեղեցի մի ունին ։

Զաքարիա քահանայապետ իւր նոյն Եղիսաբեթին հետ աստ կը նակէր, ուր ծնաւ եւ Ցովհաննէս

Մկրտիչ։ Քրիստոնէութեան առաջին դարերէն 'ի վեր եկեղեցի շինուած կար այս տեղ, Դանիէլ Իգումենոս Ռուսը 1113 Թուականին Քրիստոսի, Սուրբ Երուսաղէմ եկած ժամանակ տեսած է աստ վանքեր ու եկեղեցիներ։ Այժմ Լատինաց ձեռքն եղած եկեղեցին՝ 1621 Թուականին ամայի վիճակի մէջ գտնուած ժամանակ ստացած եւ սեփականած են, և եկեղեցին նորոգելով վանք մի եւս քովը շինած են։ Եկեղեցւոյն աջակողմեան դասուն մէջ 7 աստիճանով վար փոքրիկ խորան մի կայ ժայռին մէջ փորուած ուր աստ ծնաւ, կ'ըսեն, Յովհաննէս Մկրտիչ։

Լատինաց վանքէն ելնելով՝ աջ դին եղած առաջին ուղին բռնելով և յետոյ ձախ կողմի առջի ճանապարհը չեղելով, երեք քայլէն աղբիւրի՝ մը կը հանդիպինք, որուն Արաբացիք Այն-Քէրիմ (Աղբիւր Շնորհաց) կը կոչեն եւ տեղացի քրիստոնեայք Ս. Աստուածած

աղբիւր կ'անուանեն([1]), բաւ ջուր մի ունի և գիւղի պարտէզներն ալ այս ջրով կը ջրեն ։ Յիշեալ աղբիւրին մօտ Մահմէտական գիւղացւոց աղօթարանն է , որոնք գիւղին մէջ 500 հոգւոյ չափ կան , իսկ քրիստոնէայք հարիւրի չափ կը հաշուուին ։

Աղբիւրէն դէպ յարեւմուտք երթալով , և 100 մեդր քալելէն յետոյ ձախ թեւի վրայի ճամբով բլրի մի վրայ կ'ելնուի , և 4 րոպէէն երկաթի դրան մի քով կը հասնինք , այս դուռը հին եկեղեցւոյ մի է , զոր Լատինք այցելութեան կը կոչեն , և աւանդութեամբ կ'ըսեն թէ՝ Զաքարիա քահանայ այս տեղ ամառնային տուն մի ունէր , եւ թէ Մարիամ սուրբ Կոյսը այս տեղ այցելութիւն ըրաւ իւր մօր քրոջ աղջկան Եղիսաբէթին ։

---

([1]) Հաննէ Վարդապետ առանց հաստատութեան կը գրէ՝ թէ Յոյնք այս ջրին համար կ'ըսեն , սա է Ջուրն Փորձութեան ։

Այն վանքն 'ի սկզբանէ Հայոցն էր, և կը կոչուէր Լէոնոկոզման վանք, եւ մինչեւ հնգետասաներորդ դար յիշատակութիւնը գրով մնացած է մեր քով, վեշտասաներորդ դարուն մէջ, կամ քիչ մը առաջ, Մօլտըվի Արքայազնք յարձակելով սուրբ եկեղեցին մէջ, յիշեալ գիւղի բոլոր վանականները հարստահարեր ու հալածեր են և վանքերուն ալ աւրած են։ Զորս եկեղեցիք կը յիշուին այն ժամանակներն Հայոց ձեռք գրանուած, որք են՝ Սուրբ Կարապետի, Սուրբ Վիմի, Սուրբ Աստուածածնի և Սուրբ Ծննդեան (Յովհաննու Կարապետի). Վերջինը նոյն է, ինչպէս կը կարծուի, զոր այժմ Լատինք ունին, և ինչպէս վերին ըսինք, 1621ին ստացած են։ Լատինաց Այցելութեան վանք ըսածը կ'երեւի որ Սուրբ Աստուածածնինն է, ուր Տիրամայր սուրբ Կոյսն ողջոյն տուաւ Եղիսաբեթի։ Այն վանքի մէջ աղբիւր մի կար, որ Մօլտըվիներ

վանքը կործանած ժամանակնին աղբիւրն ալ անհետ եղաւ, բայց այժմ թէ հին եկեղեցւոյ աւերակները եւ թէ աղբիւրը գտնուած էր եւ Լատինք իրենց սեփականած են ։ Հաննէ՝ երես 293՝ Ջրհոր մը կը յիշատակէ հոս, որոյ ջուրն, բարեհամ, ցուրտ և անոյշ է կ՚ըսէ ։

Այս տեղ կը կարծուի որ Թլփատեալ ըլլայ Ս. Յովհաննէս Մկրտիչ ։

Մեծն Հերովդէսն՝ Բեթղեհէմի և շրջակայ գիւղերուն փոքր երեխայները սպաննել տուած ժամանակ, Եղիսաբէթ իւր մանուկը գրկելով փախաւ եւ վէմ քարի մի կռթընելով պատսպարուիլ կ՚ուզէր, քարը մոմի պէս կակղնալով՝ իւր մէջն առաւ պահեց մանուկը ։ Յիշեալ վէմը սոյն վանքին մէջն է, որու վրայ մատուռ մը կար Սուրբ Վէմ անուամբ ըստ Հայ յիշատակարանաց, որ բարեպաշտ Քրիստոնէայներէ յարգանք կ՚ընդունի մինչեւ ցայսօր ։

Եկեղեցւոյն մնացորդներէն դեռ

կ՚երեւին, նոյնպէս և վանքին․ զոր և Հաննէ կը յիշատակէ, և կ՚ըսէ որ կանգուն տեսնուած մնացորդ շէնքը գինետան մէջ մասն է երես 293։ Վանքը՝ եկեղեցիէն ելնելուն՝ ձախ դին կ՚ինար, և Հաննէի ըսած Ջըր-հորը ներսի կողմը դրանը կից էր, որ մինչեւ ցայսօր դեռ կայ։

Ֆրանչըսկեան Լատին միաբանութիւնը 1861 թուականէն ՚ի վեր է, իրենց սեփականած են սոյն վանքն ալ, որուն տեղը մաքրել տալով հին եկեղեցին գտած են այժմ։ Ներս մտած ժամանակնիս աջ դին խորշի մի մէջ Վէմին մէկ կտորը կ՚երեւի, որուն մէջ պահուեցաւ Յովհաննէս Մկրտիչ։ Հիւսիսային դասին պատին մէջ Մկրտութեան աւազանին տեղը դեռ կը տեսնուի զոր Լատինք Հայկական եկեղեցւոյ ձեւակերպութեանը տեղեակ չըլլալով, չենք գիտեր, կ՚ըսեն. Ինչ կը նշանակէ այս մեծկակ խորշ սոյն պատին վրայ, և անգիտակցաբար կը կարծեն թէ՝ Ս. Յովհան

նէս հոն Թլփատուած պիտի ըլլայ ։

Ս. Յովհաննու ծննդեան գիւղին մէջ, Լատինք ունին ընդարձակ Մայրապետանոց մը՝ որուն մէջ նաեւ դպրոց, այն մայրապետներն Երուսաղէմայ մէջ գտնուած Սիօնի քոյրերու մէկ մասն են. Ռուսք եւս վանք մի շինեցին ընդարձակ և պայծառ գիւղին արեւելեան լերան կողին վրայ։

Վերոյիշեալ Հայոց աւերակ վանքէն դուրս ելնելով՝ ետ դառնալու է մինչեւ Ճանապարհին վրայ, ուր տեղաց դէպ 'ի յարեւմուտք շիտակ երթալով զահավէժ ճամբու մի եզերքով, 20 րոպէ էն յետոյ աջ կողմի վրայ Քոլոնիէ գիւղը կ'երեւի, որու առջեւէն կ'անցնին ուխտաւորք Երուսաղէմ եկած ժամանակնին։ Յետոյ քարակոյտ տեղ մի կը հասնուի ճամբուն մօտ, որով ծածկուած է ժայռին մէկ մասը, այն՝ որու վրայ Յուրբ Յովհաննէս կը քարոզէր։

Տասն և երկու րոպէէն յետոյ Վատի-Հանինայ ըսուած ձորէն կ'անց-

նուխ , որ գեղեցիկ մշակուած հովիտ մի է , այգիներով զարդարուած և առուակ մի ևս կը ջրէ զետինը։ Յի-շեալ ձորին ձախակողմեան եզերքով գնալով դէպ յարեւմուտք ուղղեալ՝ 10 րոպէ անդին անկիւն մի կը հան-դիպի ., հոս հասնելուն՝ աջակողմի ճանապարհը բռնել երթալու է ։ Հիւսիսային դին Մուշէլիմը կ'երեւի , որ այժմ Սոլա կը կոչուի , և բարձր լերան մի գլուխը շինուած է՝ ինչ-պէս առաջ Ռէմլէէն դէպ յԵրուսա-ղէմ եկած ժամանակնիս խօսեցանք ։ Տասն և եօթը րոպէին Այն-Հաղեա կը հասնուի , ուր քանի մի ձիթենիներ և փոքրիկ շէնք մի կայ ։

Այս տեղ ձիէն իջնել պէտք է , որովհետեւ դարուվար տեղ մի է դժուարին և քանի մի քարէ աստի-ճաններէ կ'իջնուի , ուր տեղ կայ եղջերբենիի գեղեցիկ ծառ մի պզտի՛ արտի մի մէջ , որ Այն-Հաղեաէն աղ բերակին ջրով կը ջրուի ։ Յիշեա ջուրը Թէպէտեւ նուազ՝ բայց պ

*տուական է, եւ փոքրիկ աւազանի մի մէջ կը թափի։ Աստ հասած ժամանակնիս 12 ոտք քարափոր աստիճաններէ վեր կ'ելնուի, ուր գռնակ մի կայ, որ է Յովհաննու Մկրտչի Այրին դուռը։ Այս տեղ, որ Յովհաննու անապատ կը կոչուի, ճգնեց խստակրօն վարքով Մեծն 'ի ծնունդս կանանց, եւ պատրաստեց զինքը յապաշխարութիւն կոչելու զմարդիկ, և Քրիստոսի գալուստը ծանուցանելու։*

*Այրը լերան մի ստորոտին վրայ շինուած և Բէ-Եկնէ ջուրին վրայօք երկընցած է, որ այս ըսուած տեղն ձորին խիստ խորունկ տեղն է, բնական այր է, եւ 7 մեդր երկայնութիւն, 3 մեդր լայնութիւն և նոյնչափ ալ բարձրութիւն ունի, դուռը դէպ 'ի հիւսիսային արեւմուտք կը բացուի։ Աղօթարանի եւ վանքի 'ի տեղւոյ մնացորդներ դեռ կ'երեւին, որ ժամանակաւ այրին վրայ հնուած էին։*

*Այրին դիմաց՝ հիւսիսային ա-*

րեւմտակողմը Սաղաֆ ըսուած պզտիկ գիւղը կը տեսնուի ։

Յովհաննու ծննդեան , կամ Այն — Քէրիմ մէջ եւ անոր մերձակայքը գտնուած ուխտատեղիքն ասոնք են զոր ստորագրեցինք ։

Առնըցմէ դուրս է Փիլիպպոսի աղբիւրը , ուր ուխտաւորաց սովորութիւն եղած չէ այցելելու , ըստ որում ոչ չէնք կայ եւ ոչ ալ ճանապարհի կողմանէ պատեհութիւն ունի հանդիպելու ։ Յովհաննու Ծնընդեան գիւղէն մէկ ժամ և մէկ քառորդ կը տեւէ , ճանապարհը խիստ քարոտ ու դժուարակոխ է ․ Ուափ—էլ—Հաննէ ըսուած ձորի մի , որ հին ժամանակ Երուսաղէմէն Պէյթ—Ճիբրին ու Գազա գնալու մեծ ճանապարհն էր ․ Գործք ․ Ը ․ 26 ։ Հարաւային արեւմտեան եզերքը կ'իյնայ , լեռնադաշտակի ծայրը , զոր տեղացիք Ու—Հաննէ կը կոչեն , Ջուրը հեռու ակէ մի գետնափոր ճանապարհ կուգայ , և այս տեղ փոքրիկ ա

ղանի մի մէջ ժողվելով, յետոյ դուրս
կը Թափի, աւազանը պզտիկ խորանի
ձեւով շինուած է։ Այս տեղ մկր-
տեց Փիլիպպոս առաքեալ Տիրոջն
հրամանաւ Կանդակա Թագուհւոյն
Եթովպացի ներքինին, որ Երուսա-
ղէմ եկեր էր Աստուծոյ երկրպա-
գութիւն ընելու, ու Գազա կը դառ-
նար կառքի մէջ նստած, եւ Եսայի
մարգարէին գիրքը ձեռքը։ Փիլիպ-
պոս տեսնելով նորա ջերմ հաւատ-
քըն ու ճշմարտութեան համար ու-
նեցած փափաքը, Թէ նորա միտքը
լուսաւորեց մարգարէին մութ խօս-
քերը պարզելով և Թէ մկրտութեան
կնիքը տուաւ. Գործ. Ը. 26—40։
Սոյն աղբիւրն 1859ին Զմիւռ-
նիացի Յովհաննէս Ս. Պատրիարքը
գնեց հանդերձ վրայի պարտէզովը,
որու մէջ կան այգիներ ու Թզենի-
եր, և հիմակ Հայոց սեփական ըս-
ացուածք է, այսու ամենայնիւ
նչեւ ցայսօր դեռ շինութիւն մի
րած չէ։

Աղբիւրին հարաւային արեւելակողմը այգիին մէջ երեք սիւներ կան, որոնք կը ցուցնեն թէ հին՝ ժամանակ եկեղեցիով մի պատուած են այս տեղն ։

Սոյն աղբիւրէն ճանապարհ կայ Բեթլեհէմ երթալու, բայց ճանապարհը քարուտ ու դժուար է ։

Աստ կը լրանայ մեր Տասներորդ այցելութիւնը ։



# ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## Ի ՅՈՐԴԱՆԱՆ, Ի ՄԵՌԵԱԼ ԾՈՎ, ԵՒ ԱՑԼՆ

*Յորդանանու ուղեւորութիւնք մեր Ազգին մէջ բաւական ժամանակէ 'ի վեր խափանուած է, թէ՛ ճանապարհի դժուարութեանց համար որ 9 ժամ կը տեւէ, եւ թէ՛ առաւելապէս մահաբեր վտանգաց համար, որ ամէն տարի պակաս չ'լինիր, եւ մէկ կամ երկու անձինք զոհ կ'երթան իրենց աւելորդապաշտութեանը ։ Թողունք բարոյականութեան դէմ եղած զեղծմունքները, որ ճշմարիտ բարեպաշտ եւ պատուոյ տէր մարդ մի երբէք չընդունիր՝ եւ ոչ անգամ տեսնել ։ Ցունաց ուխտաւորք, որ ամէն տարի սովորութիւն ունին գնալու, արք եւ կանայք կը պարտաւորին գետին մէջ լուացուելու եւ կին մկրտուելու, այս պատճառաւ բաւական զոհեր եւս պակաս ն ըլլար միշտ ։*

Սուրբ Աթոռս 'ի հին ժամանակաց սովորութիւն ունի քանի մի ուղտի բեռ Յորդանանու ջրէն բերել տալով, բարեպաշտ ուխտաւորաց բաժնելու ։ Մինչեւ անգամ Եւրոպացիք հետերնին կը տանին, եւ անով մկրտութիւն կ'ընեն, կամ մկրտութեան ջրոյն կը խառնեն, որ խիստ մեծ յարգ ունի քովերնին ։ Ինչպէս 1868 թուականին Աւստրիոյ ներկայ Վսեհ. կայսրը Յորդանանու ջրէն այն նպատակին համար խնդրած լինելով տեղւոյս Հիւպատոսէն, Ամեն. Եսայի Ս. Պատրիարքն Չինու պատուական ամաններ շնորհած էր մէջը դնելու համար, որոյ փոխարէն Վսեհ. կայսրը իւր եւ իւր կայսրուհւոյն կենդանագիր պատկերները յուղարկեց ։

Այն ճանապարհորդութիւնը, ինչպէս նաեւ հետագայ Երկոտասաներորդ եւ վերջին ճանապարհորդութիւնը Այցելութեանց կարգ. մէջ դասաւորելնիս ուրիշ նպատա

չունի, բայց միայն ստորագրել նոյն պաշտմաններուն մէջ գտնուած սուրբ Տեղիքը, ուր Յիսուսի Քրիստոսի մարմնաւորին Տնօրէնութեան խորհուրդները կատարեցան։

Յոպպէի դռնէն դուրս ելնելով, անմիջապէս ձախակողմեան Ճանապարհէն՝ Գեհոնի ձորն աջ կողմը ձըգելով եւ Սիօն լերան ստորոտը յառաջ կ'երթանք, յետոյ աջակողմը Ակեղդամայի առջեւէն կ'անցնինք եւ 15 րոպէին Յօբայ-Հոր (Աբբայ-Հոր) կը հասնինք։ Ասկէ Կեդրոնի հեղեղատը բռնելով, որոյ նախ ուղղութիւնն է դէպ 'ի հարաւային արեւելք, մէկ ժամ և 5 րոպէին հանգիստ Ճամբով Կեդրոնի ձախ եզերքին վրայ գնալով Երուսաղէմն մեր աչքէն աներեւոյթ կը լինի, և մէկ ժամէն յետոյ Ճանապարհին վրայ ...օ դին հոր մը կը հանդիպի, որուջ միշտ ջուրը պակաս չէ։ Ութ պէ եւս քալելով, ձախ դին Ճանապարհին մօտ Աղեփէէ ըսուած վը-

ռանաբնակ ժողովրդին գերեզմաննոցն է, ուր Տէրվիշի մը գերեզման ալ կայ, որու ջերմեռանդ Արաբացիք ուխտի գնալով, ուղտի հնացեալ համետներ ու արօրներ, կիր, կոտրտած խեցամաններ, վրանի կրտորուանքներ և այլն, կը նուիրեն։ Եօթը րոպէին՝ աջ կողմը կեդրոնի մէջէն անցած ուղին կը մտնենք, և ձախ կողմը նոյն հեղեղատին եզերքովը յառաջ կ'երթանք, որ 50 մեղրաչափ հեռուն՝ նոյն հեղեղատն օրինաւոր վիհ մը կը դառնայ երկու սեպացեալ քարաժայռ պարիսպներու մէջտեղը փորուած, և ժայռին երեսը մաղի նման ծակեր բացուած, որոնց մէջ հին ժամանակները ճգնաւորներ կը բնակէին։

Քսան րոպէէն Յունաց Հայր Սաբայի վանքը կը հասնինք, որ խիստ նկարագրական տեսք մի ունի։ Կըրիստոնէութեան առաջին դարերէ սկսեալ բազմաթիւ ճգնաւորներ կուգային այս տեղ բնակելու։ Ե

դաքսիա Թագուհին աշտարակ մի շինել տուած է վանքին հարաւակողմը, որ իւր անուամբը կը յիշուի, եւ եթէ ուխտաւոր կանայք պատահին սոոր մէջ կը բնակեցնեն՝ (եթէ գիշերը մնալու ըլլան)։ Դուռն այնչափ բարձր շինուած է, որ խիստ երկար սանդուղ մի պէտք է վեր ելնելու համար թէև վարէն ալ դըռներ կան գետնի հաւասար։ Քիչ ժամանակ յետոյ Ս. Եւթիմիոսի աշակերտ Հայր Սաբայ իւր վարդապետին յաջորդելով սոյն վանքն շինեց։

Վանքին դուռը հասնելուն, կրօնաւորներէն մին, որ վանքին կից եղած հիւսիսային բարձր աշտարակին վերայ պահպանութիւն կ'ընէ, զամբիւղ մի վար կը կախէ, և անով կ'ընդունի Երուսաղէմի Յունաց պատրիարքի կողմէ տրուած յանձնարարական գիրը, առանց որոյ կարելի չէ. որ ներս մարդ ընդունին։ ղթին վաւերական ըլլալը ստուգեն յետոյ՝ նշան կուտայ, և անմի-

ջապէս արտաքին երկաթի դուռը կը բացուի ։ Յիսուն ոտքով սանդուղ մի վար կ'իջեցնեն , վեր ելնելով երկրորդ երկաթի դռնէ մի անցնելէն յետոյ՝ ուրիշ աւելի կարճ սանդուղ մի կը կախեն և պզտիկ քարայատակ գաւիթի մի մէջ կ'ելնուի ։ Այս տեղ փոքրիկ մատուռ մի կայ բոլորշի ձեւով, որու մէջ է Հայր Սաբայի տապանը ։ Անոր քով է Ս. Նիկողայոսի եկեղեցին ժայռի մէջ փորուած , խիստ հին աւուրց եկեղեցի է , եւ անոր մէջ ուրիշ փոքրիկ տապան մի կայ , ուր ամփոփուած են Պարսից Խոսրով թագաւորի զօրաց ձեռքով նահատակուած ճգնաւորներուն մասունքները , եօթներորդ դարուն մէջ ։ Այն ժամանակներն նոյն վանքին մէջ 4000 կրօնաւոր կը ճգնէին , և շրջակայ սահմաններուն մէջ գտնուած բոլոր ճգնաւորութիւը 10,000ի կը հասնէր , որոն ամէնքը Հայր Սաբայի վանքի Վան հօր հրամանին տակն էին ։

Վանքին եկեղեցւոյն շէնքը բաւական հին է, ոսկեզօծ խաչկալներով, եւ բիւզանդեան նկարներով զարդարուած։

Կրօնաւորք արմաւէնի մի ցոյց կուտան եւ կ՚ըսեն թէ՝ Հայր Սաբայի տնկածն է, որուն արմաւները կորիզ (կուտ) չունին։

Յովհաննու Դամասկացւոյն գերեզմանըն ալ հոս է կ՚ըսեն, որուն վրայ է իւր ճգնարանը։ Անկէ կ՚երթուի այր մի և փոքրիկ մատուռ մի միւսիոնէ յատակով, ուր Հայր Սաբայ բնակած է կ՚ըսեն, եւ կեդրոնին վրայ կախուածի պէս շէնք մի է և Առիւծի այր կը կոչուի։ Յոյնք կը պատմեն թէ, օր մի Հայր Սաբայ դուրս ելած ըլլալով, առիւծ մի կուգայ այրին մէջ պառկելու, եւ դառնալուն սուրբը, առիւծը կը տեսնէ, և Աս-
ուծոյ ապաւինելով՝ ըստ սովո-
րութեանը ներս կը մտնէ եւ կը
սի ժամերգութիւնն ընել, դեռ
ւքը բերանը՝ քունը կուգայ՝ կը

սկսի մրափել, առիւծը քովը կը մօտենայ, թեզանիքէն խածնելով կը քաշէ դուրս կը տանի, կ'արթննայ Սուրբ ձգնաւորը, դարձեալ ներս կը մտնէ և կը շարունակէ իւր աղօթքը, դարձեալ մրափը կուգայ, եւ երկրորդ անգամ՝ առիւծը զինքը քաշելով դուրս կը հանէ այրէն, այն ժամանակ խիստ ձայնով մի կը դառնայ կ'ըսէ առիւծին, միթէ քեզ և ինձ բաւական տեղ չկա՞յ այս տեղ, եւ անկիւն մի ցոյց կուտայ կենդանւոյն որ հոն պառկի, առիւծն հընազանդելով՝ այն օրէն 'ի վեր սուրբ ձգնաւորին հետ մէկ տեղ կը բնակի այրին մէջ։ Յայսմաւուրքին մէջ կը յիշատակի թէ՝ Սուրբ Երասխմոս իւր խիստ սրբութեանը համար առիւծ մի իրեն կը սպասաւորէր, Յորդանանէն ջուր բերելով (¹), այս Սուրբին վանքը քիչ մի վարը պիտ

(¹) Յայսմ. Ապրիլ 25։ Հանդէս, Պատմ. Երուսաղէմի, յեր. 278։

տեսնենք ։ Ժամանակաւ սոյն երեւելի վանուց մէջ Հայ միաբանք եւս կը բնակէին, ինչպէս կը վկայէ Հաննէ. և վանքին մէկ մասն ալ իրենց ձեռքն էր մինչեւ յիշեալ Պատմագրին ժամանակ, բայց թէ որ ժամանակէն 'ի վեր հեռացած են անկէ, յայտնի չէ ։ Դեռ մինչեւ ցայսօր ականատեսք կը վկայեն, թէ մեծ եկեղեցւոյ գմբէթին մէջ Հայերէն երկաթագիր գրուածներ կան, նաեւ Հայերէն ձեռագիր գրեանք եւս գտնուած են հոն ։

Հայր Սոֆայի վանքէն ելնելով, եւ Երուսաղէմի ճանապարհը ետ դառնալով՝ Կեդրոնի եզերքը բռնած, մինչեւ աջ կողմի առաջին ճանապարհը՝ որ 20 րոպէ կը տեւէ, Կեդրոնին միւս եզերքը կ'անցնուի ։ Քանի մի քայլ եւս առնելով, աջ կողմը ճամբուն վրայ Պիր-էլ-Արապ կոչւած սառնիճը կը հանդիպի, ասկէ անդին Պետու-իններու սահմանն է ։ Բոլոր այս ճանապարհները ձորե-

րու հեղեղատներուն մէջ, լեռնե-
րու սառորոտներուն ու գլուխնե-
րուն վրայ ըլլալուն խիստ յոգնե-
ցընող են ։ Թէպէտ ոլորուն ճանա-
պարհները շատ են, այսու ամենայ-
նիւ գլխաւոր ուղղութիւնն է դէպ
'ի յարեւելք, և ամենասոսկալի ա-
նապատի մի մէջէ ալ կ'անցնուի։

Քառորդ մի եւս քալելէն յետոյ, բարձր տեղ մի կը հասնինք, ուսկէ կը տեսնուի Մեռելոց ծովը ։ 25 րոպէ աւելի անդին ձախ թեւի վրայ, ճանապարհին մօտ սառնիճ մի կայ Պիր-Էլ-Ահմար անունով, որու մէջ երբեմն ջուր կը գտնուի, բայց գոյնը ճերմըկեկ է ։

Տասը րոպէ եւս առաջ երթալով՝ քարակոյտեր կը հանդիպին խորհրդով դիզած, որպէս զի Մահմէտականք իմանան որ այս տեղերն Նէպի-Մուսայի դիմաց կը գտնուին՝ Նէպի-Մուսայ, այսինքն Մովսէս մարգարէ ըսուածը, խիստ հին վաքերէն մին է, չորրորդ դարուն մ

հիմնարկուած ։ Խոսրով Թագաւորի զօրքերը սոյն վանքին ալ չխնայեցին ։ Ժամանակէ յետոյ Մահմէտական Արաբացիք համարելով թէ Մովսէս մարգարէ աստ մէջ թաղուած է, տիրեցին անոր և քիչ շատ փոփոխութիւններ ընելով՝ Մինարէ մի եւս քովը տնկեցին, պահպանութիւնը քանի մի Հնդիկ կրօնամոլներու յանձնելով ,. որոնք Քրիստոնէից չեն թողուր ներս մտնելու ։

Մահմէտականք ամէն տարի սոյն գերեզմանին ուխտի կ'երթան մեծ բազմութեամբ, Ծաղկազարդի կիւրակէէն երկու օր առաջ՝ ուրբաթ օր, և կը վերադառնան մէկ շաբաթ վերջ. ուխտագնացութիւնն և վերադարձն շատ հանդիսաւոր կը լինի ։

Կ'ըսուի թէ այս ուխտագնացութիւնը հաստատողն եղած է Էյիւպ-ողի Սուլթան Սալահէտտինի, սա երբ որ տիրէ Երուսաղէմին կը թոյլատրէ Քրիստոնէից անարգել կատարել Ս. Տեղեաց ուխտաւորութիւ-

նը, սակայն տեսնելով Քրիստոնէից մեծ բազմութեամբ Երուսաղէմ ժողովուիլը, եւ կարծելով որ գուցէ այս միջոցաւ կարողանան խաչակիրք վերստին տիրել Երուսաղէմի և կամ առիթ տան Քրիստոնէից Երուսաղէմի բնակիչ Մահմէտականաց վրայ բռնանալու, այս Նէպի-Մուսայի ուխտաւորութիւնը կը հաստատէ Ճիշդ Աւագ շաբթու մէջ, յորում ամէն կողմէն Քրիստոնէայք կը ժողուին յԵրուսաղէմ, որպէս զի Մահմէտականք ևս ժողուելով շրջակայներէն կարենան պաշտպանել ինքզինքնին Քրիստոնէից դէմ, եթէ պատահի Քրիստոնէից կողմէն այդպիսի բան մը։

Այն գերեզմանին ինչպէս ըսինք շատ փոփոխութիւններ կրած է և հետզհետէ նաեւ նորոգութիւններ եղած է եւ Պափմօ-Լի-Նէրէ կ'երե' որ նորոգողներէն մին եղած է Սուլթան Տահէր Պիպրէս, երբ սա Հիճրի 668ին Մէքքէէն կը վերադառնայր

բուսաղէմի ճանապարհաւ. և ապա Գոլնիդաս Զէրրէղ Թագաւորը. այժմեան պարիսպն Սայսայի ընդհանուր կառավարիչ Աղփ-Իօլլահ փաշայն չինել տուած է կ'ըսուի։

Իսկ թէ Մովսէս մարգարէն ինչպէս այս տեղ մեռաւ և թաղուեցաւ, ահաւասիկ Մահմէտական Արաբացւոց աւանդութիւնը։

« Հարիւր քսան տարեկան հասակն հասած էր Մովսէս՝ առանց փոքր տկարութիւն մի զգալու, ըստ որում Աստուած, որու սիրելին էր, խոստացած էր որ այս աշխարհիս մէջ թողու զինքը եւ իւր քով չըկանչէ՝ մինչեւ որ ինքն իւր յօժար կամօքը գերեզման չ'իջնէ։

Մովսէս, որովհետեւ գիտէր թէ իւր ժողովուրդը իւր մահուանէն յետոյ ուղիղ ճանապարհէն մոլորուե-
--լ՝ Աստուծոյ բարկութեանը պիտի սնդիպէին, մեռնելու փոյթ չէր ըներ, և կը զգուշանար ամենեւին -բեզմանի չ'մօտենալու։ Սակայն

ժամանակին եկած հասած է՞ր նորա
մարմնոյն յաւիտենական հանգիստ
տալու։ Օրին մէկը, երբ նա լեռնե-
րու վրայ կը շրջէր, ձիւնի նման ճեր-
մակ բլրի վրայ չորս անձինք տեսաւ,
որոնք մեծ աշխատանքով ժայռին
կողերուն վրայ խուց մի կը բորէին։
Ասոնք Աստուծոյ չորս հրեշտակնե-
րն էին ու Թանձրկեկ վերարկուով
մի պլլուած էին, որպէս զի չ՚կաս-
կածի Մարգարէն։ — « Ի՞նչ կ՚ընէք
դուք այս ամայի տեղը » հարցուց
իրենց Մովսէս։ « Մենարան մի կը
փորենք, ուր տեղ մեր Թագաւորը
պահել կ՚ուզէ իւր ամենէն Թան-
կագին գանձերէն մինը, — Պատաս-
խանեցին աշխատողները. — ասոր
համար է որ այս ամայի տեղը եկանք
փորելու, մեր գործը գրեթէ լրա-
ցած է, հիմակ պիտի սպասենք այս
տեղ մինչեւ Թանկագին գանձուն
գալը, որ շատ չուշանար »։

Օդը շատ տաք ըլլալուն, մ
տեղերը տեղ մի չկար որ Մովս

ջերմութենէ պատըսպարուի , սա-
կայն փորուած խոռոչը միայն աղուոր
շուք մի և պատրողական զովութիւն
մի կ՚ընծայէր , Մովսէս մէջը մտաւ
ևներսի կողմը նստարանի նման քարէ
յօրինուած տեղւոյն վրայ հանգիստ
առաւ ։ Նստելու չմնաց՝ չորս աշ-
խատաւորաց մին քովը մօտենալով
մեծ յարգութեամբ խնձոր մի մա-
տուց իրեն , այնպէս սիրուն գու-
նով և անոյշ հոտով, որ տեսնողին
բերնի ջրերը կը վազցնէր ։ Մարդա-
րէն ձեռքէն առաւ խնձորը և քթին
մօտեցընելու չ՚մնաց՝ ինկաւ մէկէն
յաւիտենականութեան քնոյն մէջ ։
Հրեշտակները՝ որ Ամենակալին հը-
րամանակատար պաշտօնեայներն է-
ին , նորա հոգին թեւերնուն վրայ
կրելով Աստուծոյ աթոռոյն առաջին
տարին , մարմինն նոյն այրին մէջ
— ըլլով ։ Այն ժամանակէն 'ի վեր
ն ժայռը , որ օրէնսդիր Մարդա-
ն պատուեց , դեռ իւր արտաքին
ամկութիւնը կը պահէ , զոր եթէ

քիչ մի փորուելու ըլլայ, տակը դժո-
խատիպ սեւութիւն մի կը տեսնուի ։

Տասն և եօթը բոպէին արագըն-
թաց զառ 'ի վայրէ մի վար իջնելով՝
Ջրամբարի մի քով կը հասնինք Պէր-
ճէր-Հէմէլֆօս անուն, որ ժայռին մէջ
փորուած է, միշտ ջուր չգտնուիր
մէջը, և ամառը վնասակար է ։ Յե-
տոյ 18 բոպէին Ճանապարհն այնքան
կը գէշնայ, որ հարկ կ'ըլլայ ոտքով
քալելու. 17 բոպէ աւելի անդին
լայն ձորի մէջէ կ'անցնուի Ռաֆէ—
Խէրամլէ անուն, կամ բստ այլոց Ռա-
ֆէ-Էս-Սարամէէ ։ Յետոյ 43 բոպէի չափ
Լէպինա կոչուած պզտիկ դաշտի մի
մէջէ քալելով, ձախ դին կը թողուի
Եռիքովի Ճանապարհը և Ռաֆէ—Էլ—
Քնէյրէ ձորը կ'իջնուի, որ մեծ հե-
ղեղատ մի է, ուր անձրեւ եկած
ժամանակ միայն ջուր կը գտնուի ։

Ութ բոպէ յառաջ քալելով՝ զա-
'ի վայր մի կը հանդիպի, ուր խոհ-
մութիւն բանեցընել ուզողը պէտ
է դարձեալ ոտքով անցնի եթէ չո

դէր որ գլուխը պատռուի ։ Այս տեղ ալ կը գտնուի այն Ճերմակ քարերէն, որոնց մէջը սեւ է ; գարշ հոտ մի ունի ու ածուխի նման կը վառի ։

Քսան և հինգ րոպէ եւս սոյն հեղեղատին մէջէն քալելէն յետոյ, աջ կողմը հանդիպած Ճանապարհը կը շարունակեմք ձորին եզերքովը, և երեք րոպէէն ուրիշ քարակոյտերու առջեւէ կ'անցնինք ։ Տասը րոպէէն ուրիշ Ճամբայ մի եւս թող կուտամք ձախ թեւի վրայ՝ որ Երէւան կը տանի, եւ եօթը րոպէ եւս քալելով Մեռեալ ծովը դիմացնիս կը տեսնեմք, և ծովային հոտը սաստկապէս կը զարնէ մարդոյս քթին ։

Երեսուն րոպէ մի ծովեզերեայ նշաններ կրող՝ մերկ և հոս հոն ածխացեալ ժայռեր ունեցող գետնէ մը անցնելէն յետոյ Ուատի-էլ-Տապպոր հասնինք, որ Պիծակներու ձոր ըսել է, լայն հեղեղատ մի է Մեռեալ ծովուն կողմը՝ մացառներով

լցուած ։ Անկէ անդին գետինք շատ տեղեր աղայքին նիւթերէ գոյացեալ ճերմակ բիծերով ծածկուած է, որ գետնին երեսը կեղեւներ կը կապեն ։ Ճանապարհին հետքը երբեմն աներեւոյթ կ'ըլլայ, եւ մացառներու եղեգնուտներուն, օշնանի եւ ուրիշ տունկերու թուփերուն մէջ կը մոլորի ։ Այս տեղուանքը, մանաւանդ Ռափ-էփ-Տապպորի մէջ որսորդները կը գտնեն տատրակ, կաքաւ, կարմրաթեւ սարեկ [1], շնագայլ, վիթ [2], նապաստակ՝ բայց քիչ, և ուրիշ կենդանիներ ։

Երեսուն բոպէ մի եւս աւելի հեռուն աջ կողմը Այն-էլ-Սէպիէ ըսուած առուակին առջեւէն կ'անցնուի, որու ջուրը խմելու կուգայ, չորս դիէն եղեգով պատած է և մէջը մանրիկ ձկներ կը սնուցանէ ։ Անկէ մինչեւ Մէ-էալ ծով 12 րոպէ կը մնայ և թումբի մի վրայէ կ'անցնուի, որ է ծովուն եւ Մ'հէյէ

1 Գարա թավուգ ։ 2 Ղազալ ։

բռուած պզտիկ հեղեղատին մէջտե-ղը ։ Ձմեռը անձրեւներու ժամանակ յիշեալ Թումբը ջրով կը ծածկուի , ու հեղեղատին ջուրը ծովուն հետ կը միանայ , վասն որոյ վտանգաւոր կ'ըլլայ անցնիլը ։ Թումբին վրայէն անպակաս են փայտեր եւ մինչեւ անգամ ծառեր , զոր Մեռեալ ծովը Յորդանանէն ընդունելով՝ իւր եզերքներուն վրայ դուրս կը նետէ ։ Պզտիկ կղզեակ մի կ'երեւի հոս Րէճօմ—Լութ անունով, որ Ղովտայ կոյտը կը նշանակէ , եւ շատ անգամ ջրով պատած կ'ըլլայ ։ Կան շէնքի քարեր և հիմ մի՝ որ 7—8 մեդր երկայնութիւն և 2 մեդր լայնութիւն ունի ։ Ծովեզերքէն 200 մեդր հեռու է ։

**ՄԵՌԵԱԼ ԾՈՎ** ։ Երուսաղէմի արեւելակողմը՝ 10 ժամ հեռու է Մեռեալ ծովը , Միջերկրականէն 392 մեդր և Երուսաղէմէն 1171 մեդր ցած է , երկու անհուն լերանց շղթայի մէջ է , Յուդայի լեռները ա-

բեւմուտքէն և Մովաբայ լեռները արեւելքէն . վերջինին մէջ է՝ Մեռեալ ծովուն հիւսիսային ծայրին դիմացը, Նաբաւ լեռը, ուր մեռաւ Մովսէս տեսնելով նոյն տեղէն խոստացեալ երկիրը . Բ. Օրէն. ԼԴ. 1—12. Երեմիա մարգարէն հոն այրի մէջ ծածկեց Տաղաւարը, Կտակարանաց Տապանակն ու Խնկոց սեղանը, եւ դուռը ամրացուց . Բ. Մակ. Բ. 5.

Մեռեալ ծովը 20 մղոն երկայնութիւն եւ 4 մղոն միջին լայնութիւն և 340 մետր խորութիւն ունի.

Հին ժամանակ բարեբեր երկիր մի էր և Ջոր ողէ կը կոչուէր ըստ սուրբ Գրոց, և Յորդանանու ջուրը ոռոգանելով՝ Աստուածային դրախտ կը դառնար . Ղովտ Աբրահամու քովէն զատուելով՝ հոս եկաւ բնակեցաւ. Հինգ քաղաք կը յիշատակուին այս տեղ, որ են՝ Սոդոմ, Գոմոր, Ադամայ, Սեբոյին և Սեգովր որոնք իւրաքանչիւրն առանձին թագաւորներ ունէին. Քիչ ժամանակ

յետոյ ուզելով Աստուած այս քա-
ղաքաց ժողովուրդը պատժել իրենց
գործած չար մեղքերուն համար, ո-
րոնց մէջ և ոչ տասն արդար մար-
դիկ կային, Ղովտը միայն իր կնոջն
և երկու աղջկանց հետ դուրս հա-
նելով հրեշտակաց ձեռօք, յերկնից
ծծումբ և կրակ մաղեց վրանին, և
այրեց Սոդոմն ու Գոմոր և շրջակայ
միւս քաղաքները. Ծննդ. ԺԹ. 24:

Երեք գետ կը հոսեն Մեռեալ
ծովուն մէջ, նախ՝ Յորդանան գետը,
որոյ ջրերը առանց խառնուելու ծո-
վուն ջրին հետ, հիւսիսային կողմէն
մտնելով հարաւակողմէն դուրս կել-
նէ. Երկրորդ՝ Կեդրոնէ գետը, որու
ջուրը Մովաբայ լեռներէն բղխող
հանքային տաք աղբիւրակներէ կը
գոյանայ. Ասոր մէջ մտնելով Հե-
րովդէս Մեծն՝ փոխանակ առողջու-
թիւնը գտնելու, իր մահը գտաւ.
Յովսեփ. Ա. 21: Երրորդ՝ Առնոն գե-
տը զոր տեղացիք Ուատի-էլ-Մօճիպ
կ'անուանեն ուսկէ Իսրայէլացիք

ցամաք ոտքով անցան, Թէ—ջ. ԽԱ. 13:

Մեռեալ ծովուն ջրին խիստ աղի ըլլալն է անշուշտ պատճառ, որ մէջը ամենեւին կենդանի չի գտնուիր, Ջուրը կպչուն է, բայց բիւրեղի նման պայծառ, հնար է մէջը լող գալ առանց վտանգի, և ծանրութիւնը չըթողուր որ մարմինը խիստ խորը իջնէ, այլ ջրին երեսը լաթի նման թեթեւ կը բռնէ, դուրս ելնելէն յետոյ հաստարակ ջրով պէտք է լուացուիլ որ աղիութիւնը երթայ:

Մեռեալ ծովէն դէպ 'ի հիւսիսային արեւելք 7 րոպէ չոր գետնի մի վրայ քալելով, յետոյ 40 րոպէի չափ չոր մացառներու մէջէ, և յետոյ դարձեալ 45 րոպէ դէպ 'ի հիւսիս չոր երկրի վրայէ անցնելով՝ պզտիկ ձորակի մի մօտ կը հասնուի, որ ձմեռը ճահիճ և ամառը կանաչութեամբ ծածկուած կ'ըլլայ: Ե կու րոպէ եւս քալելով Յորդան ափունքը կը հասնուի, և 5 րո

եզերքը բռնած երթալով մացառուտ տեղ մը կը հանդիպի , որուն մէջէն անցնելով՝ Գրոպէին կը հասնինք այն տեղ , ուր Տէրն մեր Յիսուս Քրիստոս Յովհաննու Մկրտչի ձեռօք մկրտուեցաւ ։

ՅՈՐԴԱՆԱՆ ։ Յորդանան գետին ակունքը Լիբանան լեռներէն և յանուանէ յիշատակեալ՝ մեծ Հերմոնէն է , որ Տիբերական ծովէն անցնելով և քառասուն մղոնաչափ տեղ պտըտելէն յետոյ Մեռեալ ծովուն մէջ կը թափի , խիստ ոլորնթաց լինելուն , լողորդ մը որքան ալ վարպետ ըլլայ , վտանգի կը հանդիպի , ամենէն խոր տեղը 5 մետր է , լայնութիւնը 50 էն 70 մետր ։ Յորդանանու բոլորտիքը երկրաւոր դրախտ մի է , ուր գարունը տարին տասներկու ամիս կը տիրէ , ոչ կանաչեղէնք կը պակսին և ոչ թռչունները օտար երկիր կը հեռանան ։

Աւանդութեամբ կ'ըսուի թէ Խաղէլացիք գետոյն այս տեղը հաս-

նելով, ցամաք ոտքով այս կողմի ե-
զերքն անցան. Յես. Գ. 16, 17։
Յետոյ Իսրայէլի ժողովրդոց հրա-
մայեց որ նոյն տեղացմէ 12 քար
վերցընեն տանին, զորոնք յետոյ իւր
բանակին մէջ դնել տուաւ՝ ի յի-
շատակ այն սքանչելեաց, որոնց ա-
կանատես եղան, այսինքն Յորդա-
նանու ջրոյն երկուսի բաժնուելով
այնքան բազմութեան ցամաք ոտ-
քով անցնիլը. Յես. Դ. 3։

Այս տեղս դարձեալ Եղիայ մար-
գարէ իւր վերարկուովը ջրին զար-
կաւ՝ ցամաք ոտքով իւր աշակերտին
Եղիսէին հետ անցաւ միւս կողմը.
Դ. Թագ. Բ. 8։ Աստ մկրտեցաւ Քրիս-
տոս, և հաւանական է որ այս տե-
ղէս անցաւ միւս կողմը Յովհաննու
առջի մկրտած տեղը. Յովհ. Ժ. 40։

Քրիստոնէութեան առջի դարե-
րուն անապատասէր Ճգնաւորնե
բազմութեամբ կուգային Յորդանա
նու եզերքները բնակելու։ Քրիստո
սի Տեառն մերոյ մկրտուած տե

գետնին մէջ մեծ խաչ մի տնկուած կար չորրորդ դարուն մէջ, և գետնին եզերքը երկու կողմանց մարմարեայ քարերով ծածկուած էին ։

Այս տեղւոյս դիմացը միւս եզերքին վրայ Մարիամ Եգիպտացին խստակրօն կենօք 33 տարի ապաշխարելէն յետոյ՝ վախճանեցաւ և Զոսիմոսի ձեռօք հոս թաղուեցաւ ։

Յորդանանէն ետ դառնալով մինչեւ այն ճանապարհը որ Մեռեալ ծով կը տանի, ձեռք կ'առնումք այն շաւիղը որ յարեւմուտք կ'առաջնորդէ քիչ մի դէպ 'ի հիւսիս միտելով ։

Մացառուտ տեղէն դուրս ելնելուն՝ աջ ու ձախ դին մանր մունր բլրակներ կ'երեւին կանոնաւոր ձեւերով, որ կարծես թէ մարդոյ ձեռքով շինուած են ։ Գետէն 15 րոպէ հեռանալով, չոր գետնի մի վրայ գտնենք զմեզ, և աջ դին հիւսիսային արեւելք նայելով ճանապարհէն 2 հազարամետր ներս աւերակ մնք մի կը տեսնուի, զոր Արաբա-

ցիք Քասր—էլ—Եահուտ կ'անուանեն ։ Այս վանքն է յանուն Ս. Յովհաննու Մկրտչի կառուցեալ, զոր Հաննէ եւս.կը յիշատակէ երես 276 ։

Նահր—էլ—Քէլթ ըսուած հեղեղատը կը հասնինք 47 բոպէին, որու եզերքները կանաչութեամբ զարդարուած են տեղ տեղ ծաղիկներով ։ Այս հեղեղատը Ձոր Աքովրայ կոչուած է Սուրբ Գրոց մէջ. Յեսու. է. 24 ։

Հոս մօտ է Գաղգաղա, նախակողմեան եզերքին վրայ փոքրիկ բլուր մի է, զոր տեղացիք Թէլ—Ճըլճուլ կը կոչեն ։ Իսրայէլացիք Խոստացեալ երկիրը ոտք կոխելնուն առաջին կայանն ըրին Գաղգաղան, ուր Յեսու 12 քարերովը խորան մի կանգնեց ։ Չորրորդ դարուն սոյն քարերը այս տեղ կը կենային դեռ, եւ եօթներորդ դարուն մէջ եւս տեսնող կայ եկեղեցւոյ մի մէջ դրուած, որ Ս քայէլ հրեշտակապետի անուն նուիրուած էր ։ Այսօր քարերէ

զատ քան չտեսնուիր , և տեղ տեղ միւսիոնով շինուած յատակներու աւերակներ կ'երեւին ։

Հարաւային կողմը , մէկ մղոն հեռու Տէյր—Էլ—Համըլար կոչուած հին վանքի մի աւերակներ կան յանուն Ս․ Երասիմոսի ։ Վեշտասաներորդ դարուն մէջ դեռ կանգուն կը կենար եւ Յոյն կրօնաւորներ կը բնակէին ։ Անկէ յետոյ շատ ժամանակ չէ տեւած՝ աւրուեր է , եւ հիմակ մէկ մաս մի միայն կանգուն կը կենայ , որու վրայ նկարներ կ'երեւին ։

Երեսուն րոպէին Երիխով կը հասնինք , որ Բենիամինի ցեղին քաղաքներէն մին էր ։

Այն քաղաքը Յեսու Քանանացւոցմէ առաւ , փողերու ձայնով պարիսպները կործանելով , եւ Ռախաբէն 'ի զատ բոլոր բնակիչները սրէ [illegible]ցուց ։ Ինքը Յեսու անէծք դրաւ [illegible]աջի Աստուծոյ այն մարդոյն որ [illegible]ին շինելու լինի ․ Յեսու Զ․ 26 ։

Մեծն Հերովդէս ձի վազցընելու

տապարէզ, ամփիթէատրոն, և աշտարակ մի շինել տուաւ, հոս խեղդել տուաւ իւր Արիստաբուլոս որդին, որ Մակաբայեցւոց վերջին շառաւիղն էր մօրը կողմանէ: Երիքովի մէջ դարձեալ բանտարկել տուաւ իւր մեծամեծները, որ ինքը մեռնելէն յետոյ, ըստ որում գէշ հիւանդացած էր, զանոնք բոլոր սպաննեն, որ համաշխարհական սուգ մի ըլլայ իւր մահուան օրը:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս գիշեր մի կեցաւ Երիքովի մէջ:

Զակքէի տանը տեղը, ուր յետոյ եկեղեցի շինուեցաւ, կը կարծուի թէ աշտարակին մօտ եղած ըլլայ, ուր հիմայ անկանոն զօրք կը կենան պահպանութեան համար: Վեսպասիանոս ամրոցներ շինեց հոս և պահապաններ դրաւ. Յովսէ. Պատ. պատեր. Դ. 28. և Երուսաղէմի պաշարման միջոցին Երիքով կործանեցաւ թուոյն Քրիստոսի: Ատրիանոս կր կին շինեց եւ Քրիստոնէից քաղ-

եղաւ ։ Երէքովլի եպիսկոպոսներէն գտնուած են Նիկիոյ, Կոստանդնուպոլսոյ, Լիւդի ժողովներուն մէջ ; և Գրիգոր անուամբ եպիսկոպոս մի եւս Երուսաղէմի ժողովքի մէջ գտնուեր է Անթիմոսը նզովելու համար ։ Յուստինիանոս կայսրը եկեղեցի մի եւ հոգետուն մի շինել տըւաւ ուխտաւորաց համար ։ Քանի որ Մահմէտականաց ձեռքն ինկաւ Երէքովլ, կորսնցուց իւր շուքը, եւ հազիւ 250 բնակիչ մնաց մէջը ։

Մօտ տարիներս (1840) Եգիպտոսի Իպրահիմ փաշային երեսէն ալ քիչ վնասներ չկրեց սոյն դժբաղդ քաղաքը. Յորդանանու մօտերը Պէտուիններէ յարձակում կրելով, գունդ մի զօրք խրկեց Երէքովլ, որք գնացին քաղաքը կողոպտելով աւերեցին ։

Այն քաղաքը հին ժամանակ Ար[illegible]ենեաց քաղաք եւս կը կոչուէր, որը խիստ բարեբեր է, ժամանակու խիստ շատ բալասանի ծառ կը սնուէր ։ Կլիմային մեղմ ու բարե-

խառն է, ջուրն առատ, եթէ բաւ մշակուելու լինի ; զարմանալի արդիւնքներ կուտայ, կրնայ լաւ բրինձ, քրքում[1] ; ըեղակ[2], շաքարեղէգ և թթենիներ յառաջ բերել. Նոյնպէս վուշ[3], կանեփ[4] եւ ուրիշ շատ տեսակ բերքեր:

Երկրային բոլորակը մացառուտ է և փշաբեր թուփերով լեցուն, և երկու տեսակ պտուղ կը բերեն, մին Տօմ բուսածը որ մանր կեռասի նման պտուղ մ'է՝ դեղին գոյնով և անհամ ճաշակաւ, երկրորդն Զըփիւռի ծառը, որուն պտուղը ձիթապտղի կը նմանի եւ քիչ մը կայ վրան: Կորիզին 'մէջէն դեղինի վրայ ճերմակ իւղ մի կ'ելնէ, որ սրբի վէրքերու օգտակար կը համարուի:

Գետը 'ի հիւսիսային արեւմուտք գնալով Տօմի եւ Զըփիւռի թուփերուն մէջէն ոլորուն ճանապարհէն 25 րոպէէն Այն-էս-Սուլթան բառա

1 Զաֆրան: 2 Զիֆէա: 3 Քէթէն: 4 Քէնտիր

ակը կը հասնինք, այն է Հաննէին Եղիսէի աղբիւր կանչածը, երես 276, ըստ որում ջուրը յառաջագոյն գէշ ըլլալով, յիշեալ մարգարէն աղօթ-քով լաւացուց. Դ. Թագ. Բ. 19. այս պատճառաւ իւր անուամբը կը յիշուի:

Անկէ 20 րոպէ հեռի, դէպ 'ի հիւսիսային արեւմտակողմն է փոր-ջոբեան ջէոը, ճանապարհին վրայ երկու երեք տեղ շինուԹեան աւե-րակներ և ջաղացքի ահագին քարեր կը տեսնուին, որ կ'երեւի Թէ եղէգ-նաշաքարի ջաղացքի են, ըստ որում մինչեւ տասն և չորրորդ դար շա-քարեղէգի մշակուԹիւն կ'ըլլար այս կողմերն: փորձուԹեան լեռն այն է՝ ուր Տէրն մեր Յիսուս Քրիստոս քա-ռասուն օր և քառասուն գիշեր մի-նաց ծոմապահուԹեամբ, և յետոյ սատանայ զինքը փորձել: Լե-ռնը վրայ շատ տեղ ծակեր ու 'րչեր կան, ուր ճգնաւորք կը 'ակէին հին ժամանակները: Անոնց

մէջ մէկ հատ մի կայ լերանը արեւմտեան կողմը, ձուածեւ դանով, այն է՝ ուր ըստ աւանդութեան կեցաւ Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ դառնալով մինչեւ այն տեղ ուր ճանապարհը դէպ 'ի վար կ'իջնէ, կրնայ մարդ ասկէ կէս ժամու մէջ Փորձութեան լերան գլուխն ելնել, ուր ըստ աւանդութեան սատանան փորձելով զՓրկիչն մեր՝ աշխարհիս բոլոր թագաւորութիւնները նորա ցոյց տուաւ։ Քրիստոնէութեան առջի դարերուն մէջ պզտիկ եկեղեցի շինուած կար այս տեղ, որուն խորանին մասը դեռ կը կենայ։

Փշալից անտառին մէջտեղէն դէպ 'ի հարաւային արեւմուտք յառաջ երթալով, (Փորձութեան լեռը աջ կողմը թողլով), 7 րոպէին փոքրիկ բլուր մի կը հանդիպինք Դեբել-Սամր անուն, որ կարծես թէ մարդոյ ձեռօք շինուած է, 20 րոպէ մի ե քալելով՝ Նահր-էլ-Քելթ կը հանդիպ

ուսկէ անցանք Երուսաղէմէն Երի-
քով եկած ժամանակնիս ։ Այս տե-
ղէն ջուր մի կ՚անցնի , որու վրայ
ժամանակաւ կամուրջ մը կայ եղեր ,
ինչպէս աւերակները կ՚երեւին ,
նաև ճանապարհին վրայ տեղ տեղ
հին շէնքերու մնացորդներ կան լե-
րան ստորոտը , որոնք Խըրպէթ-Էլ-Քա-
ֆուն կը կոչուին ։ Այս տեղւոյն
համար կ՚ըսէ աւանդութիւնը , թէ
Փրկիչն մեր Յիսուս , կոյրին աչքը
բացաւ , Երիքովէն ետ դառնալու
ժամանակ · Մարկ · Ժ · 46—52 ։

Նահր-Էլ-Քէլթէն մեկնելով դէպ
՚ի յարեւմուտք 10 րոպէին գէշ ճա-
նապարհաւ մի կուգանք Աքպար-Էլ-
Բէյղա , ձախ կողմերնիս թողլով Պէյթ
-Էր-Տապպար կոչուած ժայռի մի վը-
րայի փոքրիկ շէնքը ։ Անկէ 25 րո-
պէին դժուար ճանապարհներէ քա-
լով՝ աջ կողմերնիս տառնիճ մի կը
անդիֆալի Խան-Խաթ-Տապպար անուն ,
որ միայն ձմեռը ջուր կը գտնուի ։
ասը րոպէ եւս քալելով Ջրանցքի

մի քովերէն , ալ կողմերնիս Ճանապարհէն 70 մեդր ներս հին վանք մի կայ , ուր ժամանակաւ անապատական մի կը բնակէր Յովհաննէս անուն՝ մականուանեալ Խողիկն ։ Յետոյ Նահր-էլ-Քէլպը ալ կողմը թողլով՝ ձախ դին Ռաաֆ-էլ-Քրաք հեղեղատին ուղղութեամբ յառաջ գնալու է միշտ մեծ Ճանապարհը բռնելով, վերջապէս հեղեղատին մէջ կ'իջնուի ; եւ 30 րոպէ մի քալելէն յետոյ դուրս կ'ելնենք գէշ դարուվերէ մի , ասկէ անդին ձախ դին կ'իյնայ Ռաաֆ-Րումանի ձորը ։ 40 րոպէին Խան-էլ-Ահմար , և 20 րոպէին՝ դէպ 'ի Հիւսիս դառնալով՝ Խան-էլ-Ատրուր կը հասնինք ։ Այս տեղն կ'երեւի թէ հին ժամանակներէն 'ի վեր իջեւաններու համար տեղ շինուած կար ։ Նոյն տեղւոյն վրայ Իբրահիմ փաշային եւս խան մի շինել տուաւ , որ այժմ աւերակ է , դեռ մինչեւ ցայսօր սառնիճները կը կենան ։ Հիւսիսային արեւելակող

քլրին վրայ լաւ ամրոց մի կայ, խըրրամներով շրջապատուած, ուր կ'երեւին աղեղնաձեւ և ձուաձեւ կամարներ ։

Դէպ 'ի յարեւմուտք մեծ ճանապարհի վրայ գնալով, և 25 րոպէէն դաշտի մի մէջէ անցնելով, ուր տեղ Իպրահիմ փաշայն Պէտօ-ւիններու դէմ յաղթութիւն մի տարաւ, պզտիկ բլուր մի կ'ելնենք, և յետոյ աստիճաններէ վար Ուատի-Սիւր քարուած ձորին մէջ կ'իջնենք, 10 րոպէ մի և յետոյ ուրիշ ձոր մի կ'իջնենք Ուատի -Քէօղ-էօ-Սէծ անուն, ասկէ ալ անդին 28 րոպէ գնալով՝ ձախ կողմը հեղեղատ մի և Նէպի Մուսայ գնալու շաւիղը թողլով՝ Ուատի-էլ-Հատտապ ձորը քանած կ'երթանք, որուն ծայրը՝ մէկ ժամէն յետոյ՝ կը հասնինք Աստէլջոյ աղբիւրը, զոր տեղացիք Պիր -Հաստուտ. (մկուրք հայ) կ'անուանեն զ Հանճէ կարծած է. Թէ այս է նոյն աղբիւր բղխած Սամփսոնի զբեւրը. Դատ. ԺԵ. 15-19. Հուս. ալ

իջեւանի մի աւերակ մնացորդներ կը տեսնուին ։

Առաքելոց աղբիւրէն մեկնելով, քարոտ ճանապարհներով, 18 րոպէ յետոյ ձախ կողմին վրայ սառնիճ մի կը տեսնուի քիչ մի ներսով, Պիր-էլ-Այփ անուն ։ Հինգ րոպէ մի եւս քալելով լեռնադաշտի մի վրայ կ՚ելնենք, ուսկէ արեւմտեան կողմը Բեթանիա գիւղը՝ և Հարաւային դին Ապու-տիս կոչուած գիւղը կ՚երեւի, Ապուտիսը հին Բաւուրիմ քաղաքը կը կարծուի, Սեմէյի հայրենիքը, որ Աբիսողոմայ երեսէն Դաւիթ փախչելու ժամանակը անիծեց զինքը. Բ. Թագ. ԺԶ. 5։ Անկէ ալ 5 րոպէ յառաջ գնալով կը հանդիպինք այն տափարակ Քարաժայռին, որուն վրայ Քրիստոս նըստած ժամանակը Մարթա եկաւ ու ըսաւ իրեն. «Տէ՛ր՝ եթէ հոս եղած ըլլայիր, եղբայրս չէր մեռներ. Այն տեղւոյն Ուխտը արդէն մ
Եօթներորդ այցելութեան մէջ կ
տարեցինք. և նոյն տեղուանքը մ

ջիւ Ղազարոսի գերեզմանը և անկէ մինչեւ Համբարձում և Գեթսեմանիի ձորէն անցնելով, մինչեւ յԵրուսաղէմ գալու ճանապարհը բարեպաշտ Ուխտաւորք արդէն սորված են. աստանօր մեր Մետասաներորդ-այցելութիւնն չը լրացուցած կ'ուզենք Քեբրոնի և Գազէի վրայ եւս համառօտ քանի մը տեղեկութիւններ տալ բարեպաշտ ուխտաւորաց։

ՔԵԲՐՈՆ։ Քեբրոն քաղաքն Երուսաղէմի արեւմտեան հարաւակողմն կ'իյնայ և ութ ժամու չափ հեռու է, որուն Մահմէտականք Խալէլ-Րահման (բարեկամ Աստուծոյ) կը կոչեն, և մենք՝ Հայր Աբրահամ։

Այս քաղաքն յառաջագոյն Կարիաթ-Արբա (Արբայի քաղաք) կը կոչուէր, որ մեր Աստուածաշունչին, Ծնն. ԻԳ. 2։ Յես. ԺԴ. 15. եւ ԺԵ. 13. ուխներուն մէջ Արբոյ, իսկ Դատ. 10, գլխուն մէջ Կարիաթ-Արբոյ ան-ր գրուած է. և Եգիպտոսի Տանա-ն քաղաքէն եօթը տարի առաջ

շինուած է կ'ըսէ Ս. Գիրքը. Թուոց. ԺԳ. 23։

Թէև Նոր Կտակարանի մէջ այս քաղաքին անուան յիշատակութիւնք չիկայ, սակայն Հին Կտակարանին մէջ շատ տեղեր յիշուած է երևելի դէպքերով, և այս պատճառաւ Հրէից ազգին քով Ս. Երուսաղէմէն յետոյ մեծ ուխտատեղի համարուած է այս Քեբրոն քաղաքն։

Աբրահամ՝ Խառանէն Քանանու երկիրը գալուն, նախ Բեթէլի և Գայի մէջ տեղերը իր վրանը հաստատելով բնակեցաւ, եւ ապա եկաւ 'ի Քեբրոն, ուր Մամբրէի կաղնիներուն մէջ իր վրանը հաստատելով սեղան շինեց Տիրոջը. Ծննդ. ԺԳ. 18. ուր տեղ Տէրը երևելով Աբրահամին երկու հրեշտակաց հետ հիւր եղաւ անոր. Ծննդ. ԺԸ. 1։

Նախ Աբրահամու կինն Սառա- ապա Աբրահամ եւ ապա Իսահակ աստ մեռան, եւ աստ թաղուեցան Մամբրէի կաղնեայն դիմացը 'ի Կր

այրն (Մաքփելայի այր) զոր Աբրահամ ծախու առած էր Քետացի Սահառի որդի Եփրոնէն, Սառայի մահուան ժամանակ. Ծնն. ԻԳ. 2— 20. ԻԵ. 9. եւ ԼԵ. 29: Ռեբեկայ եւ Լիայ եւս այս այրին մէջ թաղուեցան:

Յակոբը նահապետ ալ երբ մեռաւ յԵգիպտոս, մարմինն հոս բերին տղայքը և թաղեցին այս այրին մէջ. Ծնն. ԼԷ. 29: Եւ որքան Յովսէփ կենդանի էր՝ իր եղբայրներէն ով որ մեռնէր Եգիպտոսի մէջ, հոս կը բերէր եւ թաղել կուտար դարձեալ նոյն այրին մէջ:

Մովսէս Մարգարէի կողմէն այդ կողմի բնակչաց որքանութիւնն եւ քաղաքաց որպիսութիւնն հանկընալու համար ղրկուած 12 լրտեսներն այս տեղի ձորէն խաղողի ողկոյզ մի կտրեցին ուռովք մէկ տեղ, երկու հոգի լծակով վերցնելով այրին Իսրայէլի ժողովրդոց ցուցնելու եւ տեղւոյն բարեբերու-

թիւնը հասկցնելու համար. Թուոց. ԺԳ. 24:

Սաւուղ թագաւորը մեռնելէն զկնի՝ Դաւիթ հոս գալով՝ միայն Յուդայի տանը վրայ թագաւորեց եօթը տարի և վեց ամիս. Բ. Թագ. Բ. 3-11: Եւ ապա բոլոր Իսրայէլի վրայ թագաւոր եղաւ աստի և եկաւ յԵրուսաղէմ բնակեցաւ:

Մաքփելայի այրին վրայ այժմ մեծ մզկիթ մը կայ շինուած՝ Մահմէտականնաց ձեռքը, ուր մտնել արգիլուած է ոչ-Մահմէտականաց. բուն Մզկիթը չորս սիւներու վրայ կառուցուած է. Սառայի գերեզմանը ձախակողմեան առաջին սեան մօտ է, և անոր դիմացը՝ աջակողմեան առաջին սեան մօտ Աբրահամու գերեզմանն է. աջակողմեան երկրորդ սեան մօտ է Իսահակայ գերեզմանն, և անոր դիմացը՝ ձախակողմեան սեան մօտ Ռեբեկայի գերեզմանն է:

Յակոբայ-Նահապետի գերեզման գաւթի աջակողմեան սեան մօտն

եւ ասոր դիմացը՝ ձախակողմեան սեան մօտ է Լիայի գերեզմանն ։

Իսկ Մամբրէի Կաղնիի ծառն մինչեւ ցայսօր կ՚երեւի, քաղաքէն դուրս կէս ժամ հեռաւորութեամբ, որոյ բուն արմատն գրեթէ եօթն գրկաչափ հաստութիւն ունի ։

Հոս պատուական խաղող կ՚ըլլայ, և առատ զանազան մրգեղէնք, վերջին տարիներու մէջ տեղական կառավարութիւնն սկսեց Շօսէի Ճանապարհ մի շինել յԵրուսաղէմէն մինչ Հայր Աբրահամ, որ կը յուսացուի թէ՝ մօտ ժամանակներս կը լրանայ ։

ԴԱԶԷ ։ Գազա՝ որ է Դազէ, Քեբրոնէն մի և կէս օրուան ճանապարհ է, նոյն չափ ճանապարհ է նաև Երուսաղէմէն ։ Այս քաղաքին մէջ է Սամփսոնի տունը ։ Դատ. ԺԶ, 1–31 ։

- Հոս է նաև Իլարիոնի սուրբ Հօր
ան տեղը. Յայսմ. Հոկտեմ. 21 ։ Այս
տեղն վանք էր մեր Հայոց Ազգին
փական, որու Եկեղեցին յանուն

սրբոց Հրեշտակապետաց Գաբրիէլի և Միքայէլի էր, և ունէր բաւական խցեր, պարտէզ մը ծառերով. Թէ՛ վանքն եւ Թէ՛ Եկեղեցին Հաննէ վարդապետին ժամանակը դեռ չէին էր. Հաննէ, եր. 290. բայց այժմ աւերակ է, 1854 Թուականէն սկսեալ Դաղէի բնակիչք նոյն տեղւոյն համար ամէն տարի մեր վանքին 60 ղուրուշ Իճարէ կուտան։

Ժամանակաւ մեր ուխտաւորք մեծ բազմութեամբ Երուսաղէմէն Անէտական լեռն գացած եւ վերադարձած ժամանակնին անցուդարձն այս քաղաքէն կ'ընէին։

Արդ՝ սաս լըմնցնելով մեր մետասաներորդ այցելութիւնն, կը սկսինք երկոտասաներորդ այցելութեան՝ որ մեր այցելութեանց վերջինն պիտի ըլլի։



# ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ Ի ՆԱԶԱՐԷԹ, Ի ՍԱՄԱՐԻԱ ԵՒ ԱՅԼՆ

*Այս ճանապարհորդութիւնս պատմական է, և առաւել անոնց կը հարկաւորի, որոնք ցամաքի ճանապարհաւ կ'ընեն իրենց ուղևորութիւնը, բայց որպէս զի Սրբազան Տեղեաց վրայ, ուր Քրիստոսի Տեառն մերոյ տնօրինական խորհուրդներն ու սքանչելիքները կատարեցան, կատարեալ ստորագրութիւն մը տանք, զանց չեմք առներ բարեպաշտ Ուխտաւորաց հետաքրքրութիւնն լեցընելու համար հեռաւոր տեղեաց վրայօք ևս տեղեկութիւններ տալ, անոնց սրտի վիճակը նկարագրելով։*

*Երուսաղէմէն մինչեւ 'ի Նազարէթ, Սամարիայէն անցնելով երեւն մղոն տեղ է, և երեք աւուր Հ կրնայ մարդ երթալ։*

*Յոպպէի դռնէն ելնելով, դէպ*

'ի Հիւսիս գնալի ճամբան բռնելու է , այն որ կը տանի Թագաւորաց գերեզմանները , և անմիջապէս արքունի մեծ ճանապարհը կ'ելնենք՝ և 'Յովսափատու ձորին մէջէն անցնելով բարձրկեկ տեղ մի կը հասնինք , ուսկէ կ'երեւի Սոփա ( Մովդիիմ ) , Նէպի Սամուէլ ( Հին Արիմաթիմ — Սեփա ) գիւղերը , և 20 րոպէին կը գտնեմք զմեզ Սկոպոս լերան վրայ , ուր տեղ Յադդուա մեծ քահանայապետը , իւր քահանայապետական զգեստները հագած Աղեքսանդր Մեծին դիմացն ելաւ բազմութեամբ , որ Տիւրոս ու Գազա քաղաքներն առնելէն յետոյ՝ սուրբ Քաղաքին ալ տիրելու կուգար ։ Աղեքսանդր պատկառելով մեծ քահանայապետէն , որուն կերպարանքը իւր երազին մէջ տեսած էր , ինկաւ խոնարհեցաւ Աստուծոյ անուան դիմաց որ անոր Թագին վրայ գրուած է , և սուրբ Քաղաքն ալ մտնելով՝ զոհ մատոյց Տաճարին մէջ ։

Անկէ 20 րոպէ կը տեւէ Թէլ-Էլ-Սօմա բլուրը, որ հին Գաբաա քաղաքին տեղն է, ուսկէ էր Սաւուղ, անկէ եւս մինչեւ Պէյթ-Հանինա, որ Ս. Գրոց Անինա ըսած քաղաքը կը կարծուի, 20 րոպէ է. արեւմտեան կողմը բլուրի մի վրայ Էլ-Ճիպ, հին Գաբաւոն քաղաքը կ'երեւի, ուր Յեսու արեգակը կասեցուց իւր ընթացքէն. Յեսու Ժ. 12:

Քառորդ ժամէ քիչ մի աւելի երթալով գետինը պառկած կորեկի ձեւով արձան մի կը տեսնուի աւրուած գիրերով. Ճանապարհին վրայ կը հանդիպի նաեւ Էլ-Պիրէ գիւղը, որ է Բէէրովթ քաղաքը, որուն Մահմէտականք Զէլճէլ կը կոչեն, ուր ըստ աւանդութեան Լատինաց, ամենասուրբ Կոյսն Հայր Յովսեփայ հետ մինչեւ հոս գալէն յետոյ՝ տեսան որ մանուկն Յիսուս հետերնին չէր, եւ ետ դառնալով Տաճարին մէջ գտան զինքը, որ Րաբբիներուն հետ նստած հարցմունքներ կ'ընէր. Ղուկ. Բ.

41–51։ Սոյն տեղւոյն վրայ Հին ժամանակները եկեղեցի կար, որու մեծ մասը դեռ կանգուն կը կենայ։

Անկէ դէպ 'ի հիւսիս Ճանապարհը բռնելով, 44 րոպէին կը հասնինք Բէյթէլ (Տուն Աստուծոյ) և որ առաջ Լուզ կ'անուանուէր, սոյն քաղաքը այժմ Պէյթին կը կոչուի։ Աբրահամ սոյն տեղս եղած ժամանակ բաժնըւեցաւ Ղովտէն. Ծննդ. ԺԳ. 3–11։ Աստ տեսաւ Յակոբ իւր տեսլեան մէջ երկրէն մինչեւ յերկինք սանդուղ բարձրացած. Ծննդ. ԻԸ. 10-12։ Աստ մեռաւ ու թաղուեցաւ Դեբորա Ռեբեկայի սնուցիչը, եւ Յակոբ ետ դառնալուն Միջագետքէն՝ Աստուծոյ խորան կանգնեց. Ծննդ. ԼԵ. 1-18։ Եւ ուրիշ շատ դէպքերով նշանաւոր եղած էր սոյն քաղաքն։ Հին եկեղեցւոյ շէնքեր կը տեսնուին տակաւին։ Արեւելակողմը եւս կ'երեւի երեւելի շէնքի մի աւերակներ, որուն Պուրճ-էլ-Մառան կը կչեն Արաբացիք։

Բէլթէլէն մինչեւ Խան-Քէօ-Սառուլէ կոչուած իջեւանը 5 ժամու չափ է. ճանապարհին կը հանդիպի Պէր-դէյր, Դոյէգէ, և Եագրօփ գիւղերը, Այն-Հարամէ աղբիւրը, Թօրմօսա—Այխա, Լօպպան և ուրիշ աւերակ տեղեր; մինչեւ Խան-Քէօ-Սառուլէ գիւղը, իսկ համանուն իջեւանը որ աւերակ է հիմայ, գիւղէն 20 րոպէ հեռու է, ուսկէ 3 րոպէ անդին կաղնիի ծառի մի տակ կ'իջնեն սովորաբար ճանապարհորդք հանգստութիւն առնելու:

Խան-Քէօ-Սառուլէէն մեկնելով, 25 րոպէին Քօպօպլան գիւղին մօտէն անցնելով՝ Իէջմա գիւղը կը հասնինք, որ աջ կողմերնիս կ'լյնայ, եւ կէս ժամէն Գուրիղէն լերան շղթայն կը տեսնուի դէպ 'ի հիւսիսակողմը, և նոյն կողմը դարձեալ հորիզոնին մէջ կ'երեւի Մեծ Հերմոն լեռը ձիւնաատ գագաթովը: Մէկ ժամ և 10 րոպէին կը հասնինք Գուրիղէ լերան Թային ստորոտն եղած Հասարա

գիւղը, Թողլով ճամբուն քանի մի մանր մունր գեղօրայքը։

Ասկէ մինչեւ Բուձէյղ մեծ գիւղը 55 րոպէ կը տեւէ։ Այս տեղ Նապ-լուսի (Սիկիմ) ճանապարհը Թողլով ձախ կողմի վրայ, կէս ժամու չափ շեղելով՝ դէպ 'ի Ներս, Պիր—Եագուպ (Յակովբ նահապետի հօրը) կ'եր-Թանք, որ եւ Սամարացի կնոջ հորը կը կոչուի, որ ճանապարհին մօտ այլ Թեւի վրայ է, Գարիզին լերան ստո-րոտը, աւերակներով ծածկուած և երեք չորս ոտք բարձր հին պատով մի շրջապատուած։ Հորին բերանը հին եկեղեցւոյ մի տակն է, որ ժամա-նակաւ շինուած է եզեր վրան։

Այն հորին մօտն եղած դաշտին մէջ Աբրահամ իւր կնոջ Սարայի և Ղովտի հետ Խառանէն գալով իւր վրանները լարեց, և սեղան մի եւս կանգնեց Աստուծոյ, եւ Աստուա իրեն երեւալով՝ խոստացաւ նո զաւակացը տալու խոստացեալ և կիրը։

Յակովբ եւս Միջագետէն գալով Նոյն դաշտին մէջ լարեց իւր վրանները, և Սիւքեմայ տղոցը հարիւր գառն տալով՝ ծախու առաւ յիշեալ դաշտը. Ծնն. ԼԳ. 18-20. և այն տեղ սոյն հորը փորեց, Քրիստոսէ՝ 1738 տարի առաջ։ Դարձեալ այս տեղ եկաւ Յովսէփ Մամբրէի ձորէն իւր եղբարքը որոնելու, եւ Դովթայիմ ըսուած տեղը գտաւ զիրենք, և յետոյ Իսմայելացի վաճառականաց ծախուեցաւ. Ծնն. ԼԷ. 13-28։ Վերջապէս Յակովբ Նահապետ սոյն երկիրը կտակաւ ժառանգութիւն թողուց իւր որդւոյն Յովսէփին՝ մահուան անկողնոյն մէջ, ուր որ Իսրայէլացիք եւս Եգիպտոսէն ելնելնուն՝ այս տեղ (Սիւքեմ) բերին ամփոփեցին Յովսէփայ ոսկրները. Ծնն. Ծ. 24։ Ելից. ԺԳ. 19. և Յես. ԻԴ. 32։

Յիշեալ տեղը քառակուսի փոք-
իկ շրջապատով մը որոշուած է։
կովբ Նահապետի աղբիւրէն 10
պէ հեռու դէպ 'ի հիւսիս, որու

մէջ հիմակ ուրիշ գերեզմանաքար մը կը տեսնուի ։

Ջրհորին վրայ Հեղինէ Թագուհին եկեղեցի մի շինել տուած էր ։ Այն եկեղեցին և կամ յետոյ այլոց ձեռօք նորոգուածը 730 թուին դեռ կը կենար, խաչաձեւ էր եւ ջրհորը մէջտեղը, և կը կարծուի որ վերջին կործանումն եղած է 1187 ին, բստ որում անկէ յետոյ ոչ մի ազգի պատմագրաց քով չյիշատակուիր ։ Աւերակներուն մէջ մինչեւ ցայսօր դեռ կրանիդ քարէ մարմարեայ սիւներու մեծամեծ բեկորներ կը գտնուին ։

Յիշեալ ջրհորին հիւսիսակողմը կ'երեւի Գեբաղ լեռը, որու Միջերկրականէն ունեցած բարձրութիւնն է 2,700 ոտք. շինութեան նշաններ չկան բնաւ ։ Յեսու Գայի քաղաքը առնելէն յետոյ անտաշ քարերով սեղան կանգնելով Գեբաղ լերան վրայ զոհ մատուց Աստուծոյ, և քարերուն վրայ Երկրորդ օրէնքը գրել. զոր Մովսէս արդէն Իսրայէլի որ

ւոյ առաջը գրած էր. Յես. Ը. 30-32։

Գեբաղ լերան ոտքը Աստար անուն գիւղը՝ և անուշ ջրի աղբիւր մի կայ։

Յակովբայ ջրհորին արեւմտակողմը կը տեսնուի Գարիզին լեռը որ Միջերկրական ծովու երեսէն 2,650 ոտք բարձր է։ Յեսու պատ բնակեցուց Շմաւոնի, Ղեւիի, Յուդայի, Իսաքարայ, Յովսէփի և Բենիամինի ցեղերը, որ օրհնապահներուն եւ Գեբաղ լերան վրայ օրհնութիւններ կարդայ, իսկ մնացեալ ցեղերուն վրայ անէծքներ, որոնք օրհնազանց գտնուած էին։ Այն լերան վրայ Սինէմայ գլխաւորը տաճար մի կանգնեց, որ Հրէից և Սամարացւոց մէջ բաժանման պատճառ եղաւ։ Առաջին Քահանայապետն եղաւ Մանասէ անուն մէկը, Քրիստոսէ 330 տարի առաջ, յետ այնորիկ թէ քահանայապետ և թէ ժողովուրդէն ոմն օրհնազանց գտնուէր, Սամարիա կփախչէր, վասն որոյ երթալով պաշտումն ու թշնամութիւնը հաս

տատուեցաւ երկու կուսակցու-
թեանց մէջ ։

Քրիստոսէ 170 տարի առաջ, Գարիզինի տաճարը Արամազդայ նուիրեցաւ, և շինութենէն 200 տարի յետոյ Յովհաննէս Հիւրկանոսի ձեռօք կործանեցաւ. Յովէփ. Հնախօս. ԺԳ. 17։

Քրիստոնէութեան ժամանակ եկեղեցիներ շինուած կային սոյն լերան վրայ ։ Ջենոն կայսեր օրով Սամարացիք Քրիստոնէից վրայ յարձակելով Պենտէկոստէի օր մի, ՏԻՐԵՊԵՆԹՈՍ Եպիսկոպոսին՝ որ ժողովուրդը կը հաղորդէր եկեղեցւոյ մէջ, մատերը կտրատեցին և հինգ եկեղեցի այրեցին ։ Ջենոն՝ 'ի պատիժ Սամարացւոց, զիրենք հալածեց Գարիզինէն 'ու Քրիստոնէից տուաւ զայն, և անոր գագաթան վրայ ալ եկեղեցի մի կանգնեց յանուն Ս. Աստուածածնի և պահապան ետ կարգեց ։

Անաստաս կայսեր ժամանակ դա ձեալ յարձակեցան Սամարացիք ,

րանը սեպացեալ կողմերէն, պահապանները ջարդեցին, բայց իրենք'ալ բռնուելով պատժուեցան ։

Սուրբ Աստուածածնի եկեղեցւոյն հիմերը դեռ կը կենան, որոնցմէ յայտնի է թէ՝ ութանկիւնի էր և դէպ 'ի յարեւելս ուղղեալ էր աւագ սեղանը, և չորս ալ կողմնակի սեղաններ ունէր ։ Ասոնցմէ 'ի զատ ուրիշ հնութեան մնացորդներ ալ կ'երեւին, լերանը հիւսիսային արեւմտեան կողմը գիւղի մի աւերակներ կան, որոնց մօտ դէպ 'ի յարևմտեան հիւսիս՝ արտի մի մէջ Սամարացիք ամէն տարի կուգան իրենց զոհերը մատուցանելու ։

Յակովբայ ջրհորէն դէպ 'ի հիւսիսային արեւմուտք երթալով Գեբաղ և Գարիզին լերանց մէջէն, 23 րոպէին Նապլուս որ է Նէապօլիս քաղաքը կը հասնինք ։

Այս քաղաքը հին ժամանակ Սի-[illegible] կը կոչուէր, որու մէջ Յակովբ ահապետի որդիքը, բոլոր բնակիչ-

ներն սպաննեցին , քաղաքը կողոպտեցին և կանայքն ու տղայքը գերի տարին , 'ի պատիժ այն անպատուութեան , զոր Եմմորի որդի Սիւքեմ իրենց քրոջը ըրաւ . Ծնն . ԼԴ . 25-29 :

Երբ Իսրայէլի թագաւորութիւնը երկուսի բաժնուեցաւ , Յերոբովամ Սիկիմը գեղեցկացուց , ամրացուց եւ իրեն մայրաքաղաք ըրաւ : Ովսէէ թագաւորի ժամանակ Ասորեստանցւոց Սաղմանասար թագաւորը գալով Իսրայէլի տասը ցեղը գերի տարաւ և իշխանութիւնն վերջացուց 254 տարի տիրելէն յետոյ : Եւ անոնց տեղ կռապաշտ ազգեր եկան բնակեցան , որոնք հոն գըտնուող սակաւաթիւ տեղացւոց հետ խառնուեցան , եւ ասոնցմէ յառաջ եկած է արդի Սամարացւոց ցեղը :

Սամարիա խիստ կանուխ ընդունեց քրիստոնէութեան կրօնքը . ող՝ քաղաքէն էր Ս . Յուստինոս , ո 167 թուոյն նահատակուեցաւ : Գէ ճանոս Եպիսկոպոսն Սամարիոյ , 314

Անկիւրիոյ ժողովոյն մէջ էր ։ Խաչակրաց ժամանակ իշխանութիւնն ալ քրիստոնէից ձեռքն անցաւ մինչեւ 1187, յորում ժամանակի Սամարիա ինկաւ Մահմէտականաց ձեռքը ։ 1834ին, Իպրահիմ փաշայն եկաւ Երուսաղէմը ազատեց Արաբացւոց պաշարումէն, Արաբացիներէն՝ որոնց գլուխ էր Շէյխ—Քասիմ—Ահմէտ, քանդելով, և յետոյ յարձակելով Նապլուսի վրայ մեծ մաոր աւրեց, եւ մեծամեծները ձերբակալ ընելով Դամասկոս տարաւ եւ Շէյխ-Քասիմ-Ահմէտը իւր չորս որդւոցը հետ գլխատեց ։

Նապլուս Սուրբ Երուսաղէմի վիճակ է, ուր տեղ առաջները եկեղեցի և Հոգէտուն մի ունէին Հայք, ուր կ՚իջեւանէին ցամաքաւ եկող ուխտաւորք, նաեւ բաւական արտ ձիթենիներ եւս կային հոն եկեղեցւոյն կալուած, բայց միաբանք կարենալով տանիլ բնակչաց բռնութեանց և զրկանքներուն, թո-

ղուցին հեռացան, Թողլով եկեղեցին և կալուածները աւարառուներուն ձեռքը, ըստ որում՝ որքան Ջանացին և Պաղեստինու կուսակալէն հրամաններ բերել տուին՝ որ ոչ ոք ձեռք երկնցընէ Հայոց կալուածներուն և ձիթենիներուն, սակայն չկարացին գլուխ ելնել։

Խիստ գեղեցիկ դիրք ունի Նապլուսը ու հողը բարեբեր է, անհամար աղբիւրակներէ կը վազէ ջուրը, որոնց մէջ ամենէն պատուականն է Գարիզին լերան կողէն վազածը, որ Ռաս-էլ-Այն կը կոչուի, որ ակին գլուխն ըսել է, և շատ ջաղացքներ կը դարձընէ։ Ըստ Սամարացի Հրէից Սինակոկային մէջ Աստուածաշունչ գրոց Թանկագին ձեռագիր մի կայ՝ մագաղաթեայ և գլանի վրայ ոլորուած, զոր իրենք Ահարոնի Թոռնորդի Աբիսայի ժամանակէն կը համարեն, այսինքն Քրիստոսէ 1500 տարի յառաջ։ Նապլուսի բնակիչք 15,0 հոգի կը հաշուին, որոնց մեծա

դոյն մասը Մահմէտական են ։

Նապլուսէն մեկնելով, գեղեցիկ և լաւ մշակուած ձորի մի մէջէ անցնելով 22 րոպէին Րաֆիտիէ ըսուած գիւղը և 25 րոպէին Զուատա և հետզհետէ, Ճինէտ-Պէյտ-Ուզէն, Պէյտ-Իպա գիւղերը կը տեսնուին Գեբաղ և Գարիզէն լերանց կողերուն վրայ շինուած ։ Այն վերջին գիւղէն քառորդի մի չափ առաջ երթալէն յետոյ Միջերկրական ծովը կ'երեւի . դարձեալ Տէյր-էշ-Շարրաֆ, Պէյթ-Լիտ և Քուասին, Նաջուրա գիւղերը և Շէխ-Սեհլէ կոչուած թիւրպէն թողլով, 35 րոպէէն՝ ձորի մի մէջ իջնելով Սեբաստիա ըսուած հին քաղաքը կը հասնինք , այն է Ս. Գրոց Սամրոնը . Յես . ԺԲ . 20 . որոյ տեղը յետոյ Սամարիա կոչուեցաւ ։

Աքաաբ տաճար մի կանգնեց հոս Բահաղու , ասոր համար Եղիա մարսուէն եկաւ ըսաւ իրեն թէ՝ շատ արի պիտի անցնի առանց անձրեւ ցօղ իջնելու . Գ . Թագ . ԺԷ ։

Յետոյ բոլոր Բահաղու երկրպա-

գունները վարպետութեամբ տաճարին մէջ կանչելով՝ զամէնքը մէկէն սրէ անցընել տուաւ, եւ Բահաղու կռոց արձանն ալ այրեց։

Ժամանակէ յետոյ Մեծն Աղեքսանդր Եգիպտոսէն դառնալուն տիրեց սոյն քաղաքին։ Արիստաբուլոսի և Անտիգոնոսի ձեռօք կործանուելէն յետոյ (107 տարի Ք. Ա.) Գաբինիոս Ասորւոց երկրի փոխ—Հիւպատոսը կրկին շինեց։ Մեծն Հերովդէս աւելի շէնցուց և Սեբաստ կոչեց ՚ի պատիւ Օգոստեայ կայսեր, ըստ որում Սեբաստոս՝ Օգոստոս կամ Օգոստափառ կը նշանակէ Յունարէն լեզուաւ։ Փիլիպպոս առաքեալ այս քաղաքին մէջ քարոզեց և շատ հրաշքներ գործեց. Գործոց. Ը. 5—8։

Քրիստոնէութիւնը ծաղկած էր Սեբաստիոյ մէջ մինչեւ Պարսից և Մահմէտականաց զօրանալը, որոն ժամանակ սկսաւ Քրիստոնէութիւն և իւր բարեպաշտական հաստատու

թիւնները կործանիլ ։ Այժմ հին շէնքերէ մնացած սիւներ կան, երկու աշտարակ, Սուրբ Յովհաննու Մկրտչի եկեղեցւոյն աւերակները, Ճերմակ գմբէթ մի որ Աբդիա, Եղիսէ մարգարէից և Յովհաննու Մըկրտչի գերեզմաններուն վրայ շինուած է, և Մահմէտականաց ձեռքըն է ։

Սամարիայի լեռնէն իջնելով, 5 րոպէ անդին, ճամբուն վրայ ձախ դին վեց սիւն կ'երեւի կանգուն. աջ դին է Պէյթ-Իմրին ըսուած մեծ գիւղը լերան ստորոտը ։

Այն սիւներուն եղած տեղէն մինչեւ Սանուր գիւղը երկուքուկէս ժամ է, որ կլորակ բլրի մի վրայ շինուած է և Ճանապարհին ձախ կողմը կ'իյնայ ։ Սանուրը հին Բէթուլիա քաղաքն է, Յուդիթի հայրենիքը, որ Հողոփեռնէսի գլուխը կըտրով Հրէից ազգը ազատեց. Յուդ. 1—3. և ԺԳ. 10։ Քաղաքին դիրքը այնպէս ամուր է, որ ձեզար փա-

չայն 5000 զօրքով պաշարեց և չկա-
րաց առնել, Թէպէտ եւ քաղաքին
մէջ հազիւ 2000 Ֆէլլահ կային ։
Նորա յաջորդ Աբտուլլահ փաշայն
Թէպէտ և 1830ին առնեց քաղաքին,
բայց 6000 մարդիկ կորսնցուց ։ Իպ-
րահիմ փաշայն եւս պարիսպները
կործանեց, և յետոյ դարձեալ շի-
նուեցան ։

Ասկէ մինչեւ Մէսիլէ գիւղը
որ աջ կողմը կ'իյնայ, մէկ ժամ է.
և 7 րոպէ աւելի առաջ երթալով
հիւսիսային կողմը կը տեսնուի Եսդ-
րէլոն դաշտին մէկ մասը, Նազարէ-
թի լեռները. և Ճանապարհին վրայ
աջ կողմը մրտենիի նման մի ծառ կ'ե-
րեւի, որուն ճիւղերը լաթի քուր-
ջերով զարդարուած են, Մահմէտա-
կանք կը հաւատան որ այն ծառին
շուքին ներքեւ մատուցուած աղօթ-
քը կը լսուի ։

Այս ծառին տեղէն մինչեւ Ճը
գիւղը մէկ ու կէս ժամէն քիչ մի
աւելի է, Ճանապարհը ըստ մեծի մ

սին ձորերու մէջէն է ։ Կը կարծուի թէ այն քաղաքի մէջ մտնելու ժամանակ տասը բորոտները պատահեցան Յիսուսի, եւ ողորմութիւն խնդրելով իրմէ՝ բժշկուեցան. Ղուկ. ժէ. 11—14։ Այս տեղ եւս եկեղեցի կար և 1555 թուին տեսնող եղած է, բայց այժմ եւ ոչ յատեղը յայտնի է ։ Ճընին լեռներու ոտքը շինուած է, պատուական երկիր ունի մշակութեան, և արմաւենիք ծառերը գեղեցիկ տեսք մի տուած են իրեն ։

Ճընինէն մեկնելով ճանապարհն է դէպ 'ի հիւսիսային արեւելք Եսդրէլոնի ( Մերճ–Իպն–Ամէր ) բարեբեր դաշտին մէջէն, որ Պաղեստինու մէջ ամենէն հռչակաւորն է, եռանկիւնի ձեւ ունի, հիւսիսային արեւմտեան կողմէն մինչեւ Միջերկրական ծովը կը հասնի, արեւելքէն՝ երեք գիծ երկնցած է, մին Թաբոր Հերմոն լերանց, երկրորդը Հերմոն և Գեղբուայ լերանց, և երրորդը Գեղ-

Բոսայ լերան և Ճըմինէ մէջտեղ։ Երկարութիւնն է 12 մղոն, և լայնութիւնը 5։ Քանի մի գետեր մէջէն կ'անցնին։

Ճըմինէն 17 րոպէ քալելէն յետոյ, ձախ թեւին վրայ երեք գիւղ կ'երեւին եւ դիմացը կը տեսնուի Գէլպոայ լեռը, որ երեւելի է Փղըշտացւոց դէմ Սաւուղի տուած պատերազմով, ուր երեք որդւոց հետ սպաննուեցաւ. Ա. Թագ. ԼԱ. 1–6։ Սակէ մինչեւ 'ի Զէրային գիւղն մէկ ու կէս ժամ է։

Զէրային հին Յեզրայէլ քաղաքն է Իսաքարայ ցեղին. Յեսու ԺԹ. 18։ որ նշանաւոր է իր պատմական դէպքերով։ 1183 ին Սալահէտտինի զօրքերը հիմնայատակ ըրին սոյն քաղաքը, այսօր մեծկակ գիւղ մի է աղեղ շէնքով։

Զէրայինէն մինչեւ Սուլէմ մէկ ու կէս ժամու չափ կը տեւէ։ Սուլ Ս. Գրոց մէջ յիշուած Սունամ քաղաք է. Յես. ԺԹ. 18։ Ուսկէ էր Աբիսա որ Սունամացի կը կոչուի։ Այս քա-

քին մէջ յարոյց Եղիսէ այրի կնկան տղայն, որ իրեն հիւրասիրութիւն ցոյց տուած էր. Դ. Թագ. Ը. 1: Այժմ պզտիկ գիւղ մի է փոքր Հերմոնի հարաւային ստորոտին վրայ, ուր տեղ ժամանակաւ եկեղեցի մի կար:

Սուլէմէն ելնելով 25 րոպէին Աֆուլէ գիւղը կը հասնինք, որու մօտ է համանուն աւերակ ամրոցը, ուր տեղ Պօնաբարդ՝ սկիզբն տուաւ պատերազմին Տաճկաց հետ, և չորս հազար մարդով՝ Ժիւնոն և Քլէպէրի զօրապետութեամբ բաւական Տաճիկ ջարդեց (1799):

Ասկէ 7 րոպէ անդին Նազարէթ երթալու ճանապարհը թողլով, ձախ դին և դէպ 'ի հիւսիսային արեւելք երթալով Հերմոնի ստորոտը, 40 րոպէին Նային քաղաքը կը հասնինք, փոքրիկ գիւղ մի է Մահմէտականաց՝ նոյն լերանը ոտքը: Այս տեղ յարութիւն տուաւ Տէրն մեր Յսուս Քրիստոս այրի կնկան որդ-

ւոյն երբ Թաղելու կը տանէին .
Ղուկ. Է. 11—17 : Հրաշագործու-
թեան տեղը յառաջագոյն եկեղեցի
կար, որ հիմայ քանդուած մզկիթ
է : Անկէ մէկ ժամ դէպ յարեւելք
է Այէնդոր ըսուած տեղը, ուր Սա-
ւուղ գնաց պատգամ հարցընելու
վհուկ կնկան. Ա. Թագ. ԻԸ. 8 :

Նայինէն 45 րոպէ կը տեւէ Կիսո-
նի հռչակաւոր հեղեղատը, 25 վայր-
կեան եւս յառաջ երթալով աջ կող-
մը կիրճ մի կը տեսնուի որ Եզրե-
լոնի դաշտը կ'ելնէ, ասոր արեւել-
եան կողմն է Նազարէթի շրջակայքը.
և արեւմտեան կողմն է այն Արտե-
ան լերինը, ուսկէ Նազարէթցիք ու-
զեցին որ զՅիսուս վար գահավէ-
ժեն. Ղուկ. Դ. 29 :

Այս տեղէն մինչեւ ՚ի Նազարէթ
մէկ ժամ է : Սուրբ Գրոց պատմու-
թեան մէջ առաջին անգամը Ղու-
կաս կը յիշատակէ իւր աւետարա-
նին մէջ (Ա. 26). Այս քաղաք
մէջ կը բնակէր Սուրբն Յովսէփ

անբիծ կուսին Մարիամ, որմէ ըն-
կալաւ Աստուծոյ Որդին մարդկային
մարմին, և աշխարհիս փրկութիւնը
հրաշագործեց։ Մեծն Կոստանդիա-
նոս գեղեցիկ եկեղեցի մը շինեց այն
տանը տեղւոյն վրայ՝ ուր հրեշտա-
կապետն երեւալով Ամենասուրբ
կուսին, աւետեց բանին Աստուծոյ
նորա արգանդին մէջ մարմին առ-
նելու գալը։ Մինչեւ 1219 շատ ան-
գամ աւերեցաւ և կրկին նորոգե-
ցաւ յիշեալ Աւետման եկեղեցին։
Լատինաց աւանդութեան եթէ հա-
ւատ ընծայելու ըլլանք, մինչեւ 1291
թուականին դեռ Աստուածածնի
տունը իւր ամբողջութեամբը կը կե-
նար, և նոյն տարին, Մայիսի տասն-
երորդ օրը յանկարծ աներեւոյթ
կ'ըլլայ Նազարէթի մէջէն եւ Դալ-
մատիոյ Տերսատ քաղաքին մէջ կը
գտնուի. և անկէ ետեւ 1294 Դեկ-
տեմբեր 10ին հրաշքով կը փոխադրի
Իտալիա։ յետոյ մերձակայ լերան
մը, վերջապէս Լորեթօ քաղաքին

մէջ կը հանգչի, ուր մեծ ջերմեռան-դութեամբ պատիւ եւ յարգ կ'ըն-դունի մինչեւ ցայսօր Հռոմէական պարզամիտներէն ։

Ֆրանչիսկեանք քանի մի անգամ փորձեցին նորոգել Ա-իփման եկե-ղեցին եւ իւրեանց համար վանք մի հաստատել անդ, եւ քիչ ժամանակ մնալէն յետոյ վռնտուեցան անկէ, վերջապէս 1730ին հաստատուեցան, եկեղեցին եւ վանքը կրկին անգամ նորոգելով ։

Ա-իփման տեղը 17 ոտք աստիճան-ներով կ'իջնուի, տասն եւ չորս ոտք իջնելուն՝ ուղղանկիւնի մասուռ մի կայ; որ Աստուածածնի տանը տեղն է կ'ըսեն Լատինք, եւ երկու խորան կայ մէջը եւ այս երկու խորան-ներուն մէջտեղէն երկու ոտք աս-տիճանով Սուրբ Այրին մէջ կ'իջնուի որ բոլորտիքին փիմափոր եւ պատ մարմարով պատած է ։ Աջ ձեռք վրայ կը տեսնուի կրանիտեայ սիւն բունը, որ իբր նշան դրուած

այն տեղւոյն վրայ՝ ուր կանգնած էր Ամենասուրբ Կոյսն երկնաւոր Պատգամաբերին (Հրեշտակապետին) հետ խօսելու ժամանակ, իսկ Հրեշտակապետի կանգնած տեղն ալ այն է, ուր իւր անուամբը սեղան մի կանգնուած է ։ Կան ուրիշ մէջ առ մէջ երկու մատուռներ եւս, ու վերջին մատուռին մէջ 13 ոտք աստիճանով այրի մի մէջ կը մտնուի, որուն ինչ ըլլալը յայտնի չէ ։

Նազարէթի հիւսիսային արեւելեան կողմը, իբր 500 մեդր հեռու, քաղաքին մէկ հատիկ աղբիւրն է, որ Աստուածածնի աղբիւր կը կոչուի, ուր տեղ ըստ աւանդութեան, ջուր հանելու եկած ժամանակ երեւեցաւ իրեն Գաբրիէլ հրեշտակապետը ։ Ջուրը ջրմուղէ մի անցնելով կուգայ աղբիւրը, որու ակն է քանի մեդր անդին Յունաց եկեղեցւոյն ջ, որ հին եկեղեցւոյ մը վրայ շիւած է, և Յոյնք այս տեղւոյն հար կ'ըսեն թէ՝ Հրեշտակապետ ա-

ռաջին անգամ երեւեցաւ Ամենա-
սուրբ կուսին ։

Լատինաց վանքէն 180 մեդր հե-
ռու ուրիշ եկեղեցի մի եւս կայ, որ
Սէնաքլոյ կը կոչուի, որու համար կ'ը-
սեն Լատինք թէ այն տեղւոյն վրայ
է, յորում Տէրն մեր Յիսուս Քրիս-
տոս Եսայի մարգարէի գիրքը կար-
դաց և Աստուծոյ արքայութիւնը կը
քարոզէր Հրէից, եւ ժողովուրդը
զինքը դուրս հանելով անկէ՝ ետեւն
ինկան որ ժայռին բարձրէն (Արփնան)
վար գահավիժեն. Ղուկ. Դ. 14—31 ։
Սոյն եկեղեցին Հռովմէական Յու-
նաց ձեռքն է, իսկ Արփնան քէրէնը
քաղաքէն 3 հազարորդամեդր հեռու
հիւսիսականողին է, ուր ժամանակաւ
եկեղեցի կար ։

Նազարէթ անհարթ գետնի վրայ
կառուցուած է, խոռոչներ շատ կան
մէջը, որոնցմէ կ'անցնին ջրջապատ
քարաժայռերէն հոսած անձրեւներ
րը, փողոցները նեղ և աղտոտ են ։
Բոլոր բնակիչք 6000 հոգի են, Մա

մէտական , արեւելեան Ցոյն , Ցոյն կաթոլիկ , Լատին , Մարոնիտ և Բողոքական ։

Նազարէթէն մեկնելով մէկ ժամ և 40 րոպէին կը հասնինք Թափօրական լերան ոտքը , եւ անկէ մինչեւ լերան դաշտավայրը ելնելը 50 վայրկեան կը տեւէ , ուր տեղ Ցոյնք եկեղեցի մի ունին , և Լատինք Այլակերպութեան եկեղեցին , որ քիչ ժամանակ առաջ աւերակներու վրայ նորոգութիւն ընելով շինեցին ։

Թափօր լեռը Նազարէթէն 100 մեթրաչափ , Տիբերիայէն 760 , եւ դաշտէն 400 մեթր բարձր է ։ Աստ Տէրն մեր Յիսուս Քրիստոս իւր երեք գլխաւոր աշակերտաց դիմացն այլակերպելով իւր Աստուածային փառքը ցոյց տուաւ ։ Հեղինէ Թագուհւոյն համար կ'ըսուի թէ 326ին եկեղեցի մի շինեց Այլակերպութեան տեղւոյն վրայ ; որ լերանը սրբութիւն արեւելակողմը կ'իյնայ ։ երկու ուրիշ եկեղեցիք եւս շինե-

ունեցան յանուն Մովսէսի և Եղիայի, զորոնք Դանիէլ Իգումենոս Ռուս ճանապարհորդը կը յիշատակէ։ Այն սրբազան լերան վրայ Հայք ևս առանձին վանք և եկեղեցի ունէին, ինչպէս նաև Տէբէրեական ծովուն եզերքը և ուրիշ տեղուանք Պաղեստինու, որոնց Հայ վարդապետ մի (Անաստաս[*]) շրջագայելով Հայոց ՋԿԸ (1519) թուականին, ականատես եղած է։ Թափօրական լերան նըկարագրութիւնը կ'ընէ եւ Եղիշէ Երէց, ուր գնացած է անձամբ եւ կամ թերեւս հոն միաբանած է Հայ վանորէից մէջ։

Պատերազմի երեսէ շատ անգամ կործանուած եւ Մահմետականաց ձեռք անցած է, վերջին աւերմունքը տուաւ Պիպարս (Փընտուխտար) 1263 թուին։ Մինչեւ ցայսօր տակաւին շատ աւերակներ կը տեսնուին լերնագագաթին վրայ, պարսպի մնացորդներ, ժայռերու մէջ փորուած խոռոչներ, աշտարակի կամարն

եւ անթիւ սառնիձներ ։

Թաբօր լերան ստորոտէն մինչեւ Գալիլեայի կամ Տիբերիական ծովը չորս ու կէս ժամ է, որ Քինէրեթեայ կամ Գենեսարէթեայ ծով ալ կ՚ըսուի ։ Յեսու ԺԲ. 3. եւ Ղուկ. Ե. 1. Համանուն քաղաքէն առնելով. Յես. ԺԹ. 2։ Տիբերիական ծովը Միջերկրականէն 230 մեդր ցած է, հինգ մղոն երկայնութիւն եւ երկու մղոն լայնութիւն ունի, ամենէն շատ խորութիւնն է 55 մեդր, ջուրը քաղցր ու ձկնաւէտ է ։ Փրկիչն մեր Յիսուս՝ շատ անգամ նաւարկութիւն ըրած է այն լճին վրայ եւ հրաշքներ գործած ։

Տիբերիա քաղաքը համանուն ծովուն եզերքը կառուցեալ է, որուն հիմնադիրն է Հերովդէս Անտիպաս Չորրորդապետը, զոր ՚ի պատիւ Տիբերիոս կայսեր անուանեց, եւ էն մայրաքաղաք ըրաւ ։ Երուսաղէմի կործանումէն ետքը, Հրէից ապաստանի քաղաք եղաւ Տիբերիան իրենց քով նուիրական կը համա-

կու ժամու չափ կայ, որ Պետրո-սի, Փիլիպպոսի և Անդրէասի հայրենիքն էր, և հիմակ Էթ-Թէլ կը կոչուի, և անկէ մինչև 'ի Կափառնաում մէկ ու կէս ժամ է։ Հիմակուան եղած քաղաքը Թէլ-Հում կը կոչուի, որ լճին մօտ է, ինչպէս Մատթէոս աւետարանիչ (Դ. 13) Կափառնաումի համար ծովեզերեայ քաղաք կ'ըսէ։ Այժմ Թէլ-Հում ըսուած տեղն աւերակ մի է, ուր եօթը ութ խորճիթներ կը տեսնուին չոր քարերով շինուած։

Կափառնաումէն 40 քայլ կը տեսնէ Գորազինը, որ հիմակ Քերազէ կը կոչուի, եւ հիւսիսային արեւմտակողմը կ'իյնայ։

Տիբերիադէն շատ հեռու չէ այն նշանաւոր դաշտը Հատտինի (1), որուն մէջ է այն տեղն ուր Յիսուս Քրիստոս եօթն հացիւ և քանի մի

(1) Այն դաշտին մէջ ընդունեցին խաչակիրք երբեմն հարուածը. որով ընկճեցաւ իրենց իշխանութիւնը Պաղեստինու մէջէն։

ձիով չորս հազարէն աւելի մարդիկ կշտացուց. Մատթ. ԺԵ. 32–38։ Յիշեալ տեղւոյն վրայ իբր նշան քանի մի սեւ խոշոր քարեր կը անուանուին Ճանապարհին քով՝ աջ դին՝ եւ լճին դիմացը։ Աստ եւս հնուց եկեղեցի կար, որուն այժմ եւ ոչ աւերակները կ'երեւին։

Անկէ կէս ժամ կը տեւէ դէպ 'ի հիւսիսային արեւմուտք Երանութեանց Լեռը, որուն գագաթը դիւրութեամբ կ'ելնուի 5 րոպէին մէջ, ուր տեղ Յիսուս Քրիստոս ինն երանութիւնները տուաւ. Մատթ. Ե. 3–11։ Նոյն բլրին հիւսիսակողմը կ'իյնայ Սաֆէդ քաղաքը, 4000 բնակիչ ունի, եւ երրորդ մասը Հրէայ են։ Սաֆէդ Հրէից սուրբ քաղաքներէն մին համարուած է։ Անկէ մէկ ժամ է Լուպիէ մեծ գիւղը, ուր Պօնաբարդին Ժիւնոյ զօրապետը իւր զօրքով Կանայէն գալու ժամանակ Մէմլուքներէն սաստիկ յարձակում մը կրեց, և նո

ետ դարձաւ 'ի Կանայ, ուր երկու օրէն յետոյ Քլէպէր օգնութեան հասաւ իրեն (1799 Ապրիլ)։

Լուպիէէն երկու ժամու ճանապարհ է մինչեւ 'ի Կանայ-Գալիլէա, ուր մտնելու ժամանակ առաջին շէնքը որ աջ կողմը կը տեսնուի, աւերակ մզկիթ մի է, որ կը կարծուի թէ Նաթանայէլի տանը տեղն է։ Կանայի մէջ եկաւ Թագաւորազն իշխանը Յիսուսի մօտ՝ որպէս զի գայ իւր օրհասական որդին առողջացընէ. Յովհ. Դ. 46-54։ Դարձեալ սոյն քաղաքին մէջ իւր առաջին հրաշքը գործեց Յիսուս հարսանեաց օր մի, ուր ինքն իւր մօրը հետ կը գտնուէր, ջուրը գինիի փոխելով. Յովհ. Բ. 1-11։ Գիւղէն յիսուն մետրաչափ հեռի ձախ դին՝ պզտիկ գետնի մի վրայ աւերակներ կը տեսնուին և մէկ ձերմակ սիւն մի, որ Հեզլինէին Սիմոն անկանացւոյ տանը տեղւոյն վրայ շինըւած եկեղեցւոյն են։ Այս Սիմոն կանանացիին հարսանեաց օրն

էր որ Յիսուս գինեփոխութեան հը-
րաշքն ցոյց տուաւ ։ Յունաց եկե-
ղեցւոյն մէջ երկու հատ կուժ կը
գտնուին, որոնց մէջ էր կ'ըսեն ջու-
րը զոր Յիսուս գինիի փոխեց, քարէ
փորուած են խոշոր (խաղա) չէնքով ։
Կանայ, զոր տեղացիք Քէֆր—Քանա
կ'անուանեն, 600 բնակիչ ունի,
Յոյն և Մահմէտական ։

Նազարէթէն մինչեւ Հայֆայ կամ
'ի Քայֆա (Կայիափա) ծովեզերեայ
քաղաքը՝ 8 ժամու չափ կայ, Կար-
մելու լերան ստորոտը շինուած, 4000
բնակիչ ունի խառն ազգերէ ։

Հայֆայէն մէկ ժամու մօտ կայ
Կարմելու լեռը, որ նշանաւոր է Եղիա
և Եղիսէ մարգարէից յիշատակաւը,
ուր տեղ Եղիա Բահաղու մարգարէ-
ները ամօթապարտ ըրաւ, և յետոյ
Կիսոնի հեղեղատին մէջ ընկեցընելով
զանոնք ջարդել տուաւ. Գ. Թագ
ԺԸ. 25—40.

Քրիստոնէութեան առջի դար
րէն 'ի վեր աս բնակող անապ

տակւանք Սուրբ Աւետարանն ընդու-
նելով, սկսան իրենք ես քարոզել
զՅիսուս Քրիստոս ։

Չորրորդ դարուն մէջ եկեղեցի
շինուեցաւ Հեղինէի ձեռօք ։

Յամի 412, Յովհաննէս Պատրի-
արք Երուսաղէմի կանոններ տուաւ
կարմեյլու լերը Ճգնող կրօնաւորնե-
րուն ։ Դաս երեւելի և սուրբ Ճըգ-
նաւորներ բնակած են սոյն լերան
վրայ ։ Դաս անգամ յարձակում և
աւերում տեսած են կարմեյլու լե-
րան վանորայք և եկեղեցիք ։ Վեր-
ջին ժամանակներս (1821) Աքեայի
Ապտուլլահ փաշայն մտածելով որ
այս տեղն ամրանալով կրնայ իւր թըշ-
նամեաց օգտակար դիրք մի ըլլալ,
թէ եկեղեցին և թէ վանքը քան-
դել տուաւ, եւ անոր նիւթերովը
վանքին մօտ ապարանք մի շինելով՝
մօտը հոն անցընելու կուգար ։
Իջ տարի յետոյ Ժան-Պաղիստ ա-
ւն կրօնաւոր մի պատճառ եղաւ
կքին շինութեան վանուց և եկե-

ղեցւոյն, և կարմելիդանի անուամբ միաբանութիւնն հաստատուեցաւ, որ հիւրասիրութեամբ կ'ընդունի ուխտի գնացող ամէն Քրիստոնէայ-քը ։

Լատինաց վանքը քառակուսի մեծ շէնք մի է լերանը հիւսիսային արեւմտեան ծայրը, եկեղեցւոյն աւագ խորանին տակը այր մի կայ, ուր կ'ըսուի թէ Եղիա եւ Եղիսէ մարգարէները կը բնակէին, որու մէջ հինգ ոտք աստիճանով կ'իջնուի ։ Պարտիզին մէջ պզտիկ բուրգ մի կը տեսնուի, որու տակ թաղուած են Պօնաբարդի զօրքերը՝ որոնք 1799ին յիշեալ վանուց մէջ ջարդուեցան Մահմէտականներէն ։

Եկեղեցւոյն շրջապատէն դուրս ուրիշ նշանաւոր տեղ մի կայ, այն է Մարգարէից դպրոցը, որոյ սկզբնաւորութիւնը Եղիայի և Եղիսէի ժամանակէն կը համարուի, եւ 16 թուականէն 'ի վեր Մահմէտական ձեռքն է, եւ Խոլամ մի կը պահէ

նէ, եւ ուզողը կրնայ պարգեւ մի տալով ներս մտնելու ։ Քարանձաւ մի է բնական եւ մարդու ձեռօք հարթուած ։

Կարմելոս լեռնէն մէկ ժամ է Ս. Եղիայի աղբիւրը, որ ժայռի մէջէն կը բղխէ ։

Կարմելոս լեռնէն մինչեւ Աքքա, որ ըստ Ս. Գրոց Պտղոմայիդ կը կոչուի, երեք ու կէս ժամ է ։

Կարմելոս լերան աջ կողմը կ՚իյնայ Սուր քաղաքն ծովեզերեայ, որ ըստ Ս. Գրոց Ծուր որ և Տիւրոս կը կոչուի. Պօղոս Առաքեալն Պատարայէն նաւով դէպ ՚ի Ս. Երուսաղէմ գալուն այս քաղաքն հանդիպեցաւ. Գործ. ԻԱ. 3. օդն խիստ վնասակար է. եւ անկէ մինչ Սայտայ քաղաք որ ըստ Ս. Գրոց Ծայդան՝ որ և Սիդոն կը կոչուի, վեց ժամու ճանապարհ է, Սայդան՝ նոյն-
։ս ծովեզերեայ է, ջրաւէտ, ողաբեր և մաքուր օդ ունի. եւ նի բազում աղբիւրս բարեհամ . հողն բարեբեր է, հոս ալ հան-

դիպեցաւ Պօղոս Առաքելոյն՝ երբ Պաղեստինու Կեսարիայէն յիտալիայ կալանաւոր ղրկուած նաւով կ'երթար. Գործ. ԻԷ. 3: Տէրն մեր փրկիչն Յիսուս Քրիստոս մինչեւ ցայս վայր շուրջ եկաւ. Մատթ. ԺԵ. 21: Եւ Մարկ. Է. 24:

Կարմելոսը սուրբ երկրին վերջին ծայրն է, ուր կը լրանայ գրեթէ ուխտաւորութեան շրջանը. ուստի և մենք այս տեղ լրացընելով մեր պատմական և տեղագրական համառօտ տեղեկութիւնը եւ աւանդութիւնը, կը թողումք բարեպաշտ ուխտաւորաց որ գիտնան արդիւնաւորել եւ զօրացնել իրենց հոգւոյն ու սրտին մէջ ջերմեռանդ զգացմունքները եւ սէրը առ Աստուածն տեղիս եւ առ Յիսուս Քրիստոս Փրկիչն, որ է լրումն փափաքանաց:

Մեր երկոտասաներորդ վերջ այցելութեան կը կցենք հետեւեալ քաղաքներու համառօտ տեղագրութիւնն ալ:

ԼԻԲԱՆԱՆ։ Սուրիոյ մօտ է Լիբանան լեռը, որուն Մահմէտականք Տուրղէ—Տաղը կը կոչեն. Սողոմոն իմաստունն այս լեռը կը գովէ և կը նմանեցնէ Ս. կուսին. Երգ Երգոց. Գ. 9։ Դ. 8. 11. 15։ Ե. 15. և Է. 4։

ՊԵՅՐՈՒԹ։ Վերիտոն կամ Բիւրիտոն՝ որ է Պէյրութ քաղաքն ծովեզերեայ Լիբանան լերան մօտ է, և Երուսաղէմէն ցամաքի ճանապարհաւ 60 ժամու տեղ է. սակայն այժմ Պէյրութի ճանապարհորդութիւնը ծովով կը լինի և Յոպպէէն 12 ժամուան ճանապարհ է, շոգենաւն երեկոյեան դէմ՝ ժամը 10ին՝ Յոպպէի առջեւէն ելնելով, առաւօտուն կանուխ դարձեալ ժամը 10ին Պէյրութի առջեւ երկաթ կը նետէ։

Քաղաքն այժմ խիստ բանուկ է վաճառականութեամբ, Եւրոպացի Տաճկաստանցի վաճառականներն, -րոպական ապրանաց վրայ՝ զորս 'րել կուտան Եւրոպայի այլ և այլ աղաքներէն մեծ քանակութեամբ

գրեթէ ամէն շաբաթ, մեծամեծ գործեր կ՚ընեն, թէ Պէյրութի մէջ և թէ Դամասկոսի, Հալէպի, և այլն և այլն քաղաքներու վաճառականաց և արհեստաւորաց հետ ։

Քաղաքն յոյժ պայծառացած է հետզհետէ շինուած գեղեցիկ շէնքերով, ծովու կողմանէ սիրուն և ակնապարար տեսարան մ՚ունի իւր դիրքով, պաղատու պարտէզներով և ընդարձակ ու ծառաւէտ անտառներով ։

Օդն խիստ մաքուր է և գեղեցիկ, ջուրն առատ և գրեթէ ամէն տան մէջ մէյ մէկ աւազաններ կան վազուն ջրով որ Նահր-էլ-Քէլպ բռուած տեղէն կուգայ ։

Մօտ ժամանակներս քաղաքէն դուրս թղթի գործարան մը շինուեցաւ. որ խիստ մաքուր եւ արժան թուղթ կը հանէ, Գործարանն յ
տուկ Արքունի հրովարտակով շնո
մը ընդունած է, թէ իւր հանե
թղթէն մաքս տուրք չի պիտի. ա

նուի ուր որ ալ ղրկուի։

Պէյրութի մէջ այժմ ունինք վանք մը յանուն Ս. Նշանի, նաւահանգիստէն 20 րոպէի չափ հեռու, նորաշէն Արքունի զօրանոցին հարաւային կողմը բարձր տեղւոյ մը վրայ շինուած, զոր գնած է 1850 թուականին Զմիւռնիոյ Բարէյիշատակ Տ. Յովհաննէս Սրբազան Պատրիարքն Երուսաղէմի, տեղն արդէն շինուած պատրաստի տուն ըլլալով, վարի յարկին մէջ եղած ընդարձակ պատշաճաւոր սրահն՝ Օրհնելով և Օծելով Եկեղեցի ըրաւ, ինչպէս ըսինք յանուն Ս. Նշանի, և որով եղաւ յատուկ վանք Ազգիս Հայոց, և որ կը կառավարուի Ս. Երուսաղէմի վանուց կողմէն ղրկուած յատուկ Տեսուչ վարդապետի մը ձեռօք, և ամէն օր ժամերգութիւն կը կատարուի և մէն Կիրակի օրերն ևս Ս. Պատարագ կը մատուցուի, տեղւոյն Հայ ողովրդեան, Հոգեւոր պէտքերն մատակարարելու համար. Քաղաքին

մէջ 30 տունի չափ Հայ կայ , սակայն ամէնն ալ օտար երկիրներէն գաղթած են եւ վաճառականութեամբ և արհեստով կ'ըզբաղին ։

Եկեղեցւոյ դրան վրայի Յիշատակարանն է հետեւեալն .

« Օծմամբ սրբեցելով հաստատեցաւ Եկեղեցիս
« յանուն սուրբ Նշանի Փրկչին՝ ՚ի յիշատակ Նա-
« խահաւատ Ազգիս Հայոց , բարեջան ձենջանեք
« սուրբ Գահոյն Երուսաղէմի Տ. Տ. Յովհաննու
« Վեհափառ Պատրիարքի Զմիւռնիացւոյ . ՚ի ման-
« ուցումն Արքազան Խորհրդոյ ՚ի փառս Ամե-
« նասուրբ Երրորդութեան , յամի Տեառն 1851
« Փետրվարի 28 ։ »

Եկեղեցւոյ դրան առաջը փոքր հրապարակ մ'է որուն կեդրոնը ջրքուխ մը կայ մարմարինեայ եւ երկաթեայ բարակ թելերով վանդակուած , նաեւ փոքր ծաղկալից պարտէզ մը առանձին աւազանաւ , վանքը ունի մէկ Մասրայի չափ վազուն ջուր . Եկեղեցւոյ վրայ շինուած է 5 ընդարձակ սենեակներ որոց առ ջեւը սրահ մ'է ծովահայեաց , ուր կայ Տեառչն Արժ . Յովհ . վարդպետ Գ . Իփէկեան Պրուսացի , Ի

Եկեղեցւոյ և Թէ՝ Վանքին մէջ իւր անձնական և բարեպաշտ ուխտաւորաց ծախիւք, մեծ նորոգութիւններ ըրած և վանքն յոյժ պայծառացուցած է, և ա՛լ աւելի պայծառացընելու և շէնցնելու համար մասնաւոր խնամքներ կը տանի եւ յիշատակներ կը թողու։

Վանքը ունի Գերեզմանատուն մը, զոր գնած է Տ. Տ. Կիրակոս Ս. Պատրիարքն 1849 Թուականին, ունի և երկու տուն ու պարտէզ մը։

ԼԱՒՈԴԻԿԷ։ Լաւոդիկէ որ է Լա-թագէայ փոքր քաղաք մ՚ է ծովեզերքէն կէս ժամ հեռաւորութեամբ, եւ Պէյրութէն 32 ժամով կ՚երթուի ցամաքի ճանապարհորդութեամբ, բնակիչը մեծաւ մասամբ Մահմէտական են. Յոյն, Մարոնի, Լատին 120, և Հայոցմէ՝ 20 ընտանիքի չափ ։ գտնուին, քաղաքին հարաւային ողմը կ՚իյնայ, Երուսաղէմի վանուց ոգետունը, որուն մէջ կայ Եկեղեցի մը փոքրիկ՝ յանուն Ս. Աստուա-

ծածնի, և Երուսաղէմի Վանքը աստ ունի սեփական կալուածք, որք են քանի մը տուներ, ջաղացք ու պարտէզ մը, որք կը կառավարուին յատուկ Տեսուչ վարդապետի մը ձեռօք:

ԴԱՄԱՍԿՈՍ: Դամասկոս քաղաքն որ է Շամ, Երուսաղէմէն ութ օրուան, և Պէյրութէն 3 օրուան ճանապարհ է ցամաքային ճանապարհորդութեամբ, բայց այժմ Գաղղիական ընկերութեան կողմէ Պէյրութէն մինչեւ Դամասկոս Շօսէի ճանապարհ շինուած է, ուր ամէն օր յատուկ կառք (Տէլիճանս) կը բանի թէ ճանապարհորդաց և թէ փօսթայի համար, որ ամէն օր առաւօտուն և երեկոյին երկու կողմէն ալ ելնելով 12 ժամուան մէջ կը հասնին, քաղաքն շատ ընդարձակ է եւ ջրաւէտ, օդն բարեխառն մեծ գետեր կան որոց երկուքը քաղաքին մէջէն կ'անցնին, բնկիչը մեծաւ մասամբ Մահմէտակեն, 30 տունի չափ Հայ կը գտնո

որք օտար երկիրներէն գաղթելով աստ բնակութիւն հաստատած են։

Քաղաքին հիւսիսային դրան քով, զոր տեղացիք Պապ-էլ-Շարքի կը կոչեն, ունինք Վանք մը և փոքրիկ՝ սակայն խիստ պայծառ քարուկիր Եկեղեցի մը յանուն Սուրբ Սարգսի ; զոր 'ի հիմանէ շինեցաւ Դամասկոսի մեծ հրդեհէն վերջ, և որ կը կառավարուի Սուրբ Երուսաղէմի Աթոռէն ղրկուած յատուկ Տեսուչ վարդապետի մը ձեռօք՝ որուն քով նաեւ կայ ժամարար վարդապետ մը, աստ Ս. Երուսաղէմի Աթոռոյն սեփական կալուածներ կան 10 կտորի չափ. ցամաքէն եկած Ուխտաւորք աստ քանի մ՚ օր հանգիստ կ՚առնուն և ապա կը մեկնին դէպ 'ի Սուրբ Երուսաղէմ։



# ՅԱԻԵԼՈՒԱԾ

## ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ, ԽԱՉ-ՔԱՐՔ
## ԵՒ
## ՏԱՊԱՆԱԳԻՐՔ



### 1

Ի Յոպպէ Ս. Նիկողայոսի Հայոց վանուց Աւագ-դրան վրայ եղած յիշատակարանն է.

« Ի Պատրիարքութեան Տեառն Գաբրիէլի Արք
« Եպիսկոպոսին, 'ի վայելումն և յիշատակ Ազ-
« գիս Հայոց, Յոպպէի Ս. Նիկողայոսի վանքն
« Նորոգեցաւ 'ի դրանէ մինչև ցվեր գեղեցիկ ան-
« նեկօք. ձեռամբ եւ աշխատութեամբ Տիգրա-
« նակերտցի Մեսրոպայ վարդապետ Ռեիզին. Յամի
« Տեառն 1840:»

Սոյն յիշատակարանի ճիշդ մէկ օրինակն եւս վանքին մէջ՝ եկեղեցւ-
դիմաց՝ արեւմտեան կամարին վրը-
դրուած է:

## 2

### Ի Ցոպպէ վանուց Ս. Նիկողայոսի եկեղեցւոյ դրան առջեւ՝ Հարաւային արեւմտեան կողմը՝ բարեյիշատակ Պետրոս Ս. Պատրիարքին Տապանագիրն է .

« Եւդոկիացի Պետրոս Սրբազան Պատրիարքն Ե-
« րուսաղէմի 'ի ժամանակս պատերազմին Ֆրանկ
« աղանց յորժամ բանակին Օսմանեան էր 'ի Ցոպպէ
« յառաւել նեղութենէն եկն առ Եպարքոսն գը-
« տանել այցելութիւն, որոյ հասեալ անդէն վախ-
« ճանն հանգեաւ 'ի Տէր. որոյ զհոգին Տէր լու-
« սաւորեսցէ, 'ի թուին ՌՄԻԲ Ցունիսի ԻԱ ։ »



## 3

### Նոյն վանուց հարաւային մերին կամարներուն մէջ տեղ զետեղուած մարմարեայ քարին վրայի յիշատակարանն է .

« Այսորքին կամարքս յառաջ գետին փլեալ է-
« ին. իսկ 'ի ՌՄԾԳ թվին Հայոց. քարեայ շէ-
նեցան բազում ծախիւք. 'ի Պատրիարքութեան
Ս. Երուսաղէմի Տեառն Թէոդորոսի Սրբազան
քէհի Վանեցւոյ. յիշատակ Օրհնեալ Ազգիս
Հայոց. վերակացութեամբ տեղւոյս Ըռէիզ Դա-
ւութ վարդապետի Խիզանցւոյ ։ »

## Դ

### Նոյն վանուց մէջ այլ յիշատակա-րան .

« Ողորմութեամբ Ամենազօրին Աստուծոյ մեք
« նուաստ պաշտօնեայք . . . . եւ սպասաւորք
« Սրբոյ Աթոռոյս Երուսաղէմի . Գրիգոր և Յով-
« հաննէս Վարդապետք . . . . Մաղաքայքս եւ
« վերինայարկս զորս 'ի գրաւէ ազատեցաք եւ
« զորս . . . . զամենայն նորոգեցաք եւ դշեջապա-
« րիսպս պարիսպս և զամենայն կամարքս եւ զօ-
« տաներս . . . . շնորհօքն Աստուծոյ եւ միջնոր-
« դութեամբ Սրբոյն Նիկողայոսի Հայրապետին .
« աշխատութեամբ մեր եւ . . . Հաննէ Յովհան-
« նէս Վարդապետին եւ Պետրոս եւ Սարգիս եւ
« Մահտեսի վերակացուաց տեղւոյս եւ ամենայն
« . . . . եւ են սոքա կրկին յիշատակ ք 'ի Սուրբ
« Երուսաղէմ 'ի դուռն Սրբոյն Յակովբայ Աթո-
« ռոյն ամենայն Հայոց , 'ի փրկութիւն Հոգւոց մե-
« րոց եւ 'ի վայելումն Օրհնեալ Ազգիս Հայոց 'ի
« թուին ՌՃՀԴ . ամենայնի վայելողքդ եւ ըն-
« թերցողքդ Աստուած ողորմի ասացէք ամենայն
« վերոգրելոց . ամէն : »

Սոյն յիշատակարանի քարն տե-ղէն ելած ըլլալուն , այժմ Յոպպէի վանուց Պատրիարքարանի սենեկ-ւոյն մէջ պահուած է : Յիշատակարա-նն մէջ եղծուած և անընթեռնլի եղ գրերն կետադրութեամբ անցած

# 5

Յոպպէի արեւմտեան կողմ մաքսատան մօտ՝ Հայոց վանքին սեփական՝ ծովեզերքին վրայ մեծ խանին մէջ եղած յիշատակարանն է.

« Յիշատակ է խանս եւ գերեզմանք մօտ եղ-
« եալ պարտէզն. Անկցի Երեւանեանց լուսահոգի
« Մանուէլի որդի մահտեսի Սեղբեստրոսին, որ
« իւր արդեանցն տրար զսա յիշատակ Ս. Յա-
« կովբայ, Ս. Յարութեան, Ս. Մննդեան, Ս.
« Աստուածածնի, Ս. Փրկչի. եւ Ս. Հրեշտակա-
« պետաց վանքերուն. այսու պայմանաւ որ զհիմ
« հին եւ նոր ննջեցեալքս ամէն օր ամէն սրբոյ
« Պատարագին յիշատակեն. և եկած վարձէն Ա.
« Ա փարայ ժամուց ժամարարներուն. Ա. Ա փա-
« րայ եւս իւղագին վանքերուն. իսկ զաւելորդն
« խանին և պախճային մերամէթին խարճէն. եւ
« սրբոյն Յակովբայ միաբանացն, հաց գին տան. ով
« որ զսա կարեւոր յիշատակս ջրէ Աստուած զինքն
« 'ի կենաց գրոց ջնջէ. 1100:»

Վերոգրեալ յիշատակարաններէ 'ի զատ Յոպպէի վանուց մէջ կան նաեւ խաչ—քարեր եւ եկեղեցւոյ րքին պատերուն մէջ զետեղուած տապանաքարեր, սակայն ասոնց գիրերն մեծաւ մասամբ եղծուած լինելուն անընթեռնլի են.

**6**

*Յերուսաղէմ Սուրբ Յակոբեայ վա-
նուց արեւմտեան Աւագ – Դրան
ճակատը դրուած Արաբերէն ար-
ձանագրութեան բնագիրն է հետե-
ւեալն .*

*برز مرسوم مولانا السلطان الملك الظاهر
ابو محمد سعيد جقمق عزنصرة بابطال ما
احدثه ابو الخير ابن النحاس من ضمان
مار يعقوب دير الارمن بالقدس الشريف
عاما ردة سيف الدين المقر الشرقى الانصارى
وسال فى ابطال ذلك ليسطر في الصحايف
الشريفة بتاريخ اربع وخمسين وثمانماية من
الهجرة الشريفة ملعون ابن ملعون وعلية لعنة
الله تعالى من احدث ضمانا اوجدد مظلمة

*Այս արձանագրութեան ճիշդ մէկ
օրինակն ալ նոյն դռնէն ներս մը-
տած ժամանակնիս ուղղակի դիմա-
ցը պատին մէջ զետեղուած փոքր
ջրի հաւուզուխի վրան գրուած է , շ–
շնորհուած է Եգիպտոսի Սուլթ.
ներէն Էլ–Զահիր Աբու– Մէհմէտ Ս
Չագմագէն 854 Թուականին Հիճրէ*

*այն է՝ 1437 Թուականին Քրիստոսի, որով կ'արգիլէ այն ամէն վաղեմի հարստահարութիւնքն որք տեղի ունեցան Ս. Յակոբայ վանուց նկատմամբ, և իւր խօսքն կը կնքէ հետեւեալ կերպիւ՝ ով որ կ'ըսէ, եթէ այդ ամէն արգիլեալ հարստահարութիւնքն ու բռնութիւնքն վերստին նորոգելու լինի անիծեալ ըլլայ Աստուծոյ կողմէն ։*



## 7

*Յիշեալ Աւագ–Դրան ներքին կողմի եղած երկաթագիր Հայերէն արձանագրութիւնն է.*

**ՔՐԻՍՏՈՍԻ ԾԱՌԱՅ**

« Կարգաւորութեամբն Աստուծոյ շինեցաւ սրբոյն
« մեծի Աթոռոյս արեւմտեան կողմանն պարիսպն
« դրամբս խուցերովք և լիվաններովք 'ի թվին ՌԾՂԲ.
« 'ի փառս Աստուծոյ եւ 'ի պարծանս եւ 'ի վայելումն օրհնեալ ազգիս Հայոց. պատճառ լինողաց աշխատողաց եւ ողորմութիւն տուողաց. Թերցողքդ ողորմի ասացէք. ամէն ։

**ԳՐԻԳՈՐ ՊԱՏՐԻԱՐՔ**



## 8

Սուրբ Յակոբայ եկեղեցւոյ փոքր գաւիթին մէջ՝ թէ գետինը թէ սիւներուն վրայ և թէ եկեղեցւոյ և այլն պատերուն երեսը տեղ տեղ գետեղուած, Տապանաքարերու և խաչքարերու յիշատակարաններն են հետեւեալքն.

« Այս է Տապան սրբասնեալ մարմնոյ Տեառն
« Աբրահամու Եպիսկոպոսի Երուսաղէմացւոյ եր-
« ջանիկ Պատրիարքի սրբոյ Աթոռոյս որ հան-
« գեաւ ՚ի իշխանութեան Սալահատտինի. Թուին
« ՈԽ եւ Ա.

## 9

« Այս է հանգիստ Տեառն Վարդանայ Կա-
« թուց Եպիսկոպոսին եւ . . . . . մեծ սուրբ ե-
« թող եղբայր Յովհաննէսի որք կարգաւք յա-
« ղօթս յիշեսջիք. ՈՁԷ.

## 10

« Տապանս այս որ կայ յայսմ. է գերեզմանս
« սա Տէր Պօղոսի, երջանիկ եւ սուրբ Հերգի
« կի, զձեզ աղաչէ աղէքսեան, յիշման առ-
« ժամ արժանի. Թուին ՁՀ.

## ԽԱՉ-ՔԱՐՔ

### 11

« Ի Թիւ Քրիստոսի Ռ եղեալ էր խաչս յայսմ
« Տուրք Ցակոբայ 'ի Թագաւորացն Հայոց :»
« Քրիստոսի 1835 եղաք 'ի նորաշէն վերնա-
« տանս :

### 12

« Կանգնեցաւ Ս. Նշանս 'ի բարեխաւսութիւն
« Ցեւառ Մեկքերին եւ մաւրն Նաղ Խաթունին 'ի
« Թվին ՉԹ :

### 13

« Ցիշատակ է Ս. Նշանս Լեւոնին, Կոստան-
« դին . . . . Վասիլին, Աշոտին, Թվին Հայոց
« ՉՁԹ :

### 14

« Բարեխաւս է Ս. Նշանս Փարամին, Սամսո-
« նին, Գորգալին . . . . Թվին ՉՂ :

Գաւթին արեւմտեան կողմը Աբեղայ-ողլի պատին երեսը զետեղուած բոյ գրեալ երեք խաչ-քարի յիշատակարաններէ զատ, կան նաեւ 12 ատ հին խաչ-քարեր՝ որոց յիշատա-

կարաններին անընթեռնլի լինելուն չըկարացինք օրինակել։

## 15

Աբեղայ Թադի շինութեան յիշատակարանն է.

« Հազար հարիւր տասն երկուսին, կազմեցաւ
« խաչերս բոլորովին, յաւուրս մեծի Գահնակալին։
« Եղիազար Տեառն Վեհին, որք հանդիպիք սուրբ
« գողգոթին, աշխատողաց եւ պատճառից։

## 16

Սուրբ Թորոս եկեղեցւոյ հարաւային պատին արտաքին երեսը զետեղուած խաչ-քարի յիշատակարանն է.

« ave * mana * davit * ave * maria »
« Յիշատակ է Ս. Նշանս Դաւիթ Արգն եւ
« Խաչատուր . . . . . Մարգարտին. Մարիամին.
« Մարիամին. Սարգսին 'ի Թվին Հայոց ՋՂ.

## 17

Սուրբ Յակոբայ եկեղեցւոյ Ա- — Սեղանի խաչկալին յիշատակ
րանն է.

« Կարողութեամբն Աստուծոյ. կազմեալ կանգ-
« նեցաւ. ոսկեզօծ Խաչկալս երկնահանգոյն Խո-
« րանիս. Սրբոյն Յակոբայ. Տեառն եղբօր.
« Աստուածագիր Սրբոյ Աթոռոյս. ամենայն Հա-
« յոց. 'ի Թվին ՌՃՀ մէկ ամին, 'ի Պատրիար-
« քութեան Սրբոյ Երուսաղէմիս. եւ Բիւզանդիոյ.
« Գրիգորի եւ Յովհաննու Վարդապետաց. աշա-
« կերտաց Տեառն Վարդանայ Վարդապետի Բա-
« ղիշեցւոյ. հոգաբարձութեամբն. եւ Ջանիւք.
« կերտեցաւ. 'ի յիշատակ հոգւոց իւրեանց. եւ
« հոգեւոր եւ մարմնաւոր ծնողաց. եւ աշակեր-
« տաց. և ամենայն միաբանից. աշխատողաց. եւ
« ողորմութիւն տուողաց. եւ բոլոր Արամեանս
« տոհմի. զՏէր Յիսուս և զՏունս սիրողաց. ըն-
« թերցողքդ Աստուած ողորմի ասացէք. ամէն։

## 18

## Ս. Էջմիածնայ եկեղեցւոյ սեղանին խաչկալին յիշատակարանն է.

« Յիշատակ է գեղեցիկ Խաչկալս Ակնցի Երե-
« ւանեանց Սարրաֆ և Պէզիրկեան պաշը մահտե-
« սի Սեղբետորոսին և կողակցւոյն մահտեսի . . .
« և ծնողաց նոցա և ամենայն զարմից և զաւակաց
« նոցա 'ի Սուրբ քաղաքն Երուսաղէմ Աստուա-
ծագիր Աթոռն Սրբոյն Յակոբայ 'ի Սուրբ Խո-
րան Էջմիածնի. ի Թվին ՌՃՁԲ յիշեցէք եւ
Աստուած ողորմի ասացէք. ամէն։

## 19

### Տեառն–եղբօր Աթոռին արեւմտեան կողմի արտաքին երեսը եղած յիշատակարանն է.

« Վերայ դիտողութեանց Եղիազար Վարդապե-
« տին կազմեցաւ եպիսկոպոսարանս ձեռամբ մահ-
« տեսի Մելքիսեդեկին յիշատակ իւր և ծնողացն :

### Արեւելեան կողմի ներքին երեսը եղած յիշատակարանն է.

« Ի թուին ՌՄԿԱ Նոր 'ի Նորոյ Նկարագրե-
« ցաւ Կաթուղիկէ սրբոյ կանոյս 'ի Պատրիար-
« քութեան Տեառն Թէոդորոսի երջանկափայլ
« Սրբազան Վեհի :

---

## 20

### Ս. Յակոբեայ եկեղեցւոյ Աւագ—Սե-ղանի կամարն բարձրացնող սիւնե-րուն վրայ բոլորակ ձեւով գրուած յիշատակարանն է.

« Նորոգեցաւ ոսկեզօծ որմն բոլոր ոսկեզօծե-
« լի տեղեաց սրբոյ Տաճարիս և այլոց արդեանց
« Ազգին Հայոց 'ի Պատրիարքութեան Տեառն
« բաւկոսի Արք Եպիսկոպոսի Երուսաղեմայ
« յամի Տեառն 1847 և Հայոց ՌՄՂՋ :

## 21

### Ս. Յակովբայ եկեղեցւոյ Աւագ-Սեղանի բեմին ճակատը շինուած ոսկեզօծեալ ծաղկանկար մարմարիոնի վրայ յիշատակարանն է.

« Աստուծով 'ի Թուին ՌՃՀԹ ամին կազմեցաւ
« եղեւ. մարմարեայ Ս. Բեմս 'ի յիշատակ Ակնցի
« Երեւանեանց Սարրաֆ Մահտեսի Սեղբեստրոսին
« և ծնողաց և ամենայն զարմից նորա. 'ի Պատ-
« րիարքութեան Գրիգորի և Յովհաննէս Վարդա-
« պետաց, յիշեցէք և Աստուած ողորմի ասացէք:

---

## 22

### Ս. Էջմիածնի եկեղեցւոյ սեղանի բեմին ճակատը եղած յիշատակարանն է.

« Ի Պատրիարքութեան Տեառն Գրիգորի Վեհին
« կազմեցաւ մարմարեայ բեմս Ս. Էջմիածնի Խո-
« րանիս, արդեամբ Ակնցի Երեւանեաց Մահտե-
« սի Սեղբեստրոսին, 'ի յիշատակ իւր և ամենայն
« զարմից իւրոց. 'ի Թուին ՌՃՂԱ. յիշեցէք և
« Աստուած ողորմի ասացէք, ամէն:

---

## 23

ուրբ Ստեփաննոս եկեղեցւոյ դրան

սատափեայ երկփեղկերուն վրայի
յիշատակարանն է .

" Յիշատակ է զուռնս Տարսիսացի Մահտեսի Մե-
" լքիսոնին , վասն կենաց իւրեանց եւ կենակցուոյն
" Մահտեսի Նազլուին և Մահտեսի զաւակացն և
" ծնողացն հոգւոց , 'ի Թուին ՌՃՁԲ ։

---

## 24

Ս . Գլխադրի մատրան հարաւային
դրան սատափեայ փեղկերուն վրայի
յիշատակարանն է .

" Գեղեցիկ Դուռնս շինեցաւ 'ի Պատրիարքու-
" Թեան Տեառն Գրիգորի և Տեառն Յովհաննու
" Վարդապետացն վասն Գլխադրի սրբոյն Յակով-
" բայ , եւ է յիշատակ կամարկապցի Նազարի
" որդւոցն Օրհնեալ Մահտեսեաց Մակարին , Ա-
" ռաքելին Մարտիրոսին և Յարութիւնի և ծնո-
" ղացն և ամենայն զարմից նոցա ընթերցողք յի-
" շեցէք և Աստուած ողորմի ասացէք . 'ի Թուին
" ՌՃՁ . շինեցաւ 'ի Յակոբ ծառայէ ։

---

## 25

Գանձարանի սատափեայ դրան փե-
կերուն յիշատակարանն է .

" Յիշատակ է Աստուածատուր Տարսիսացի Մ
" ահսի Մելքիսոնին և կողակցուոյն հանձի Նազլու
" եւ իւր նման ծաղկի 'ի կարկամ մանկան .

« կարծահարեալ , 'ի քաւութիւն հոգւոյ հաճի
« Սեղրաքին և կենդանի որդւոյն հաճի Գրիգորին
« և հաճի Գէորգին , եւ ամենայն զարմից Նորա
« ՌՃՁՁ :

## 26

Սուրբ Մակարայ դրան սատափեայ փեղկերուն յիշատակարանն է .

« Աստուած ողորմի Տէր Մինասին , որ հոգաց
« զամենայն ծախս սորին , դուռս յիշատակ սուրբ
« Գլխադրին , կազմեալ ձեռամբ Մելքոնին , տե֊
« սողքդ ասէք զՏէր ողորմին , համայն ազգի
« Նախնեաց Նորին , 'ի Թուին ՌՃԺԱ :

## 27

Գանձարանի երկաթեայ դրան վե֊րի շեմին վրայ եղած յիշատակա֊րանն է .

« Յիշատակ է Դուռս այս սեմօքն հանդերձ Մահ֊
« տեսի Սարգիս բարեպաշտ Խալֆային և ծնո֊
« ղացն Մահտեսի Հեղինէին եւ ամենայն զարմից
« Նորին ՌՃՁԲ :

## 28

Սպանադիրք Պատրիարքաց գերեզ֊մաններու որք թաղեալ են 'ի սուրբ Փրկիչ 'ի վանս Հայոց .

Այս է Պատրիարգք · Գրիգոր Պարոն-Տէր ,

# 32

"Այս է տապան հանգստեան . բազմաշխատ
"Աթոռակ . Հաննէ Յովհաննէս Աստուածաբան
"Վարդապետին եւ Արք Եպիսկոպոսին . Երու.
"սաղէմացւոյ որ ԺԵ ամ զաթոռակալութեան գոր.
"ծըն կատարեաց եւ վերջոս բազում կրեաց 'ի
"պարտուց վճարումն եւ 'ի շինութիւնն . Աս.
"տուածաղիր Աթոռոյ Սրբոյն Յակովբայ , և տա.
"րաժամ մահուամբ փոխեցաւ 'ի Քրիստոս 'ի
"Թուին ՌՃՋԲ ամին 'ի Յունիսի ԺԱ . եւ մեծ
"սուգ եթող սիրելեաց իւրոց որք հանգիստք եւ
"ընթեռնուք լի բերանով յիշեցէք և Աստուած
"ողորմի ասացէք սմա , և Տէր ձեզ ողորմեսցի .
"ամէն :

# 33

"Կամօք Փրկչին յարթուն անուանս անձկացեալ .
"Ջղակասութիւն վշտաց Նորին Ներ անձնեալ .
"Ջուլթ հարիւրակ քսակ պարտուց վճարեալ .
"Սուրբ Յակոբայ սիւն ամրութեան կառուցեալ .
"Վեհ աշակերտ մեծ վարժողին Վարդանայ .
"Հրեշտակական վարուք ճգնեալ անխնայ .
"Սրովբէական քաղաքավար յարակայ .
"Յօրէնս էին մշտակայն 'ի բաց աներկբայ .
"Ուլթաուն անօք միշտ կուսութեան պարապեալ .
"Մարմնոյն հանգիստ խուն մի երբէք ոչ գտե-
"Յասպարիզի մարտին յաղթող Նկրգաեալ .
"Գնաց առնուլ զանեղծ պսակ պատրաստեա
"Նշխէ մարմնով Գրիգորիոսն (1) որ արդա

(1) Գրիգոր Շղթայակիր :

" Հոգւոյն հանգէ առ միշտ բարին որ անհուն.
" Որում և գործքն պսակ է զիւրն անուն.
" Ջի հաւատով և սուրբ գործովն էր արքուն.
" Ցնծացեալ լեցի միշտ 'ի բարին.
" Բարեբարոյ մեծ մանկանցն:
" Շինող չքնաղին մերոյ Վեհին:
" Որ Սեղբեստրոս Երեւանին:
" Յամի Տեառն 1749 Հայոց ՌՃՂԸ:

## 34

" Այս է տապան հանգստեան. Գանձակեցի
" Սրբազան Կարապետ Պատրիարքի. Սրբոյ Աթո-
" ռոյս Երուսաղէմի. որ փոխեցաւ յանանց կեա-
" նս. որք հանդիպիք տուք ողորմին. 'ի Թը-
" վին ՌՄԺԷ:

## 35

" Այս է հանգիստ դիր տապան Առն մեծի բա-
" րերջանկի. Թէոդորոս Սրբազանի, որոյ Գա-
" հիս Պատրիարքի. էր նա հանգաւ Տարօնացի.
" ընիկ գիւղէն Խորենացի. լի աւուրբք օր ծե-
" րութեան հանգեաւ առ Տէր բարի մահուամբ.
" Թուին Հայոց Ցաքէթական ՌԺ. քառ. յոբել-
" եան, Դեկտեմբերի կոյան (1) ընդ ինքեան:

## 36

Հոգանխութեայ այս դամբարան. մարմնոյ միայն

(1) Այսինքն՝ ՌՄԺ. Դեկտ. Է:

« սա կայարան . Նիւթ աղաղձին և գոյարան . վախ-
« ճան միջին առ որ դառնան . արդ որ եղեա-
« լըս է 'ի յայս տապան . Պօղոս (1) արհի Բարսե-
« Նակեան . Նստեալ յաթոռ Պատրիարքական . որ
« 'ի Սաղէմեան 'ի կիրն լեռնին . բանկերս քարի
« քաղ հովուելին . և սիրելի յաչս մարդկութեան .
« խունկին ձեռօք թողեալ զայս կեանս ծածկեալ
« եղեւ ներհանգստեան . Թվին ՌՄԽԴ :

## 37

« Այս է տապան հանգստեան . յորժամ յայտնի
« նշան Տէրունեան . զի մի դարձցի անանկս ամա-
« չեցեալ . որ եմ 'ի ներքոյ վիմիս թաղուցեալ .
« Յովակիմ Պատրիարք յորջորջեալ . և Ծովածին (2)
« կոչեցեալ . ձեռամբ խմով շարադրեալ . առ Տէր
« Յիսուս գնացեալ . 'ի Թուին Հայոց . ՌՄԽԲ .
« Սեպտեմբերի ԻԵ :

## 38

« Թէոդորոս Վեհ ընտիր հոգեւոր .
« Ի յերկրէն Վանայ յոյժ հռչակաւոր .
« Մաքրական վարուք և պատկառոր .

---

(1) Պօղոս Վանեցին :

(2) Յովակիմ Պատրիարք Գանձակեցին՝ յ
բուսաղէմ գալու ժամանակի՝ նաւն ճանապար
հը խորտակի և ծովասոյզ կը լինի , անկայն բ
կ'ազատի , այս պատճառաւ Ծովածին կոչուած

« Նստեալ 'ի յԱթոռ սրբոյն Սիոնի ·
« Եղբօր Տեառն եղեւ յաջորդ անզուգականի ·
« Ջանայր չէն պահել զԱթոռն Փրկչի ·
« Բայց տեւեալ ամօք միայն տասն ութի ·
« Դարձեալ տապացաւ սա զմեր տեղի ·
« Տաճար Ծննդեան և Աստուածածնի ·
« Իսկ հասեալ երիս եօթն տասնեկի [1] ·
« Աւացաւ 'ի մէնջ 'ի քուն հայրենի ։
« Յամի Տեառն 1819 յՕգոստոսի 22 ։

# 39

Տեառն Գաբրիելի Արքաղան Պատրիարքի ·
Սրբոյ Երուսաղէմի ։

« Ի բարձրելոյն երգէ Սիրաք մխեղեաց ·
« Այս պատասատան բարք և զի՞ վայելուչ ·
« Ընդ ո՞ր անուչ · որ և անձն իմ ընկալաւ ·
« Գաբրիէլ եմ սուրբ Աթոռոյս Գահակալ ·
« Այլ Նիկոմիտ ծծել եա ինձ զօդ Նախկին ·
« Որ իմն էր քաղզ յայս սատիճան վերառեալ ·
« Ընդ փորձ անցոյց · որպէս զոսկի քուրայն ·
« Քսան երկու ամաց շրջանս 'ի Գահիս ·
« Զիշխանութեան յաջս ընկալեալ զաւազան ·
« Զիմ շունչ վերջին յաւանդ թողլ · ո՜վ շնորհիւ ·
« Յայս սուրբ Սիօն յեցեալ յալիս ծերութեան ·
« Որ փառաւորի քո սուրբ անուն յայս կայան ·
« Տէր իմ Յիսուս · ուր և վայլի քոյդ չիրիմ ·
« Ի փող զուարթնոյն անդ անձառ իցն 'ի խորան ·

---

[1] Այսինքն՝ 18 տարի Պատրիարքութիւն ը-նելով՝ 70 տարեկան հասակին մէջ կը վախճանի ։

« Հնչեամ յականջս հանգիր ծառայ մտերիմ։
« Յամի Տեառն 1840 Ապրիլ 25. Ամաց 76։

## 40

Ի Կոփ գեղջէ Տարօնոյ Զաքարիա Պատրիարք.
Երուսաղէմի Տէր Պետրոսեան։

« Մահ եւ գերեզման գերէք զամենայն. գե-
« րեցիք և զիս 'ի իմ վախճանում ամ. զսուրբ Պա-
« տարագի պատճառս մատուցման. 'ի կենդանա-
« կիր Փրկչին գերեզման. Տէր Յիսուս Քրիստոս
« վասն քո Թաղման. զԹաղեալս վերածեա քումդ
« հանգստեան. 1846 Մայիս 7։

## 41

Գանձ ոսկերաց Տ. Տ. Կիրակոս Արք Եպիսկոպոսի
եւ Պատրիարքի Ս. Երուսաղէմի։

« Հօտին Քրիստոսի հովիւ հոգեկան
« Բանական հնձոց մշակ տէրունեան
« Հայկեան ընտիր վարուք մաքրութեան
« Անձանձիր քարոզ կենացն անվախճան
« Նորոգիչ Գահոյս տեղեաց զանազան
« Որք կան ակներեւ գրեալ 'ի յարձան
« Հովուապետ բարի
« Փրկիչ աշխարհի
« Տուր սմա տեղի
« Ի քում խորանի.

1850 Մայիս 25։

## ՍՈՒՐԲ ՊԱՏԱՐԱԳՔ

### ՈՐՔ ԿԸ ՄԱՏՈՒՑՈՒԻՆ ՀԱՑՈՑ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷՆ Ի Ս. ՏԵՂԻՍ

Բաց 'ի որոշեալ Հանդիսաւոր Պատարագներէն՝ զորս վարը մի առ մի պիտի գրենք, ամէն օր (1) Սուրբ Պատարագ կը մատուցուի որոշեալ ժամերուն 'ի Ս. Յարութիւն և 'ի Ս. Աստուածածին Ս. Գերեզմաններուն վրայ, և 'ի Բեթլէհէմ՝ Սուրբ Այրին մէջ՝ 'ի վերայ Ս. Ծննդեան տեղւոյն ։

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ Ս. ՊԱՏԱՐԱԳՔ Ի ՍՈՒՐԲ ՏԵՂԻՍ

1°. Սուրբ Ծննդեան ձրագալոյցի երեկոյին Հրաշափառ 'ի Ս. Ծննդեան Տաճարն, և Ս. Պատարագ 'ի Ս. Այ-՛ն մէջ. գիշերը ժամը 5 ին Տաճա-

(1) Երբ Ս. Տեղեաց վրայ Հանդիսաւոր Պատարագ լինի, սովորական Ս. Պատարագը չը մատուցուիր ։

բին մէջ՝ մեղ սեփական հիւսիսային
կողմը ժամերգութիւնը սկսուելով՝
յետ ժամերգութեան Ս. Պատարա-
գը կը մատուցուի Աւագ-Սեղանոյն
վրայ, և այս առաւօտուն՝ Այրին
մէջ ՚ի վերայ Ս. Ծննդեան սեղանոյն.
սոյն վերջին Ս. Պատարագն կը մա-
տուցանէ Ս. Պատրիարքն կամ մի
Եպիսկոպոս :

2°. Ութօրէից՝ այն է Անուանակո-
չութեան Տօնի օրն Հրաշափառ ՚ի Ս.
Յարութեան Տաճարն՝ և Հանդիսաւոր
Պատարագ ՚ի վերայ Ս. Գերեզմանին
Քնի. ժամարարն է Եպիսկոպոս :

3°. Բուն բարեկենդանի շաբ-
թուն ուրբաթ օրն Ս. Պատարագ
՚ի տունն Ս. Մարկոսի Աւետարանի-
չին որ ՚ի վանս Ասորւոց :

4°. Մեծպահոց երկրորդ կիրա-
կէին՝ Ս. Պատարագ ՚ի Ս. Յարութիւն
՚ի Վերնատունն, և զկնի Ս. Պատա-
րագին Մեծահանդէս թափօր շուրջ
զՍուրբ Գերեզմանաւն Քրիստոսի

5°. Մեծի պահոց Տնտեսի Կի

բանկ-ին Հանդիսաւոր Ս. Պատարագ ՚ի Սուրբ Համբարձում՝ որ ՚ի լերինն Ձիթենեաց ։

6°. Դատաւորի կիւրակէի շաբաթ օրը՝ երեկոյին Հրաշափառ ՚ի Ս. Յարութեան Տաճարն, կիւրակի առաւօտուն Ս. Պատարագ ՚ի վերայ Ս. Գերեզմանին Քրիստոսի, և զկնի Ս. Պատարագին Մեծահանդէս Թափօր. Ժամարարն է Ս. Պատրիարքն ։

7°. Ծաղկազարդի կիւրակէին՝ շաբաթ օրը երեկոյին Հրաշափառ ՚ի Ս. Յարութեան Տաճարն, կիւրակի առաւօտուն Ս. Պատարագ ՚ի Սուրբ Վերնատունն՝ և զկնի Ս. Պատարագին Մեծահանդէս Թափօր շուրջ զՍուրբ Գերեզմանաւն Քրիստոսի։

8°. Աւետման Ս. Աստուածածնի օրն՝ Ս. Պատարագ ՚ի վերայ Ս. Գերեզմանին Ս. Աստուածածնի ։

9°. Աւագ-Շաբաթ օրն երեկոյին անդէս ԼՈՒՍԱՒՈՐԵԱՑԻ ՚ի Ս. Յարութեան Տաճարն, եւ հանդիսաւոր Թափօր շուրջ զՍուրբ Գերեզմանաւն

Քրիստոսի, զկնի Թափօրին Ս. Պատարագ 'ի Ս. Վերնատունն :

10°. ԶԱՏԿԻ օրն ժամերգութիւն և Մեծահանդէս Թափօր շուրջ ըզ Սուրբ Գերեզմանաւն Քրիստոսի, և Ս. Պատարագ 'ի վերայ Ս. Գերեզմանին. ժամարարն է Եպիսկոպոս :

11°. Զատկի Բ. օրն՝ Հանդիսաւոր Ս. Պատարագ 'ի Ս. Յակոբ՝ և Մեծահանդէս Թափօր 'ի մէջ Ս. Եկեղեցւոյ, ժամարարն է Ս. Պատրիարքն :

12°. Աշխարհամատրան կիրակէի օրն՝ ժամերգութիւն 'ի Ս. Վերնատունն որ 'ի Տաճարն Ս. Յարութեան, և Ս. Պատարագ 'ի վերայ Ս. Գերեզմանին Քրիստոսի. ժամարարն է Եպիսկոպոս :

13°. Ս. Համբարձման օրն Սուրբ Պատարագ 'ի Ս. Համբարձումն որ 'ի լերինն Ձիթենեաց :

14°. Գիւտ Տփոյ Սուրբ Աստուածածնի օրն՝ Ս. Պատարագ 'ի վե Ս. Գերեզմանին Ս. Աստուածածն

15°. Վերափոխման օրն՝ Ս.

տարագ ՚ի վերայ Ս. Գերեզմանին Սուրբ Աստուածածնի. ժամարարն է Ս. Պատրիարքն կամ մի Եպիսկոպոս։

16°. Յովակիմայ և Աննայի օրն՝ Ս. Պատարագ ՚ի Ս. Աստուածածին ՚ի վերայ գերեզմանին Հայր Յովսէփայ։

17°. Գիւտ Գօտւոյ Ս. Աստուածածնի օրն՝ Ս. Պատարագ ՚ի վերայ գերեզմանին Ս. Աստուածածնի։

18°. Ս. Աստուածածնի ծննդեան օրն՝ Ս. Պատարագ ՚ի վերայ Ս. Գերեզմանին Ս. Աստուածածնի, ժամարարն է Եպիսկոպոս։

19°. Սրբոյն Գէորգայ զօրավարի օրն՝ Ս. Պատարագ ՚ի Սուրբ Գէորգ Եկեղեցին՝ որ ՚ի վանս Ղպտւոց. և այս երեկոյին Հրաշափառ ՚ի Տաճարն Սուրբ Յարութեան։

20°. Վարագայ Ս. Խաչի Տօնի օրն՝ Ս. Պատարագ ՚ի Տաճարն Ս. Յարութե" վերայ Ս. Գերեզմանին Քրիստոսի։

21°. Սուրբ Աւետարանչաց Տօնի րն՝ Ս. Պատարագ ՚ի Մատրանն (1)

(1) Նոյն Մատուռը՝ ինչպէս Պատմութեան

Ս. Յովհաննու, որ 'ի գաւիթ Տաճա-
րին Սուրբ Յարութեան։

22°. Սուրբ Յովսէփայ Աստուա-
ծահօր Տօնի օրն՝ Սուրբ Պատարագ 'ի
Ս. Աստուածածին 'ի վերայ գերեզ-
մանին Հայր Յովսէփայ։

23°. Գիւտ Խաչի Շաբաթ երե-
կոյին՝ Հրաշափառ 'ի Տաճարն Սուրբ
Յարութեան, համբուրութիւն 'ի Ս.
Լուսաւորիչ եկեղեցին, և Կիւրակի
առաւօտուն՝ համբուրութիւն և Ս.
Պատարագ դարձեալ 'ի Ս. Լուսաւո-
րիչ եկեղեցին. զկնի Պատարագին
Մեծահանդէս թափօր շուրջ զՍուրբ
Գերեզմանաւն Քրիստոսի։

24°. Սուրբ Աստուածածնի Ըն-
ծայման օրն՝ Ս. Պատարագ 'ի վերայ
Ս. Գերեզմանին Ս. Աստուածածնի,
համարարն է Եպիսկոպոս։

25°. Յղութիւն Ս. Աստուածածնի
'ի յԱննայէ, Ս. Պատարագ 'ի վեր.

---

մէջ իւր առաջի բաժինք մեզ անփոփոխելի լինելով ?
որոշեալ օրէն 'ի զատ ուրիշ ժամանակներ ‹
Սուրբ Պատարագ կը մատուցուի։

Ս. Գերեզմանին Ս. Աստուածածնի,
ժամարարն է Եպիսկոպոս։

Ի սուրբ Տեղիս մատուցեալ վերոյգրեալ ամէնօրեայ և Հանգիստաւոր Սուրբ Պատարագներէն 'ի զատ, Սուրբ Յակոբայ Տաճարին մէջ ընդհանրապէս Շաբաթ օրերն 'ի վերայ Ս. Գլխադրի մատրան՝ և Կիւրակի օրերն 'ի վերայ Աւագ-Սեղանոյն Ս. Պատարագ կը մատուցուին՝ եթէ նոյն օրերը Սուրբ Տեղեաց մէջ Հանգիստաւոր Պատարագի օրեր չըլլին. նոյնպէս Ս. Յարութեան Վերնատան Սեղաններուն վրայ Ս. Պատարագ կը մատուցուի, սովորաբար երկու կամ երեք շաբաթն անգամ մը։ Իսկ մասնաւորապէս 'ի Ս. Յակոբ Հանգիստաւոր արարողութիւնք կը կատարուին հանդերձ Ս. Պատարագաւ, Խաչակալ Պարթեւի հայրապետին, Տեառնընդառաջի, Սուրբ Վարդանանց զօրավարաց, Աւագ հինգշաբթի, Եկեղեցւոյ, Վարդավառի, Խաչ վերացի, Դաւթի Մար-

դարէին, և Որդւոց որոտման և այլն Տօներու օրերն: Այսոնցմէ զատ Ուխտաւորաց ժամանակ գրեթէ ամէն օր Սուրբ Պատարագ կը մատուցուի 'ի Ս. Յակովբ, և որոշեալ օրեր այլ և այլ Սուրբ Սեղաններու վրայ. ինչպէս Պատմութեանս մէջ յիշատակուած է իրենց պատկանեալ տեղերն:

Հոգեգալստեան Նախատօնակին՝ Հանդիսաւոր Պատարագն՝ եւ երեկոյեան Անդաստանն կը կատարուին 'ի Ս. Փրկիչ մեր սեփական վանուց մէջ, ուր տարին քանիցս անգամ մասնաւոր Պատարագներ եւս կը մատուցուին: Նաև Երկրորդ ծաղկազարդի հանդէսն՝ և Ս. Հռիփսիմեանց և Ս. Հրեշտակապետաց Տօնախմբութիւնքն կը կատարուին մեր 'ի Սուրբ Հրեշտակապետաց Եկեղեցին:

## ՎԵՐՋ

# ՑԱՆԿ

ԵՐԵՍ



## ԱՌԱՋԻՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ



## ԵՐՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## ՉՈՐՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

ԵՐԵՍ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ



## ԵՕԹՆԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՈՏԱՍՄԱՆԵՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ



## ՅԱՒԵԼՈՒԱԾ